

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**8**

ՕԳՈՍՏՈՍ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении**

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



---





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1983 թվականի հուլիսի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. **Յու. Վ. Անդրոպովի** ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը**:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Լ. Ն. Ներսիսյանը**, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ա. Հարությունյանը**, Հայաստանի կոմկուսի Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Ա. Օհանյանը**, Գյուղտեխպետկոմի Հրազդանի շրջանային միավորման զոդող-մոնտաժող ընկ. **Վ. Ի. Ծուբինը**, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Վ. Ա. Տուրյանը**, «Սովետական Հայաստան» հանրապետական թերթի խմբագիր ընկ. **Լ. Մ. Կրոյանը**, Հայաստանի կոմկուսի Ամասիայի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Զ. Կ. Կուրբանովը**, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստր ընկ. **Գ. Ա. Առաքելյանը**, Հայաստանի կոմկուսի Արարատի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Հ. Վ. Մինասյանը**, Արագածի շրջանի Դերեկի սովխոզի մեխանիզատոր ընկ. **Ա. Ի. Խոսյանը**, Հայաստանի գրողների միության վարչության նախագահ ընկ. **Վ. Հ. Պետրոսյանը**, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս-քարտուղար ընկ. **Գ. Ա. Գալոյանը**, Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր ընկ. **Ս. Տ. Հախումյանը**, Հայկական ՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի պետական կոմիտեի նախագահ ընկ. **Գ. Մ. Մուղնեցյանը**, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. **Բ. Հ. Թումասյանը**:

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումն ընկ. **Մ. Խ. Քոթանյանին** հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի տնտեսագիտական բաժնի վարիչ:

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Վ. Ա. Կոնդրատևը**, ՍՄԿԿ Կենտկոմի պրոպագանդայի բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Վ. Գ. Բայկովան**:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԻՑ ՈՒ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՃԱՌԻՑ ԲԽՈՂ՝ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը ՀԿԿ Կենտկոմի 1983 թվականի հուլիսի 12-ի պլենումում*

*Ընկերնե՛ր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի՝ հունիսին կայացած պլենումը քննարկեց կուսակցության գործունեության արմատական հարցերից մեկը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ծրագրային, խոր ու վառ ճառում, զեկուցման մեջ, որով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշման մեջ առաջադրված են կոմունիստական շինարարության, նոր մարդու ձևավորման գիտականորեն հիմնավորված խնդիրները՝ նախատեսված առաջիկա և տևական ժամանակաշրջանի համար, խաղաղության ու սոցիալական առաջընթացի պայքարի խնդիրները։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միահամուռ հավանություն տվեց ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառի բովանդակած ծրագրային դրույթներին ու հետևություններին և առաջարկեց դրանց վրա խարսխել կուսակցական կազմակերպությունների ողջ գործունեությունը։*

*Կենտկոմի պլենումին հաջորդած ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանն ընկեր Յու. Վ. Անդրոպովին միաձայն ընտրեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ։ Այդ որոշումը, որ թելադրված է մեր երկրի, պետության բարձրագույն շահերով, սոցիալիստական հասարակության կյանքում կոմունիստական կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերի անշեղ աճի վառ վկայությունն է։*

*Պլենումի որոշումը, Գերագույն սովետի ընդունած «Աշխատավորական կոլեկտիվների և ձեռնարկությունների, հիմնարկությունների, կազմակերպությունների կառավարման գործում դրանց դերի բարձրացման մասին» օրենքը, «Միջազգային դրությունը և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին» որոշումը նոր հաստատումն են այն բանի, որ ՍՄԿԿ-ի, նրա Կենտրոնական կոմիտեի, սովետական պետության գործունեության գլխավոր իմաստը, արմատական բովանդակությունը եղել և մնում են հոգատարությունը սովետական մարդու, նրա կյանքի բարելավման, նրա բազմակողմանի զարգացման նկատմամբ, որպեսզի խաղաղ պայմաններ ստեղծվեն սովետական ժողովրդի պատմական մեծ առաքելության իրականացման՝ կոմունիստական հասարակության կառուցման համար։*

*Ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառը, պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի որոշումներն ու մյուս նյութերը գտնվում են մեր հանրապետության կոմունիստների, բոլոր աշխատավորների ուշադրության կենտրոնում։ Սովետական բոլոր մարդկանց հետ մեկտեղ նրանք ջերմորեն հավանություն են տալիս ու միահամուռ պաշտպանում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի որոշումները, կուսակցության և սովետական պետության իմաստուն ներքին ու արտաքին քաղաքականությունը և հավաստիացնում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, նրա քաղբյուրոյին, որ այսուհետ ևս իրենց ողջ եռանդը, գիտելիքներն ու ջանքերը ի սպաս կդնեն լենինյան մեծ կուսակցության պատմական կանխագծումների կենսագործմանը։*

*Ընկերնե՛ր։*

*Հայաստանի կոմկուսը, նրա քաղաքային ու շրջանային կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները հետևողական աշխատանք են կատարում դաստիարակության ու պրոպագանդայի գործը բարելավելու նպատակով։ Վերջին ժամանակաշրջանում երկու անգամ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում քննարկվել են հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերը։ Կենսագործելով գաղափարախոսական հարցերի վերաբերյալ կուսակցության համագումարների, ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների սկզբունքային հիմնադրույթները, մենք դրական փոփոխությունների ենք հասել գաղափարախոսական գործունեության մի շարք բնագավառներում։ Առավել նպատակասլաց է դարձել մեր առջև ծառացած տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրների գաղափարախոսական ապահովման, աշխատավորական կոլեկտիվներում կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման նպատակով կատարվող աշխատանքը։*

*Կատարելագործվում են դաստիարակչական պրոցեսի կուսակցական ղեկավարումն ու կազմակերպումը։*

*Կենտկոմում, կուսակցական բոլոր քաղկոմներում ու շրջկոմներում մշակվել են ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների իրականացման կոմպլեքսային պլաններ, որոնցում տնտեսական և կուլտուրական շինարարության հիմնական հարցերը սերտորեն շաղկապվում են կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի խնդիրների հետ։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը քննարկել են գաղափարախոսական շատ հարցեր։ Կուսակցության XXVI համագումարից անցած ժամանակամիջոցում քննարկվել են մի շարք քաղկոմների և շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների, ստեղծագործական միությունների և հիմնարկությունների գաղափարախոսական աշխատանքի պրակտիկան, ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական, բարոյական, աթեիստական դաստիարակության հետագա ուժեղացման և այլ խնդիրներ։*

*Պետք է ասել, որ գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերը սկսել են ավելի հաճախակի, ավելի խոր ու առարկայորեն քննարկվել նաև կուսակցական կոմիտեներում, սկզբնական կուսկազմակերպություններում։ Բարձրացել է պահանջկոտությունը ղեկավարների նկատմամբ ոչ միայն արտադրական պլանների ու առաջադրանքների կատարման, այլև կոլեկտիվների բարոյահոգեբանական մթնոլորտի համար, տնտեսական գործունեության, ըն-*

* *Տպագրվում է համառոտումներով։*

գունվող որոշումների սոցիալական, քաղաքական ու դաստիարակչական հետևանքների համար։

Մեր կուսակցական կազմակերպությունը մեծ աշխատանք է տարել հանրապետության տնտեսական, սոցիալական ու կուլտուրական վերընթաց զարգացումն ապահովելու նպատակով, որը, բնականաբար, դրականորեն է անդրադարձել դաստիարակչական պրոցեսի վրա։

Սակայն կատարված աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների, ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառի բովանդակած դրույթների ու հետևությունների լույսի ներքո վերլուծելով, պետք է նշել, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեության մեջ եղած թերությունները ու վրիպումները դեռևս դանդաղ են հաղթահարվում։ Պրոպագանդիստական միջոցառումները հաճախ առաջվա նման թույլ են շաղկապվում կյանքի հետ, մարդկանց հուզող հրատապ պրոբլեմների հետ։ Տակավին շարունակում են տեղ գտնել ձևամոլության ու ճամարտակության դրսևորումներ։ Միշտ չէ, որ գործնականում ապահովվում է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական ու տնտեսական գործունեության միասնությունը, իսկ դա անդրադառնում է պրոպագանդայի, աշխատավորների կոմունիստական դաստիարակության արդյունավետության վրա։

Առանձին սկզբնական կուսկազմակերպություններ լիովին չեն օգտագործում կազմակերպական-քաղաքական հնարավորությունները արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, մարդկանց դաստիարակությունը բարելավելու նպատակով։ Ամենուրեք չէ, որ գործնական հետևություններ են արվել կուսակցության ցուցումներից՝ եռանդուն, բանիմաց ղեկավարություն իրականացնելու, կատարման վերահսկումն ու ստուգումն ուժեղացնելու, աշխատանքի ոճն ու մեթոդները կատարելագործելու անհրաժեշտության վերաբերյալ։

Ընկերնե՛ր։

Արդի փուլում և տեսանելի ապագայում կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը զարգացած սոցիալիզմի կատարելագործումն է՝ պատմականորեն տևական մի փուլ, որի սկզբին գտնվում է մեր երկիրը։ Իրականացվում են կոմպլեքսային սոցիալ-տնտեսական խոշորագույն ծրագրեր, այդ թվում պարենայինը և էներգետիկայինը, տեղի է ունենում արտադրության ինտենսիվացում, արագանում է գիտատեխնիկական առաջընթացը, փոխվում է ողջ շրջանների նկարագիրը, համառ պայքար է մղվում մեր տնտեսական, գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալը ավելի լրիվ օգտագործելու համար։

Սրվել է երկու աշխարհների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի հակամարտությունը։ Յայտուն կերպով ուրվագծվում է իմպերիալիզմի, նախ և առաջ Ռեյգանի վարչակազմի բռնած վտանգավոր գծի դասակարգային իմաստը՝ փորձել վերադարձնել կորցրած դիրքերը, կասեցնել պրոգրեսիվ փոփոխությունները մարդկության կյանքում։ Ջանգվածային գրոհներ են ձեռնարկվում սոցիալիզմի, մարքս-լենինյան գաղափարախոսության վրա։ Փորձ է արվում աշխարհապարփակ դարձնել հակասովետիզմը, թունավորել մարդկանց գիտակցությունը։ Աղավաղվում է մեր ներքին ու արտաքին քաղաքականությունը, «խաչակրաց արշավանք» է հայտարարվում սոցիալիզմի դեմ։

Այդ ամենը պահանջում է առավել կատարելագործել, հարստացնել, այժմեականացնել գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, դրա ձևերն ու մեթոդները, ուժեղացնել մեր ողջ պրոպագանդայի հարձակողականությունը։ Մեր գաղափարախոսական աշխատանքը պետք է լիովին համապատասխանի այսօրվա պահանջներին, նպաստի մեր մեծ նպատակների իրականացմանը։

Որո՞նք են գաղափարախոսական աշխատանքի գլխավոր խնդիրներն արդի պայմաններում։ Նախ և առաջ, ինչպես շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, անհրաժեշտ է մեր ամբողջ գաղափարախոսական, պրոպագանդիստական աշխատանքը վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որոնք կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում։



«Մենք մեր հասարակական զարգացմամբ այժմ հասել ենք մի այնպիսի պատմական բնագծի,— ասաց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— երբ ոչ միայն հասունացել, այլև անխուսափելի են դարձել որակական խոր փոփոխությունները արտադրաուժերի մեջ և դրան համապատասխան՝ արտադրահարաբերությունների կատարելագործումը»։

Դրա հետ սերտ փոխկապակցությամբ պետք է տեղի ունենան նաև փոփոխություններ մարդկանց գիտակցության մեջ, հասարակության ողջ վերնաշենքում։

Արտադրաուժերի մեջ որակական տեղաշարժերի հիմնական ուղին անցումն է ինտենսիվ զարգացման, սոցիալիզմի առավելությունների իրական միահյուսումը գիտատեխնիկական հեղափոխության, ընդ որում՝ սրա վերջին փուլի հետ, որը տեխնիկական հեղաշրջում է խոստանում արտադրության շատ ոլորտներում։ Խնդիր է դրվում հիմնավորապես բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Արտադրաուժերի զարգացման կոնկրետ, մոտակա խնդիրը, որի վրա կուսակցության ու ժողովրդի ուշադրությունը հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումը, կարգուկանոնի հաստատումն է այն ամենում, ինչ մենք ունենք, երկրի արտադրական ու գիտատեխնիկական հզոր պոտենցիալի առավել հմուտ ու արդյունավետ օգտագործումը, ողջ տնտեսական մեխանիզմի լավ կարգավորված, անխափան աշխատանքի ապահովումը։

Այդ ամենի հաջող իրականացումը պահանջում է յուրաքանչյուր աշխատողի, բոլոր աշխատավորների հասարակական գիտակցականության ու ստեղծագործական ակտիվության, քաղաքական ու բարոյական կուլտուրայի, բարեխղճության ու պատասխանատվության, պրոֆեսիոնալիզմի, սոցիալիստական դաստիարակվածության մակարդակի հետագա բարձրացում։

Այս ամենն իսկ հաշվի առնելով, կուսակցության ներկա պահանջների հիման վրա պետք է իրենց ողջ գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքը կառուցեն մեր կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները։ Այդ բազմակողմանի աշխատանքը պետք է նպատակամղված լինի նախ և առաջ աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի կերպավորմանը, կուսակցության քաղաքականության խոր ըմբռնման ապահովմանը, առաջադրված նպատակների ու խնդիրների կատարման ասպարեզում նրանց ջանքերի ակտիվացմանը։

Կուսակցությունն ամենայն հստակությամբ սահմանել է իր սկզբունքային վերաբերմունքը գաղափարադաստիարակչական աշխատանքի նկատմամբ։ Դա գիտականությունն է, ճշմարտացիությունը, ռեալիստականությունը։ Դա սերտ կապն է կյանքի հետ, զարգացման հեռանկարների հստակ պատկերացումը։

Զարգացած սոցիալիզմի կատարելագործման գաղափարը պետք է դրված լինի ողջ պրոպագանդիստական ու դաստիարակչական աշխատանքի հիմքում։

Դա անհրաժեշտ է այն նկատառումով, որ մի որոշ ժամանակ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, իշխում էր կոմունիզմի բարձրագույն փուլին անցնելու ուղիների և ժամկետների վերաբերյալ պարզունակ պատկերացումը։ Փութացնելով, այսպես ասած, մեր երազանքը, որոշ տեսաբաններ, պրոպագանդիստներ աչեs կոկում էին այն ճանապարհի անհարթությունները, որով մենք ընթանում ենք, կտրվում էին կյանքի իրական պայմաններից։

Այդ և նմանօրինակ հանգամանքների անտեսումը, իրականության գունազարդումը, որ դեռևս հանդիպում են մեր պրոպագանդայում, երբեմն որոշակի պատրանքներ են առաջացնում առանձին քիչ պատրաստված ընկերների շրջանում։ Իսկ ոմանց համար էլ բացասական բնույթի կենցաղային մանրուքները ստվերում են ձեռք բերվածի իմաստն ու մասշտաբները, կուսակցության և ժողովրդի ստեղծարար գործերի վեհությունը։ Այս ամենը պետք է հաշվի առնվի մեր պրոպագանդիստական, դաստիարակչական աշխատանքում։ Միայն իրականությունից պրոպագանդայի «կտրվածության» լիակատար ու գիտակց-

ված հաղթահարումը թույլ կտա հասնել խոսքի ու գործի միասնության։ Դա է մեր բուն ուժի կարևորագույն աղբյուրը։

Կոմունիստական դաստիարակության արդյունավետության բարձրացման կարևոր ուղիներից մեկը դրա ծանրության կենտրոնի փոխադրումն է աշխատավորական կոլեկտիվները, որոնք մեր սոցիալիստական հասարակության հիմնական բջիջներն են։ Աշխատանքը, արտադրական գործունեությունը մարդկանց դաստիարակության հիմքերի հիմքն են։

Հանրապետությունում շատ կան հիանալի աշխատավորական կոլեկտիվներ, ուր հաջողությամբ, սերտ փոխկապակցվածությամբ են լուծվում արտադրական ու դաստիարակչական խնդիրները, և որոնք հասնում են լավագույն վերջնական արդյունքների։ Դրանք սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչված մեր առաջավոր կոլեկտիվներն են։ Դրանք են «Հայէլեկտրալույս», «Նաիրիտ», «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրաապարատ», «Մասիս» միավորումների, Լենինականի լոկոմոտիվային դեպոյի, Զանգեզուրի պղնձամոլիբդենային, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատների, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանի, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի, Հայաստանի ատոմային էլեկտրակայանի, Չարենցավանի ավտոտրանսպորտի ձեռնարկության, Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն», Էջմիածնի շրջանի Թաիրովի անվան և Նաիրիի շրջանի Նոր Երզնկա սովխոզների, Աբովյանի շրջանի Կույբիշևի և Կալինինոյի շրջանի Միխայլովկա գյուղի, Արարատի շրջանի Խանջյանի անվան կոլտնտեսությունների, «Նրարդշին», «Քաջարանշին» տրեստների, Երևանի համալսարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի, № 14 տեխնիկական ուսումնարանի, № 3 պոլիկլինիկայի կոլեկտիվները և շատ ու շատ ուրիշներ։

Բայց մեզանում քիչ չեն նաև այն ձեռնարկությունները, հիմնարկություններն ու կազմակերպությունները, որոնք չեն կատարում առաջադրված խնդիրները, պլանային առաջադրանքներն ու պարտավորությունները, բոլոր կոլեկտիվները չեն, որ աշխատում են կայունորեն, առավելագույնս օգտագործում արտադրության արդյունավետության, աշխատանքի որակի բարձրացման առկա հնարավորությունները։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ետ մնացող ձեռնարկություններում գործերը տուժում են նաև այն պատճառով, որ կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները հետևողական, հստակ մտածված դաստիարակչական աշխատանք չեն կատարում մարդկանց հետ։ Այդ աշխատանքի կամպանիական բնույթը, գաղափարական ու կազմակերպական ցածր մակարդակը նվազեցնում են գաղափարախոսական ու պրոպագանդիստական շատ միջոցառումների արդյունավետությունը և փոխհատույցը։

Դա հատկապես նկատելի է մեր շինարարների մոտ։

Աշխատավորական կոլեկտիվներն ամրապնդելու, նրանց համախմբելու նպատակով պատշաճ միջոցներ չձեռնարկելը, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի, արտադրության և աշխատանքի կազմակերպման ցածր մակարդակն են հիմնական պատճառներն այն բանի, որ հենց շինարարության ասպարեզում են ամենից մեծ թիվ կազմում նվազ արդյունավետությամբ ու ցածր որակով գործող կազմակերպությունները, որտեղ խրոնիկական է դարձել առաջադրված խնդիրները սահմանված ժամկետներում չկատարելը։

Անշուշտ, գաղափարախոսական գործունեությունը, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, ինքնըստինքյան չի լուծում տնտեսական ու սոցիալական պրոբլեմները։ Չպետք է ձեռք բերված հաջողությունները վերագրել միայն նրան և ոչ էլ եղած թերությունների համար կշտամբել միայն նրան։ Քաղաքական, կազմակերպչական ու տնտեսական գործունեության հետ գաղափարադաստիարակչական աշխատանքի սերտ միասնության ապահովմամբ միայն կարելի է ստանալ անհրաժեշտ արդյունքը։

Դա համոզիչ ապացուցում է Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի օրինակը, որը 6—7 տարի առաջ ետ մնացողների շարքում էր։

Արտադրության տեխնիկական վերազինման, շրջակա միջավայրի առողջացման, աշխատանքի կազմակերպման ու նրա պայմանների բարելավման, կարգապահության ամրապնդման, կազմակերպվածության ու կարգուկանոնի բարձրացման, գաղափարադաստիարակչական աշխատանքի կատարելագործման, ինչպես նաև սոցիալական հարցերի լուծման նպատակով իրականացված կոմպլեքսային միջոցառումների շնորհիվ լավ արդյունքներ ձեռք բերվեցին։

Ձեռնարկությունը դարձել է համամիութենական սոցիալիստական մրցության հաղթող։

Բոլոր կոլեկտիվները առաջավորների մակարդակին հասցնելու համար անհրաժեշտ է ուժեղացնել մասսայական-քաղաքական աշխատանքը այնպիսի կարևորագույն ուղղությունում, ինչպիսին է աշխատանքի կազմակերպման ու ինտենսիվ տնտեսավարման առաջավոր փորձի տարածումն ու ներդրումը։ Սակայն առաջավոր կոլեկտիվների փորձը դեռևս բավականաչափ խոր և ակտիվորեն չի վերլուծվում, ընդհանրացվում, արմատավորվում առանձին մինիստրությունների, գերատեսչությունների և արհմիութենական կոմիտեների կողմից, հաճախ թույլ է պրոպագանդվում մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության և այլ միջոցներով։

Մեր կարևոր խնդիրներից մեկը սոցիալիստական մրցության կազմակերպման բարելավումն է, նրա դաստիարակչական ներգործության բարձրացումը։ Իսկ դա պահանջում է վերջ տալ ցուցամոլության ու ձևամոլության, միայն մրցողների քանակի ետևից ընկնելուն, որ, ցավոք, դեռևս տեղ-տեղ գոյություն ունեն մեզանում։ Վիճակագրական տվյալներով ներկայումս մեր յուրաքանչյուր շրջանում, քաղաքում մրցության մեջ ընդգրկված է աշխատողների միջին հաշվով 95—97 տոկոսը։ Սրանք լավ տվյալներ են, միայն թե պայմանով, որ նման ընդգրկումն, իրոք, ամրապնդվի մրցողների հետ տարվող համապատասխան մասշտաբային, խոր և, որ գլխավորն է, արդյունավետ աշխատանքով։ Մինչդեռ իրականում շատ ձեռնարկությունների և առանձին շրջանների արտադրական գործունեության ցուցանիշները միշտ չէ, որ վկայում են այդ մասին։ Կան այնպիսիները, որոնք ոչ միայն չեն կատարում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, այլև պլանային առաջադրանքները։

Ներկայումս սոցիալիստական մրցության հիմնական նպատակը պետք է լինի՝ տեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրանքի որակի բարձրացումը, արտադրական կարողությունների, աշխատաժամանակի օգտագործման բարելավումը։ Եվ, իհարկե, խելամիտ տնտեսումը ամեն ինչում, սկսած մետաղի տոննայից, էներգիայի կիլովատ-ժամից մինչև հացի կիլոգրամը։

Իսկ ամենագլխավորը՝ յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվության բարձրացումն է ստանձնած պարտավորությունները անթերի և ժամանակին կատարելու համար։

Ընկերնե՛ր, Վ. Ի. Լենինը աշխատանքային կարգապահությունը համարում էր ողջ տնտեսական շինարարության մեխը։ Այսօր կուսակցությունը պահանջում է վճռականորեն ամրապնդել աշխատանքային կարգապահությունը բոլոր օղակներում, բոլոր մակարդակներով՝ բանվորից ու կոլտնտեսականից մինչև մինիստրը։ Դա էկոնոմիկայի վերելքի իսկական ռեզերվ է։

Աշխատավորական շատ կոլեկտիվներ, նրանց կուսակցական կազմակերպությունները, կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները, շոշափելի արդյունքների են հասել այդ ասպարեզում։ Սակայն առանձին կոլեկտիվներում կարգապահության բարձրացմանը մոտեցել են ոչ լրջորեն, ըստ երևույթին այն համարելով հերթական կամպանիա։ Այդ է ապացուցում աշխատանքային ցածր կարգապահության որոշ նախանշանների, պարապ-սարապ թրևելու, գործալքումների, աշխատանքից ուշանալու, ներքին կարգուկանոնի խախտումների հաճախակի դրսևորումը։

Կուսակցական կոմիտեները չպետք է անցնեն նման փաստերի կողքով, նրանք պարտավոր են պատշաճ գնահատական տալ և բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռնարկել դրանց վերացման համար։

Մեր խնդիրն է ամենուրեք ապահովել կարգապահությունն ամրապնդելու, կազմակերպվածությունն ու կարգուկանոնը բարձրացնելու կուսակցության գծի կենսագործումը։ Սա փութանցիկ կամպանիա չէ, այլ ամենօրյա քրտնաջան

աշխատանք։ Մենք կայուն արդյունքների կհասնենք միայն այն դեպքում, եթե կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները այդ կարևոր գործը պահեն ուշադրության կենտրոնում, ըստ ամենայնի բարձրացնեն ղեկավարների պատասխանատվությունն ամուր կարգապահության համար, եթե հանուն դրա ամրապնդման պայքարեն յուրաքանչյուր կոմունիստ ու աշխատավոր, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն ու աշխատավորական կոլեկտիվ, եթե այդ աշխատանքը հենվի մասսաների փորձի, գիտակցականության ու քաղաքացիական ակտիվության վրա։

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում, աշխատավորական կոլեկտիվում կյանքի նորմա պետք է դառնան ինքնագոհությունն ու պարադայնության հակումը բացառող կոնստրուկտիվ, սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ջհարթել, շրջանցել չլուծված պրոբլեմները, սուր հարցերը, լռության չմատնել թերություններն ու դժվարությունները, այլ համարձակ ու բացեիբաց ասել դրանց մասին, բացահայտել դրանց արմատները։ Եվ, որ ամենակարևորն է, հետևողական աշխատանք տանել դրանք վերացնելու, գործերի վիճակը բարելավելու համար։

Մեծ է գործի ու խոսքի միասնության, գործով, օրինակի ուժով ագիտացիայի դաստիարակչական նշանակությունը, ազդեցությունը մարդկանց գիտակցության ու տրամադրության վրա։

Դաստիարակության գործին մեծ վնաս է պատճառվում, երբ քրտնաջան աշխատանքը փոխարինվում է շաղակրատությամբ, կոնկրետ գործը՝ դատարկաբանությամբ, երբ ասում են մի բան, բայց անում ուրիշը։

Այս տեսակետից մեծ պատասխանատվություն են կրում ղեկավար աշխատողները։ Եթե ղեկավարը պարտավորություն է ստանձնում, ապա այն պետք է կատարի լրիվ ծավալով ու ժամանակին։ Կարգապահություն ու կարգուկանոն է պահանջում՝ ինքը պետք է կարգապահության, հստակ աշխատանքի օրինակ ծառայի։ Խոսում է օրինականության մասին՝ ինքը պետք է անշեղորեն կիրառի օրենքները։

Մի խոսքով, յուրաքանչյուր ղեկավար պետք է աշխատանքում անձնական օրինակ տա, նախաձեռնության, կազմակերպվածության, կարգապահության ու բարեխղճության, հանձնարարված գործի համար պատասխանատվության, ազնվության, սկզբունքայնության ու համեստության օրինակ։ Նա պետք է աչքի ընկնի գործի հանդեպ պետական մոտեցմամբ, աշխատավորների շահերի ու պահանջմունքների խոր իմացությամբ, նրանց հետ շփվելու պարզությամբ ու մատչելիությամբ։ Ղեկավարը պետք է կոնկրետ վարմունքով, գործով դաստիարակի մարդկանց։ Երբեք չպետք է մոռանալ, որ կոնկրետ վարմունքը, իրական գործը, լինելով դաստիարակչական աշխատանքի արդյունք, հենց դաստիարակության ամենահզոր գործոն են։

Ընկերնե՛ր։

Կուսակցական կազմակերպությունների աշխատանքում միշտ պետք է ուշադրության կենտրոնում գտնվեն բարոյական դաստիարակության հարցերը։ «Մենք չենք կարող մոռանալ, որ ապրում ենք սոցիալիստական հասարակության մեջ,— ընդգծեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— որի զարգացումը պետք է կարգավորվի սոցիալիզմի արմատական սկզբունքներով, այդ թվում, իհարկե, ըստ աշխատանքի բաշխման սկզբունքով»։

Մենք չենք կարող հանդուրժել սոցիալիստական հասարակության բնույթին խորթ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են որոշ մարդկանց ձգտումը՝ կորզել ինչքան կարելի է շատ, փոխարենը ոչինչ չտալով հասարակությանը, խուլիգանությունը, հարբեցողությունը, կաշառակերությունը, պաշտոնական դիրքի չարաշահումը և այլն։

Կուսակցական շատ կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում բարոյական դաստիարակությունը դարձել է նրանց աշխատանքի օրգանական մասը։ Ավելի նպատակասլաց ու հետևողական են իրականացվում դաստիարակչական ձեռնարկումները, պայքար մղվում կոմունիստական բարոյականության ամեն կարգի հակոտնյաների դեմ։ Եվ այնտեղ, ուր հենվում են աշխատավորական կոլեկտիվների, լայն հասարակայնության կոնկ-



րետ ու ակտիվ աջակցության վրա, այդ պայքարը հաջողությամբ է պսակվում, նպաստում մարդկանց մեջ ակտիվ կենսադիրքի մշակմանը։

Դրա հետ մեկտեղ, աշխատավորական ոչ բոլոր կոլեկտիվներում է, որ սիստեմատիկաբար, հետևողականորեն ու հաստատակամորեն են կենսագործվում բացասական երևույթների դեմ պայքարելու՝ հանրապետական կուսակցական կազմակերպության մշակած միջոցառումները։ Քիչ չեն դեպքերը, երբ դաստիարակչական աշխատանքի տեսադաշտից դուրս են մնում քաղքենիական, սպառողական հոգեբանության տեր, հանրօգուտ աշխատանքից խուսափող, տարբեր զանցանքներ կատարող մարդիկ։

Որոշ ձեռնարկություններում, կառույցներում, սովխոզներում ու կոլտնտեսություններում, հիմնարկություններում և կազմակերպություններում, սպասարկման ոլորտի օբյեկտներում պատշաճ կարգուկանոն հաստատելու համար դեռևս անբավարար են օգտագործվում կոլեկտիվների, լայն հասարակայնության ուժերը, ներգործության գաղափարախոսական ձևերը, վարչական և այլ կարգի միջոցները։ Ըստ էության դրանք կիրառվում են, բայց միշտ չէ, որ նպատակին են հասնում գլխավորապես այն պատճառով, որ գործադրվում են դեպքից դեպք, չեն ամրապնդվում կուսակցական խիստ վերահսկողությամբ։

Հափշտակումները, յուրացումները և մյուս չարաշահումները հնարավոր են դառնում գլխավորապես այն հիմնարկություններում, որոնց ղեկավարները, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները հաշտվում են անտնտեսվարության փաստերի, նյութական արժեքների հաշվառման, պահպանման սահմանված կանոնների խախտումների հետ, վճռական միջոցներ չեն ձեռնարկում կասեցնելու, փակելու բոլոր այն ուղիները, որոնցով տեղի է ունենում ժողովրդական բարիքի հափշտակումը։

Լուրջ անհանգստություն է պատճառում այն հանգամանքը, որ ոչ սակավ հափշտակումներին մասնակցում են առանձին ձեռնարկությունների, տնտեսությունների ղեկավար աշխատողներ և որոշ այլ պաշտոնատար անձինք։

Դեռևս արմատախիլ չեն արված պետական, հասարակական ունեցվածքն ու պաշտոնական դիրքը անձնական հարստացման նպատակներով օգտագործելու փաստերը։

Իսկ ինչքան վնասներ ենք կրում մենք մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում կատարված նյութական արժեքների մեծ կորուստների ու անարդատադրողական ծախսերի, հավելագրումների և աչքակապության, վառելիքաէներգետիկ ռեսուրսների վատնողական ծախսման պատճառով։ Մի ամբողջ շարք ձեռնարկություններ մեծ տուգանքներ են վճարում անորակ արտադրանք առաքելու, մատակարարումների պլանները ձախողելու համար և այլն։

Բացասական երևույթներն ինքըստինքյան չեն վերանա։ Անհրաժեշտ է հանրապետությունում ամենուրեք ստեղծել և պահպանել այդպիսի երևույթների հանդեպ անհաշտվողականության մթնոլորտ և ապահովել հասարակական դատապարտման կամ պատժի անխուսափելիությունը դրանց կրողների նկատմամբ։

Անհնար է արդյունավետ պայքար մղել բացասական երևույթների դեմ, առանց հաղթահարելու անհոգությունը, անտարբերությունը, չեզոքությունը։ Բազմադեմ են դրանք և դրսևորվում են ուր ասես՝ և՛ աշխատատեղում, և՛ կենցաղում, և՛ հասարակական վայրերում, և՛ ընտանիքում։ Դա թե՛ հոգեբանություն է, թե՛ գործելակերպ, ավելի ճիշտ գործելակերպի բացակայություն։ Եվ հաճախ՝ միանգամից դժվար ճանաչվող։ Նման երևույթների դեմ առավել ևս անհրաժեշտ է պայքարել ավելի ակտիվորեն ու հետևողական, քանի որ ամենուրեք, ինչ տեսքով էլ որ հանդես գան, վտանգավոր են, այդտեղ է թաղված, ինչպես ասում են, չարիքի արմատը։

Պաշտոնական դիրքի չարաշահումների, սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության և այլ բացասական դրսևորումների դեմ մղվող պայքարի հաջողությունը նախ և առաջ պայմանավորված է մասսաների ակտիվ ու լայն մասնակցությամբ։

Մենք քանիցս նկատել ենք, որ դրանք դրսևորվում են ոչ թե դատարկ տարածության մեջ, այլ աշխատավորական կոլեկտիվներում։ Նշանակում է, որ եթե ամեն ոք կոնկրետ և հետևողական կերպով պայքարի խախտումների ու չարաշահումների դեմ այնտեղ, ուր դրանք տեղի են ունենում, ապա այդպիսիք չեն լինի ընդհանուր առմամբ նաև հանրապետությունում։ Պետք է ոչ միայն խոսել թերությունների, խախտումների մասին, այլ ամենուրեք վճռական պայքար մղել դրանք արմատախիլ անելու համար։ Դրան պետք է ձգտեն հասնել կուսակցական կազմակերպությունները, կուսակցական կոմիտեները։

Մեր դաստիարակչական ջանքերը պետք է ուղղված լինեն այն բանին, որ հասարակության յուրաքանչյուր անդամ տիրոջ զգացումով, խնամքով, հոգածությամբ վերաբերվի ժողովրդական սեփականությանը։ Չէ՞ որ սոցիալիստականորեն դաստիարակված կարող է համարվել միայն նա, ով անտարբեր չէ ոչ միայն սեփական հաջողությունների, բարօրության, վարկի, այլև աշխատանքային ընկերների, աշխատավորական կոլեկտիվի գործերի, ողջ երկրի, ողջ աշխարհի աշխատավորների շահերի նկատմամբ։ Այս ոգով պետք է մենք վարենք մեր ողջ դաստիարակչական աշխատանքը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, յուրաքանչյուր շրջանում, քաղաքում, ողջ հանրապետությունում։

Ժամանակակից գաղափարախոսական աշխատանքի հարձակողական բնույթը, պայքարը հատկապես մարդկանց գիտակցության մեջ առկա վերապրուկների, նրանց վարքագծում դրսևորվող հակահասարակական երևույթների դեմ, առավելագույն կոնկրետություն են պահանջում։ Ձեռնարկությունների, հիմնարկությունների կուսակցական, հասարակական կազմակերպությունները պարտավոր են մարդկանց հետ աշխատել ոչ թե առհասարակ, այլ անհատապես, կոնկրետ պայքարել խախտումների ու խախտողների դեմ։ Այդ դեպքում միայն խախտումներն իրոք կպակասեն։

Պրոպագանդիստական, մասսայական-քաղաքական աշխատանքում հարկավոր է մշտապես շեշտել, որ ժողովրդի բարեկեցությունը պայմանավորված է նախ և առաջ յուրաքանչյուրի աշխատանքի արդյունքներով։ Բոլոր միջոցներով անհրաժեշտ է արմատավորել այն ըմբռնումը, որ բարեխիղճ աշխատանքը պարտադիր է բոլորի համար, որ մարդու հասարակական ճանաչումն ու նյութական բարեկեցությունը պայմանավորվում են միայն նրա աշխատանքով, ընդհանուրի բարօրությանը բերած նրա ներդրումով։

Շատ կարևոր է, որ մասսաների մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքը չներփակվի ձեռնարկության, հիմնարկության, ուսումնական հաստատության ներսում։ Անհրաժեշտ է իրականացնել այն նաև ըստ բնակության վայրի։ Առանց դրա անհնար է ստեղծել անհատի վրա դաստիարակչական ներգործության միասնական ճակատ։

Ըստ բնակության վայրի կատարվող նպատակասլաց դաստիարակչական աշխատանքի օրինակներ շատ կարելի է բերել։ Այդ գործը լավ է կազմակերպված Երևան քաղաքի Սովետական շրջանում, Լենինականում, Կիրովականում, մի շարք գյուղական շրջաններում։ Պլանաչափ ու նպատակասլաց գործունեության շնորհիվ այդտեղ հասել են հասարակության լայն մասնակցությանը միկրոշրջանների տարածքների, փողոցների, հրապարակների բարեկարգմանն ու կանաչապատմանը, բարենպաստ, առողջ բարոյահոգեբանական միկրոկլիմայի ստեղծմանը, որը նպաստում է տարբեր կարգի խախտումների նվազեցմանը։

Դրա հետ մեկտեղ հարկ է նշել, որ առանձին շրջաններում ու քաղաքներում հենց բնակության վայրում է, որ դաստիարակչական աշխատանքը տարվում է ցածր մակարդակով, իսկ քաղաքական ագիտացիան՝ դեպքից դեպք, առանց հստակ մշակված սիստեմի, առանց հաշվի առնելու բնակչության տարբեր խմբերի առանձնահատկությունները։ Միշտ չէ, որ հաջողությամբ են պսակվում նաև բազմաթիվ մասսայական միջոցառումներ՝ առնչված մարդկանց դաստիարակության այս կամ այն կողմին։

Առանձին տեղերում սակավ արդյունավետ է իրավախախտումների, պորտաբուծության և հարբեցողության կանխարգելման աշխատանքը։ Պորտաբու-



ծության դեմ թույլ են պայքարում Երևանի Օրջոնիկիձեի, Շահումյանի, Հոկտեմբերյանի, Գորիսի և այլ շրջաններում։

Պետք է առանձնապես հոգ տանել աշխատավորների իրավական դաստիարակության մասին, շեշտը դնելով քաղաքացիների կողմից իրենց պարտականությունների կատարման վրա, նրանց ներարկել սովետական օրենքների պարտադիր կատարման ներքին պահանջ, պատասխանատվության զգացում իրավական նորմերի անշեղ կենսագործման համար, ինչպես նաև հասարակական կարծիքը ոտքի հանել, համախմբել իրավախախտումների, քաղքենիական ու մանրբուրժուական հոգեբանության դրսևորումների դեմ։

Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների կողմից դաստիարակության գործում դեռևս բավականաչափ լայնորեն ու ակտիվորեն չեն օգտագործվում հասարակայնության ուժերը։ Չէ՞ որ յուրաքանչյուր քաղաքում և շրջանում այս կամ այն հասարակական աշխատանքին մասնակցում են մեծ թվով մարդիկ. դրանք և՛ կուսակցական կոմիտեի անդամներ են, և՛ սովետների դեպուտատներ, և՛ ժողովրդական վերահսկիչներ, և՛ տեղկոմների, կոմերիտմիության կոմիտեների, զանազան հասարակական կազմակերպությունների ղեկավար մարմինների, ընկերական դատարանների անդամներ, և՛ դրուժիննիկներ, պրոպագանդիստներ և այլն և այլն։ Պատկառելի ուժ է, այնպես չէ՞։ Բայց այդ ուժն արդյո՞ք ամենուրեք և միշտ է արդյունավետ օգտագործվում դաստիարակչական պրոցեսում։ Ցավոք, ոչ։ Կուսակցական կոմիտեները պետք է, որ խորհեն այս մասին։ Աշխատանքը պետք է այնպես վարել, որ յուրաքանչյուր հասարակական աշխատող իրեն մեկընդմիշտ զինվորագրված զգա մարդկանց դաստիարակության գործին։

Բարոյական դաստիարակության ողջ կոմպլեքսը պետք է նպատակամղված լինի սոցիալիստական քաղաքակրթվածության արմատավորմանը, որը ներառում է թե՛ մարդկանց գիտակցականության ու կուլտուրայի բարձրացումը՝ ներառյալ արտադրության ու աշխատանքի կուլտուրան, կենցաղի ու վարքագծի կուլտուրան, թե՛ օրինակելի հասարակական կարգը, թե՛ առողջ, ռացիոնալ սնունդը, սպասարկման բարձր որակը, թե՛ ազատ ժամանակի լիարժեք օգտագործո՛ւմը՝ բարոյագեղագիտական առումով։

Ընկերնե՛ր։

Գիտականորեն հիմնավորված, կշռադատված ազգային քաղաքականությունը, նշվեց պլենումում, զարգացած սոցիալիզմի կատարելագործման նպատակով կուսակցության ծավալած գործունեության անկապտելի մասն է։ Եվ այդ գործունեության հաջողության էական պայմանը աշխատավորներին պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելն է։ Ինչպիսի խնդիրներ ու պրոբլեմներ էլ որ մենք լուծենք, մեր ուշադրության կենտրոնում, ինչպես միշտ, պետք է լինի աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Գլխավորն այստեղ սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ըստ ամենայնի ամրապնդումն է, ռուս մեծ ժողովրդի, բոլոր եղբայր ժողովուրդների հանդեպ ջերմ սիրո ու հարգանքի, մեր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անհուն նվիրվածության զգացումներ դաստիարակելը։

Լուծելով ինտերնացիոնալ գիտակցության ձևավորման խնդիրը, պետք է հասնել այն բանին, որ մեր բոլոր մարդիկ խորապես գիտակցեն ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության անանց նշանակությունը հայ ժողովրդի, սովետների երկրի բոլոր ժողովուրդների նոր, երջանիկ ճակատագրում, սովետական հասարակության համախմբվածության ամրապնդման և առաջընթացի այնպիսի կարևորագույն գործոնների արգասավորությունը, որպիսիք են ՍՍՀՄ ազգերի և ազգությունների դաշինքի, անխախտ բարեկամության ու եղբայրության մեծ ուժը, նրանց համատեղ աշխատանքը, հարաճուն մերձեցումը, ազգային մշակույթների փոխհարստացումը։

Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության փոխադարձ կապն ու միասնությունը դրսևորվում են ինչպես մարդկանց ազգային արժանապատվության, ազգային մշակույթների հանդեպ տածած հարգանքի, այնպես էլ նացիոնալիզմի ու շովինիզմի նկատմամբ դրսևորվող անհաշտվողա-

կանության մեջ։ Անհրաժեշտ է վճռականորեն հանդես գալ ազգային բացառիկության ամեն տիպի քարոզի դեմ։

Կուսակցական կազմակերպությունների ջանքերը պետք է այսուհետև էլ նպատակամղվեն մեր բոլոր մարդկանց մեջ ազգամիջյան շփման բարձր կուլտուրայի, սովետական ժողովուրդների շահերի ընդհանրության գիտակցության ձևավորմանը, ընդհանուր գործին առավելագույն ավանդ բերելու ձգտմանը։ Հարկավոր է յուրաքանչյուր աշխատողի, բոլոր աշխատավորներին դաստիարակել այն խնդիրների լուծման համար պատասխանատվության ոգով, որոնք թելադրվում են երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի բարձր շահերով, պայմանագրային կարգապահության ամրապնդման, մատակարարումների պլանների և պարտնյորների հանդեպ ստանձնած բոլոր պարտավորությունների պարտադիր կատարման շահերի ոգով։

Ինտերնացիոնալիստական դաստիարակությունը պետք է իրականացնել լայնորեն, հաստատակամորեն ու գործարար կերպով։ Այդ աշխատանքը հարկավոր է օրգանապես միահյուսել հայրենասիրական դաստիարակության՝ իսկական հայրենասերների դաստիարակության հետ, որոնք իրենց ողջ եռանդն ու գիտելիքները նվիրաբերում են մեր երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդմանը, պատրաստ են ամեն րոպե հայրենիքը պաշտպանել իմպերիալիստական ագրեսորի ամեն տեսակ ոտնձգություններից, կատարել իրենց ինտերնացիոնալ պարտքը։

Ընկերնե՛ր։

Մեզանում տեղի է ունենում արտադրության միջոցների երկու՝ պետական ու կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի միաձուլում միասնական համաժողովրդական սեփականության մեջ՝ գլխավորապես ագրոարդյունաբերական ինտեգրացիայի, միջկոլտնտեսային և կոլտնտեսասովխոզային միավորումների զարգացման միջոցով։ Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների պայմաններում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման նոր ձևերը պահանջում են գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի նոր եղանակներ, որոնք ապահովեին նրանց առջև դրված խնդիրների հաջող կատարումը։ Բնականաբար, այստեղ մեր գաղափարախոսական ճակատի աշխատողները շատ անելիքներ ունեն։

Արտադրական հարաբերությունների կատարելագործումը պահանջում է պլանավորման ու կառավարման ըստ ամենայնի բարելավում։ Այստեղ գլխավորը այնպիսի միջոցներ գտնելն ու իրականացնելն է, որոնք գործողության լայն ասպարեզ ընձեռեն մեր էկոնոմիկայի վիթխարի ստեղծարար ուժերին։

Այնպիսի թերությունների վերացումը, ինչպիսիք են ռեսուրսների փոշիացումը, պլանների ոչ հավասարակշռվածությունը, ապրանքային զանգվածի, սպասարկման ծառայության ծավալների և բնակչության եկամուտների միջև եղած խզումը, թե տնտեսական և թե քաղաքական խնդիր է։

Կուսակցության XXVI համագումարը խնդիր դրեց ապահովել տնտեսական ու սոցիալական քաղաքականության սերտ միահյուսումը։ Տնտեսական շինարարության վերջնական նպատակը մարդկանց կենսապայմանների բարելավումն է։

Հանրապետությունում բնակարանային շինարարության մեծ ծրագիր է իրականացվում, հետևողականորեն լուծվում են քաղաքային տրանսպորտի զարգացման, բնակչության կենցաղային սպասարկման, բնակավայրերը հեռախոսային ցանցով ապահովելու և սոցիալական ինֆրակառուցվածքի մյուս բաղադրամասերի հետ կապված հարցերը։ Այդ ծրագրերը հետագայում էլ կկենսագործվեն հարաճուն տեմպերով։

Մենք պետք է ընդլայնենք մահճակալների ցանցը առողջապահության հիմնարկություններում, բարձրացնենք բուժսպասարկման որակը, շեշտը դնելով ողջ բնակչության ամենամյա դիսպանսերացում մտցնելու միջոցով հիվանդությունները կանխելու վրա։ Այդ կարևոր գործում պետք է լայնորեն ներգրավել արտադրական ձեռնարկությունների միջոցները։ Ձեռնարկությունների ուղղակի մասնակցությամբ իսկ անհրաժեշտ է վերջնականապես լուծել նաև բոլոր երեխաներին մանկական նախադպրոցական հիմնարկությունների



մեջ ընդգրկելու խնդիրը։ Այդ աշխատանքի հաջող կազմակերպման օրինակներ է տալիս Լենինականի կուսակցական կազմակերպությունը։ Պետք է հասնել ֆիզիկական կուլտուրայի մասսայականության պատշաճ զարգացման, բեկում մտցնել այդ գործի ողջ դրվածքի մեջ, հատկապես տարրական ու միջնակարգ կրթության օղակներում։

Հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել հանրապետության բոլոր, հատկապես լեռնային ու նախալեռնային շրջաններում անհատի զարգացման լայն հնարավորությունների և պայմանների ստեղծման վրա։ Կապիտալ ներդրումների քաղաքականությունը որոշելիս կարևորագույն չափանիշների թվում պետք է լինեն մարդկանց զարգացման, նրանց որակավորման բարձրացման հարցերը։

Մեր կուսակցական կազմակերպությունը այսուհետ ևս պետք է հետևողականորեն իրականացնի ժողովրդական տնտեսության, դրա ճյուղերի կառուցվածքը կատարելագործելու, հանրապետության ինդուստրիալ ֆակտուրան մշտապես նորացնելու, արտադրության այժմեական ուղղությունները զարգացնելու, բոլոր ռեգիոններում տնտեսական ու տեխնիկական նոր պայմաններին ու պահանջներին համապատասխանող արտադրական ու սոցիալական ինֆրաստրուկտուրա ստեղծելու, արտադրության և աշխատանքի մակարդակն ու կուլտուրան մշտապես բարձրացնելու՝ Հայաստանի կոմկուսի վերջին համագումարների ընդունած կուրսը, որը օբյեկտիվորեն կնպաստի նոր անհատի ձևավորմանը։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում շեշտվեց, որ սովետական մարդկանց գիտակցության ձևավորման գործում, հաշվի առնելով նրանց կրթվածության ու պահանջմունքների զգալիորեն աճած մակարդակը, անհրաժեշտ է ավելի ճիշտ և ավելի արդյունավետ օգտագործել, ավելի ակտիվորեն, ստեղծագործաբար կիրառել լուսավորության ու դաստիարակության միջոցների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, բանավոր պրոպագանդայի միջոցների, ուսումնական հաստատությունների հսկայական ցանցի բովանդակ զինանոցը։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը մշտապես ուշադրություն է դարձնում մասսայական ինֆորմացիայի միջոցներին, կատարելագործում դրանց ղեկավարումը, բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծում դրանց արգասավոր գործունեության համար։ Կուսակցական բարձր պահանջկոտությունը՝ այդ ամենի հետ զուգորդված, տալիս է իր դրական արդյունքը։ Պետք է նշել, որ վերջին ժամանակներս նկատելիորեն բարձրացել է մեր մասսայական ինֆորմացիայի միջոցների կազմակերպչական ու դաստիարակչական դերը, բարելավվել է հրապարակումների ու հաղորդումների բովանդակությունը, աճել դրանց գործարարությունը։

Մեր մամուլում սկսվել են ավելի շատ ու ավելի լավ լուսաբանվել և պրոպագանդվել աշխատանքի բրիգադային մեթոդը, պայքարը հանուն նոր, սոցիալիստական ավանդույթների ու ծեսերի լայն արմատավորման և այլն։ Հանրապետության կյանքում մամուլի աճած դերի մասին են խոսում նաև այնպիսի փաստեր, ինչպիսիք են նրա ելույթների հետքերով կուսակցական ու սովետական մարմինների կողմից կարևոր որոշումների ընդունումը։ Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները զգալիորեն աջակցում են տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը։

Չնայած դրական տեղաշարժերին, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքում դեռևս կան մի շարք թերություններ։ Նրանց աշխատանքի արդյունավետությունը կբարձրանա, եթե ուշադրությունը կենտրոնացվի ժողովրդի ստեղծարար գործունեության գլխավոր ուղղությունների վրա, եթե ավելի խոր արծարծվեն հրատապ հարցերը, իսկ դրանց քննարկմանը ներգրավվեն աշխատավորները։ Մեր լրագրողներին, պրոպագանդիստական կադրերին տակավին լրջորեն խանգարում են ձևամոլությունը, շաբլոնը, վեհերոտությունը, իսկ երբեմն էլ մտքի ծուլությունը։ Ցավոք, տպագիր հրատարակությունների էջերում և եթերում հաճախ են հայտնվում մակերեսային, ոչինչ

չասող նյութեր։ Դա հատկապես վերաբերում է տնտեսական ու արտադրական թեմաներին։

Մեր էկոնոմիկայի համար այսօրվա կարևորագույն հարցը, ինչպես բնորոշեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումը, արտադրության ինտենսիվացման ուժեղացումն է, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի որակի բարելավումը, խնայողությունն ամեն ինչում և այդ առումով մարդկանց հոգեբանական վերակառուցումը, բուն մտածողության բնույթի և արտադրության բոլոր մասնակիցների կողմից գործի նկատմամբ ցուցաբերվող մոտեցման փոփոխումը։ Մինչդեռ տնտեսական և արտադրական հարցերին վերաբերող հրապարակումները հաճախ կառուցվում են ըստ արմատացած բանաձևի՝ «Եթե պլանը կատարված է, ուրեմն ամեն ինչ լավ է»։ Իսկ ինչպե՞ս է պլանը կատարվում։ Ինչպիսի՞ն է արտադրության կազմակերպման և կուլտուրայի, աշխատանքի արտադրողականության մակարդակը։ Ինչպիսի՞ն են աշխատանքային, նյութական և էներգետիկ ծախսերը, ինչպիսի՞ն է աշխատանքի, արտադրանքի որակը։ Այս հանգուցային հարցերը միշտ չէ, որ պատշաճ լուսաբանվում են։ Դրանում մեղանչում են թե՛ «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ Էրմենիստանի», «Ռյա Թազա» թերթերը և թե հեռուստատեսությունն ու ռադիոն։

Մամուլում գործարարության պրոբլեմն ավելի դանդաղ է լուծվում, քան ցանկալի կլիներ։ Վերցնենք այսպիսի օրինակ։ Տարվա սկզբին հանրապետական թերթերը, որպես կանոն, հրապարակում են աշխատավորական կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունները։ Իսկ ինչ վերաբերում է դրանց կատարման առումով կոլեկտիվների կողմից տարվող աշխատանքի արտացոլմանը, այստեղ արդեն մեր մամուլը, ցավոք, միշտ չէ, որ հետևողական է։

Շարունակվում են առաջնահերթ խնդիր մնալ մամուլի ինֆորմացիոն-պրոպագանդիստական և կազմակերպչական գործունեության կատարելագործումը, կյանքի, ընթերցողների, հեռուստադիտողների և ռադիոունկնդիրների հետ կապի ամրապնդումն ու խորացումը, հոգածությունը բանգյուղթղթակցական շարժման տարածման նկատմամբ։ Այդ աշխատանքի կարևոր գործոն են հասարակական կարծիքի ուսումնասիրումն ու ձևավորումը, ստացվող նամակների ու թղթակցությունների խոր վերլուծությունը, մի խոսքով՝ այն ամենը, ինչ կոչվում է «հետադարձ կապի» ստեղծում, որը կճշգրտեր հենց իրենց՝ մասսայական ինֆորմացիայի օրգանների գործունեությունը, կնպաստեր նրանց ելույթների արդյունավետության և գաղափարախոսական ներգործունության աճին։ Հիշենք Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «...տեղերում կատարվող աշխատանքը միշտ էլ շատ նյութ է տալիս բավականաչափ առույգ տրամադրության համար։ Ինչ որ մեզանում իրոք պակասում է, դա այն է, որ մենք չենք կարողանում լավագույն նմուշները... լայն չափերով օգտագործել, որպեսզի դրանք դարձնենք բոլորի համար պարտադիր օրինակներ»։

Կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտկոմը մշտապես հոգ են տանում քննադատական ելույթների դերը բարձրացնելու, դրանց ներգործունությունն ուժեղացնելու նկատմամբ։ Մեր լրագրողները պետք է կարողանան լավ օգտագործել քննադատության զենքը, միշտ լինեն սկզբունքայնության և անաչառության դիրքերում։ Քննադատական ելույթների նպատակը պետք է լինի ոչ թե սենսացիան, այլ թերությունների և խախտումների վերացումը։ Իսկ դա նշանակում է, որ քննադատությունը պետք է միշտ լինի կոնստրուկտիվ, հետապնդի հասարակականորեն նշանակալի, այլ ոչ թե նեղ նպատակներ, բուն քննադատվողներին տրամադրի թերությունների շուտափույթ շտկման։ Քննադատական հրապարակումների ներգործունությունը պայմանավորված է նաև կուսակցական կոմիտեների դիրքորոշմամբ։ Այդ իմաստով Կենտկոմի պլենումի պահանջը հնչում է պարզ ու հստակ. պետք է սրությամբ արձագանքել պրոբլեմային ու քննադատական ելույթների նկատմամբ անուշադիր վերաբերմունքի փաստերին։

Հասկանալի է, որ մեր մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների արդյունավետ գործունեությունը, դրանց մասնակցության արդյու-



նավետությունը սոցիալ-տնտեսական զարգացման ու դաստիարակչական աշխատանքի գործնական խնդիրների լուծմանը ուղղակիորեն պայմանավորված են դրանց կուսակցական ղեկավարման մակարդակով, մարդկանց վրա թերթերի, հանդեսների, հեռուստատեսության և ռադիոյի ազդեցության հզոր պոտենցիալն ակտիվորեն օգտագործելու կուսակցական կոմիտեների ձգտումով ու հմտությունով։ Իսկ իրականում ինչպե՞ս է օգտագործվում այդ պոտենցիալը։

Տեղական մամուլի որոշ օրգաններ, ինչպես օրինակ, «Աշխատանքը» (Ամասիա), «Փարոսը» (Ստեփանավան), «Արևածագը» (Կալինինո), »Գուգարքը» և այլն, անբավարար են լուսաբանում իրենց շրջանների կյանքը, համարները հաճախ զբաղեցնում են բազմաթիվ ոչ սեփական թղթակցություններով, արտատպություններով։ Մի շարք թերթեր («Արագած», «Լուսարձակ», «Արտաշատ», «Գարուն» և այլն) հաճախ զանազան կարգի «անակնկալներ» են մատուցում կասկածելի որակի բանաստեղծական մարզանքների, վերամբարձ գրախոսությունների և բարոյական թեմաներով «խրատաբանությունների» տեսքով։

«Բանվոր» թերթը բավականաչափ նպատակասլաց չի կատարում իր գլխավոր խնդիրը՝ լինել Լենինականի քաղաքային կուսակցական կազմակերպության օգնականը աշխատավորներին սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման պլանների կատարմանը նպատակամղելու գործում։ Նրա էջերում հաճախ են հանդիպում ծավալուն նյութեր, որոնք նվիրված են երկրորդական հարցերի։

Չնայած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ընդունած որոշումից հետո որոշ չափով բարելավվել է շրջանային ռադիոյի գործունեությունը, այդուհանդերձ, տեղական մամուլին բնորոշ թերություններն այստեղ էլ են առկա։ Այս ամենը պարտավորեցնում է արմատապես բարելավել տեղական մամուլի և ռադիոյի աշխատանքը, բարձրացնել պահանջկոտությունը դրանց աշխատողների նկատմամբ։

Լուրջ պահանջներ պետք է ներկայացնել նաև որոշ հանրապետական հասարակական-քաղաքական, գրական-գեղարվեստական և գիտական հանդեսների («Սովետական գրականություն», «Բանբեր Հայաստանի արխիվների», «Լիտերատուրնայա Արմենիա», «Սովետական արվեստ», «Գարուն» և այլն) աշխատանքին։ Կան դեպքեր, երբ դրանցում տպագրվել են թույլ, երբեմն գաղափարաքաղաքական տեսակետից ոչ հստակ ստեղծագործություններ ու նյութեր։

Այդ առնչությամբ ավելորդ չէ մեկ անգամ ևս շեշտել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի այն պահանջը, որ անհրաժեշտ է ուժեղացնել մամուլի օրգանների ղեկավարների անձնական պատասխանատվությունը հրապարակումների գաղափարական բովանդակության և գեղարվեստական մակարդակի համար։ Անհրաժեշտ է, որ հանդեսների և հրատարակչությունների բոլոր կոլեկտիվներում միշտ և վճռականորեն կասեցվեն անսկզբունքայնության, հաշտվողականության, սուբյեկտիվիստական կողմնակալության փաստերը։

Վերջերս նկատելիորեն բարելավվել է Հրատպետկոմի, դրա ստորաբաժանումների գործունեությունը։ Կայուն կերպով կատարվում են գրքային արտադրանքի հրատարակման ու իրացման պլանները։ Սակայն քիչ չեն նաև դեռևս չլուծված հարցերն ու թերությունները։ Իր թեմատիկայով է՛լ ավելի խոր, բազմազան ու տարողունակ պետք է դառնա հրատարակվող հասարակական-քաղաքական, գեղարվեստական և, հատկապես, մանկապատանեկան գրականությունը։

Հարկավոր է մշտապես կատարելագործել թեմատիկ պլանավորման աշխատանքը, ապահովել դրա նպատակասլացությունը, հրատապությունը, տպաքանակները որոշելիս խստիվ հաշվի առնել գրքի պահանջարկն ու իրական կարիքը։ Չի կարելի մոռանալ, որ ժամանակին տեղ գտած այդօրինակ վրիպումների պատճառով «Հայգրքի» պահեստներում և գրախանութների դարակներում կուտակվել էր մեծ քանակությամբ գրականություն։

Յուրաքանչյուր խմբագրությունում, ստեղծագործական կոլեկտիվում՝ լինի

դա կուսակցական հանդես, շրջանային թերթ թե հեռուստատեսություն, ռեալ հնարավորություններ կան ելույթների ներգործունության, հրապարակումների և հաղորդումների բովանդակալիության և ինֆորմացիոն հագեցվածության հետագա բարձրացման համար։ Մամուլի սոցիալապես ակտիվ դիրքորոշումը դառնում է մասսաների կոմունիստական դաստիարակության և կազմակերպման, աշխատավորների ակտիվ կենսադիրքի ձևավորման վրա դրա ազդեցության ուժեղացման ավելի ու ավելի որոշիչ պայման։ Հրապարակումների բարձր որակ, գործարարություն, կուսակցական սկզբունքայնություն, սրություն ու կոնստրուկտիվություն, խմբագրության ունակություն մինչև վերջ հասցնելու սկսած գործը, ստեղծագործական անդուլ պրպտումների մթնոլորտի ստեղծում, արդիականության բարդ և կարևոր հարցեր բարձրացնելու «հակման ու ճաշակի» ձևավորում՝ ահա սրանք են մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի օրգանների արդյունավետ աշխատանքի գումարելիները։

Կուսակցական կոմիտեները պետք է գործարար կերպով, առանց մանր խնամակալության ուղղություն տան մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների աշխատանքին, բարձրացնեն դրանց մարտունակությունն ու հեղինակությունը, աջակցություն ապահովեն սկզբունքային ելույթներին։

Մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքի բովանդակալիությունը բարձրացնելու մասին վերն ասվածը լիովին վերաբերում է նաև բանավոր պրոպագանդային։ Անհրաժեշտ է այդ սիստեմն ամբողջությամբ դարձնել ավելի օպերատիվ և յուրաքանչյուր մարդու համար՝ մատչելի։ Դասախոսական պրոպագանդայի ժամանակ պետք է շեշտը հասարակ լուսավորչականությունից փոխադրել նյութի կոնցեպտուալ շարադրման վրա։ Դիտողական ագիտացիան պետք է դարձնել ավելի նպատակասլաց ու կոնկրետ, այն իրականացնել ճաշակով ու չափի զգացումով։

Պետք է հասնել միասնական քաղօրերի արդյունավետության բարձրացմանը։ Այստեղ անհրաժեշտ է լիովին բացառել ձևամոլությունը։ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը պետք է ստանձնի ոչ միայն մասսաների հետ շփման այդ նոր ձևի կազմակերպչի ֆունկցիաները, այլև, որ գլխավորն է, հասնի այն բանին, որ խորապես վերլուծվեն և անպայման իրականացվեն աշխատավորների հետ հանդիպումների ժամանակ արծարծված հարցերը, արված առաջարկություններն ու դիտողությունները։ Օգտակար կլիներ ընդհանրացնել միասնական քաղօրերի անցկացման արդեն կուտակված փորձը և միջոցներ իրականացնել այդ գործի հետագա կատարելագործման համար։

Այդ առնչությամբ հարկ է կրկին հիշեցնել ղեկավարին առաջադրվող կարևորագույն պահանջը՝ մասսաների հետ կապի մշտական ամրապնդման ունակության մասին։

Վ. Ի. Լենինը չէր պատկերացնում կուսակցական ու պետական մի գործչի, որը կապված չէ մասսաների հետ, անխնա ծաղկում էր նրանց, ովքեր վերից էին նայում զանգվածներին, ովքեր «մոռանում էին» սովորել ժողովրդից։ Նա պահանջում էր «ապրել բանվորների բուն կյանքով, այդ կյանքը մինչև ուղնուծուծը գիտենալ, կարողանալ անսխալ որոշել մասսայի տրամադրությունը ամեն մի հարցում, ամեն մի պահի, իմանալ այդ մասսայի իրական պահանջմունքները, ձգտումները, խոհերը, առանց կեղծ իդեալականացման նշույլի կարողանալ որոշել նրա գիտակցականության աստիճանը»։

Մեր ղեկավար շատ աշխատողներ լինում են տեղերում, այցելում են ձեռնարկություններ ու կազմակերպություններ, հարցերը, ինչպես ասվում է, լուծում տեղում։ Դա լավ է։ Իսկ վատն այն է, որ այդ այցելությունները միշտ չէ, որ ավարտվում են կոլեկտիվի հետ հանդիպումով, տեղի չի ունենում այն երկխոսությունը, որ մեզ այնքան հարկավոր է մասսաների տրամադրությունները, նրանց հուզող հարցերը անսխալ որոշելու համար։ Գործարար ուղևորությունները հարկավոր են, բայց պետք է պարտադիր դառնան նաև հանդիպումները մարդկանց հետ, կոլեկտիվների հետ, բնակչության հետ, ընդ որում նման հանդիպումներում ղեկավար աշխատողները պետք է հանդես գան հաշ-



վետվություններով կատարածի մասին, քաղաքական զեկուցումներով։ Մենք պետք է մերժենք առանձին աշխատողների ձևական հանդիպումները տեղերում, որ հյուրախաղեր են հիշեցնում։

Կարևոր է բարելավել կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքը և՝ հատկապես գյուղում։ Հարկավոր է քաղաքական ավելի մեծ ուղղվածություն ու նպատակասլացություն հաղորդել ակումբների, գրադարանների, մշակույթի տների ու պալատների գործունեությանը։

Հատկապես պետք է ուշադրություն դարձնել գիտաաթեիստական պրոպագանդան ուժեղացնելու, կրոնական մոլեռանդության ամեն կարգի դրսևորման դեմ պայքար ծավալելու, կյանքում սոցիալիստական ծեսերի արմատավորման աշխատանքը հիմնավորապես բարելավելու անհրաժեշտության վրա։ Այստեղ շատ ջանք պետք է գործադրեն ժողովրդական դեպուտատների սովետները, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները։ Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեներն այդ հարցերը պահեն մշտական հսկողության ներքո։

Այսօր կարևոր է, որ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, կուսակցական կոմիտեները, նրանց բոլոր բաժինները մշտապես զբաղվեն գաղափարախոսական աշխատանքի հարցերով։ Պետք է մեկընդմիշտ պարզ ու հստակ ըմբռնել ու հիշել, որ գաղափարախոսական աշխատանքը ողջ կուսակցության գործն է։

Կենտկոմի պլենումը հատկապես շեշտեց կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարների դերը, նրանց անձնական մասնակցության նշանակությունը գաղափարախոսական աշխատանքի ղեկավարման և իրականացման գործում։ Դա որոշիչ հանգամանք է տվյալ կոմիտեի աշխատանքի համար։ Ուստի բոլոր ընկերները պետք է ավելի շատ և սիստեմատիկաբար աշխատեն իրենց վրա, անձնական օրինակ հանդիսանան ոչ միայն այս կամ այն միջոցառման ձեռնարկմամբ ու կազմակերպմամբ, այլև դրան ակտիվորեն մասնակցելով։

Այսօր բանավոր ու տպագիր պրոպագանդայի բոլոր միջոցների, կուսակցական կոմիտեների և կուսակցական կազմակերպությունների ամենահրատապ խնդիրը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների պրոպագանդումն է, Յու. Վ. Անդրոպովի ճառում առաջադրված խնդիրների, պլենումի մյուս փաստաթղթերի լայն պարզաբանումը։ Յուրաքանչյուր աշխատավոր պետք է իմանա և խորապես յուրացնի նրա որոշումների ողջ բովանդակությունն ու իմաստը։

Ընկերնե՛ր։

Սովետական մարդկանց հոգևոր կյանքի հարստացման, նրանց դաստիարակման գործում խոշոր ավանդ ներդնելու են կոչված գրականությունն ու արվեստը։ Այսօր մենք խորին բավարարությամբ ենք նշում հանրապետության գեղարվեստական մշակույթի վարպետների հաջողությունները հիանալի շատ ստեղծագործությունների կերտման գործում, որոնք հարստացնում են սերունդների բարոյական գիտակցությունն ու փորձը, բացահայտում սովետական բնավորության լավագույն հատկանիշները։ Քաղաքացիական վսեմ պաթոսով հագեցած այդ ստեղծագործություններն արծարծում են կարևոր պրոբլեմներ, որոնցով ապրում է մեր հասարակությունը, հաստատում են վեհ իդեալներ, ակտիվորեն նպաստում մասսաների կոմունիստական դաստիարակությանը։

Վերջին շրջանի մի շարք գործեր վկայում են նաև ստեղծագործական պրպտումների լայն շրջանակը, պրպտումներ, որոնք կյանքի են կոչել գեղարվեստական մարմնավորման եղանակների, անհատական ոճերի, ժանրերի գունեղ մի բազմություն։

Ամրապնդվում են ստեղծագործական կազմակերպությունների կապերը արտադրական կոլեկտիվների, սովետական բանակի մարտիկների հետ։ Հավանության են արժանի հանրապետության քաղաքներում ու շրջաններում կազմակերպվող համերգ-հաշվետվությունները, գրական երեկոները, բերքի տոների շրջանակներում անցկացվող պրոֆեսիոնալ և ինքնագործ արվեստների

ստուգատեսները, ցուցահանդեսները, աշխատավորության շրջանում կերպարվեստը պրոպագանդելու կոչված «Նկարչի շաբաթները»։

Ավելի ու ավելի են սերտանում մեր մշակույթի վարպետների կապերը եղբայրական հանրապետությունների գրականության ու արվեստի գործիչների հետ։ Բարի ավանդույթ է դարձել համերգային խմբերի, ցուցահանդեսների, ֆիլմերի, ներկայացումների փոխանակումը։ Աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց գեղագիտական մտահորիզոնի ընդլայնման գործում ծանրակշիռ ներդրում են կատարել կինոֆիլմերի և հեռուստաֆիլմերի համամիութենական փառատոները, մանկական գրքի համամիութենական շաբաթը, թարգմանական արվեստի ավանդական դարձած տոները, շեքսպիրյան ներկայացումների ստուգատեսը, ռուսական դրամատուրգիայի փառատոնը և այլն։

Գրականության և արվեստի՝ գաղափարախոսության այդ կարևոր բնագավառի, գործերն ու հոգսերը գտնվում են հանրապետության կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում։ Վերջին տարիներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկել է հարցեր, որոնք կարևոր նշանակություն ունեն սովետահայ գրականության, երաժշտության, թատրոնի, կինոյի, կերպարվեստի, պարարվեստի, գեղարվեստական ստեղծագործության պրոպագանդման, արվեստի և աշխատանքի դաշինքի ամրապնդման, առանձին առաջատար կոլեկտիվների գործունեության բարելավման համար։

Ելակետը արվեստագետի ստեղծագործության մեջ եղել և մնում է նրա քաղաքացիական դիրքորոշումը։ Որքան հստակ է ստեղծագործության գաղափարական ուղղվածությունը, այնքան ավելի զորեղ է նրա ազդեցությունը մարդկանց մտքի վրա։ Իսկ դա պահանջում է գրողներից, նկարիչներից, կոմպոզիտորներից, առհասարակ մեր մշակույթի բոլոր գործիչներից, մշտապես աշխատել սեփական քաղաքական մտահորիզոնի ընդլայնման վրա, վերլուծաբար, խոր ուսումնասիրել իրականությունը, սերտորեն առնչվել կյանքի, սոցիալիստական շինարարության առօրյայի հետ։

Ճշմարիտ ստեղծագործական ազատությունը, ինչպես այն ըմբռնում է մարքս-լենինյան գեղագիտությունը, ենթադրում է ոչ միայն արվեստագետի իրավունքը՝ ընտրել, այլև նրա պարտավորությունը՝ նյութ, թեմա ընտրելիս ղեկավարվել հասարակության, ժողովրդի շահերով։

Մարդկանց մեջ դաստիարակել գաղափարական համոզվածություն, սոցիալական ակտիվություն, աշխատասիրություն, խիզախություն, հաստատել բարոյական վսեմ սկզբունքներ, բավարարել նրա պահանջմունքը այդ սքանչելի հատկանիշները մարմնավորող իդեալի վերաբերյալ, պրոպագանդել սովետական ապրելակերպը՝ ավելի կարևոր ու ազնիվ ուրիշ էլ ի՞նչ կարող է լինել արվեստագետի համար։

Մինչդեռ, մեզանում գրականության ու կերպարվեստի առանձին գործեր, առանձին ներկայացումներ ու կինոնկարներ չունեն սոցիալական նշանակալիություն և գեղարվեստական լիարժեքություն։ Դրանց հեղինակները լավ չեն ճանաչում մեր օրերի իսկական հերոսներին։ Դեռևս նկատվում է մանրաթեմայնություն, խոր ընդհանրացումների բացակայություն, մարդկանց հուզող պրոբլեմների մակերեսային արտացոլում։ Զգացվում է երիտասարդությանը, մանուկներին ու պատանեկությանը հասցեագրված ստեղծագործությունների պակաս։ Դանդաղ է զարգանում գեղարվեստական հրապարակախոսությունը։

Հասկանալի է, խոսքը թեմա, հերոսներ, պրոբլեմներ «պարտադրելու» մասին չէ, սակայն, միաժամանակ, բացարձակապես անհանդուրժելի են արվեստագետի ապագաղափարայնությունը, անտարբերությունը, նրա հեռացումը հանապազօրյա, հրատապ իրողություններից դեպի մանր ինքնափորփրումների աշխարհ կամ էլ միմիայն քմծիծաղ հարուցող նրա ամուլ ճիգերը՝ պճնվելու օտարի նորաձև հագուստկապուստով։

Հավասարապես անթույլատրելի են գաղափարազրկության, աշխարհայացքային թափթփվածության դրսևորումները։ Անընդունելի են թե՛ կենցաղային անախորժությունների մանր, անձուկ աշխարհում ներփակվելը, թե՛ անխոհեմ քննադատամոլությունը, որն արտահայտվում է ստույգ սոցիալական վերլու-



ծությունից դուրս դիտված բացասական երևույթների ուռճացմամբ։ Մեզ չի կարող չանհանգստացնել նաև, որ երբեմն ավելի լավ, տպավորիչ մարմնավորվում են ոչ թե այն հերոսները, որոնց ուզում ես ընդօրինակել, այլ, ավելի շուտ, հակահերոսները՝ մեզ համար խորթ գաղափարներ ու մտքեր կրողները։

Կուզենայինք շեշտել նաև հետևյալը։ Հարկ է, որ մեր արվեստագետներն առավել մեծ պատասխանատվությամբ մոտենան մեր ժողովրդի կյանքի զանազան պատմական փուլերի, իրադարձությունների, առանձին պատմական անձանց գործունեության գեղարվեստական արտացոլմանը։ Այստեղ պարտադիր են կուսակցականությունը, դասակարգային մոտեցումը, պատմականությունը, բարձր գեղարվեստական մակարդակը։

Հանրապետության կուլտուրայի մինիստրությունը, Պետկինոն, Պետհեռուստառադիոն, Հրատպետկոմը, ստեղծագործական միությունները և նրանց կուսակցական կազմակերպությունները պետք է բարելավեն մեր գեղարվեստական մշակույթի ղեկավարումը, այդ գործում թույլ չտալով ոչ ձևամոլություն, ոչ վերահսկողության բացակայություն։ Անհրաժեշտ է նաև, որ նրանք վերջ տան արտասահմանյան հոգևոր արտադրանքի անխտրական օգտագործման առանձին դրսևորումներին, փակեն էստրադա, կինո և հեռուստաէկրան տանող բոլոր ճանապարհները անբովանդակ, գաղափարազուրկ, գռեհիկ, գեղարվեստորեն սնանկ ստեղծագործությունների առջև։

Եվ ապա։ Բավականաչափ մտածված ու նպատակասլաց չէ հանրապետության առաջատար թատրոնների խաղացանկային քաղաքականությունը։ Վերջին տարիներս մեր օպերային թատրոնը, որն ունի ստվարաթիվ և փորձառու ստեղծագործական կազմ, նեղացրել է իր խաղացանկը, ծայրաստիճան քիչ է իրականացնում նոր բեմադրություններ։ Իրենց խաղացանկի ձևավորման նկատմամբ առավել պահանջկոտություն պետք է հանդես բերեն նաև սունդուկյանցիները։ Եվ ոչ միայն նրանք։ Մեր ակադեմիական թատրոնների պատասխանատվությունն իրենց գործունեության արդյունքների համար հատկապես մեծ է։ Չէ՞ որ նրանք հանդես են գալիս որպես թատերական մշակույթի ու մտածողության յուրատեսակ օրենսդիրներ, և նրանց յուրաքանչյուր բեմադրություն պետք է աչքի ընկնի գաղափարագեղագիտական բարձր արժանիքներով, դառնա նկատելի երևույթ մեր մշակութային կյանքում։

«Կուսակցությունը,— պլենումում ասաց ընկ. Յու. Վ. Անդրոպովը,— հոգածությամբ, հարգալից է վերաբերվում տաղանդներին, արվեստագետի ստեղծագործական պրպտումներին, չմիջամտելով նրա աշխատանքի ձևին ու ոճին։ Բայց կուսակցությունը չի կարող անտարբեր լինել արվեստի գաղափարական բովանդակության նկատմամբ։ Նա միշտ արվեստի զարգացմանը ուղղություն կտա այնպես, որ վերջինս ծառայի ժողովրդի շահերին։ Խոսքը, իհարկե, վարչարարության մասին չէ։ Գեղարվեստական ստեղծագործության վրա ներգործելու գլխավոր մեթոդը պետք է լինի մարքս-լենինյան քննադատությունը՝ ակտիվ, զգայուն, ուշադիր և դրա հետ մեկտեղ անհաշտ՝ գաղափարապես խորթ և պրոֆեսիոնալ տեսակետից թույլ ստեղծագործությունների նկատմամբ»։

Վերջին տարիներս մեր քննադատները, գրականագետները, թատերագետները, երաժշտագետները, արվեստաբանները ստեղծել են ոչ քիչ թվով խոր, օգտակար աշխատություններ։ Եվ այնուհանդերձ, իրենց ընդհանուր զանգվածով՝ քննադատական ելույթներն ավելին ցանկանալու տեղիք են տալիս թե՛ որակի և թե քանակի տեսակետից։ Գրական-գեղարվեստական քննադատության և արվեստագիտության մեջ գերակշռում են անցյալին, առավելապես դասական ժառանգությանը նվիրված աշխատությունները, անչափ քիչ են մշակվում ժամանակակից գեղարվեստական պրոցեսի լուրջ պրոբլեմները։ Շատ նոր գրքեր, ներկայացումներ, ֆիլմեր, էստրադային ծրագրեր դուրս են մնում քննախոսականների տեսադաշտից, իսկ մամուլի էջերում հայտնվող քննադատական հոդվածներն էլ հաճախ տառապում են մակերեսայնությամբ, հայեցողականությամբ, հաճոյախոսությամբ, որոշ բանավեճային ելույթներն էլ՝ ավելորդ սրությամբ, միտումնավորությամբ։ Ստեղծագործական միություններում հրա-

վիրվող քննարկումները, դիսպուտները հաճախ անցնում են կազմակերպական և գաղափարատեսական ցածր մակարդակով։

Լավ է, որ մենք վերջին տարիներս նախանձախնդիր կերպով ամրապնդում ենք արվեստի նյութատեխնիկական բազան։ Այս գիծը պետք է շարունակվի և առաջիկայում։ Դրա հետ մեկտեղ կուսակցական կոմիտեները պետք է ավելի մերձենան գեղարվեստական պրոցեսին, իրենց հարաբերությունները ստեղծագործական հիմնարկությունների հետ կառուցեն սկզբունքայնության և հոգատարության հիմքի վրա։ Անհրաժեշտ է, որ նրանք լավ ճանաչեն մեր մշակույթի վարպետներին, ստեղծագործական կոլեկտիվներին, իմանան նրանց հղացումները, ապագայի անելիքները, կարիքներն ու հոգսերը։ Կապը նրանց հետ պետք է լինի մշտական, արդյունավետ։ Դա հնարավորություն կտա ժամանակին և ճիշտ լուծել շատ պրոբլեմներ, որոնք խանգարում են դեղարվեստական ստեղծագործության արգասավոր զարգացմանը։

Հարկավոր է բարձրացնել բնակչության, հատկապես գյուղի բնակիչների, կուլտուրական սպասարկման մակարդակը։ Այս գործով հիմնականում զբաղվում են Հայհամերգի այսպես կոչված տնտհաշվարկային կոլեկտիվները, որոնց գործունեությունը պահանջում է բարելավում, իսկ մասնագիտական մակարդակը՝ շեշտակի բարձրացում։ Առաջատար ստեղծագործական կոլեկտիվները պետք է հաճախակի հանդես գան գյուղական հանդիսասրահում։ Մի՞թե հանդուրժելի է, որ մի ամբողջ շարք շրջաններում նրանց դեպքից դեպք են տեսնում, իսկ մի քանիսն էլ, ինչպես օրինակ, անցյալ տարի Մեղրու շրջանը, առհասարակ, չեն արժանանում Հայհամերգի խմբերի ուշադրությանը։

Անհրաժեշտ է, որ Կենտկոմի կուլտուրայի բաժինը, համապատասխան մինիստրությունները, գերատեսչություններն ու հիմնարկությունները, ստեղծագործական միություններն ու նրանց կուսակցական կազմակերպությունները հետևողական աշխատանք տանեն նշված թերությունները վերացնելու համար։

Ընկերնե՛ր։

Թե գործնական, գաղափարաբարոյական ինչ հատկություններով օժտված կլինի կյանք մտնող, իր աշխատանքային գործունեությունն սկսող մարդը՝ մեծապես կախված է դպրոցից, միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատությունից։ Այստեղ շատ կարևոր է ուսուցման ու դաստիարակության պրոցեսների սերտ միահյուսումը։ Մեզ հարկավոր են դպրոցների, տեխնիկումների, բուհերի ոչ թե պարզապես գիտելիքներ ունեցող շրջանավարտներ, ոչ միայն լավ, հմուտ մասնագետներ, այլև իրենց հայրենիքի իսկական քաղաքացիներ՝ հայրենասերներ, ինտերնացիոնալիստներ, որոնք զինված են դասակարգային գիտակցությամբ, քաղաքականապես պատրաստված են, աշխատասեր են, ազնիվ և բարեկիրթ։ Մեր երիտասարդության մեծ մասն օժտված է հենց այդպիսի հատկություններով։

Բայց կան երիտասարդներ, որոնց սոցիալ-քաղաքական անբավարար ակտիվությունը պայմանավորված է նախ և առաջ այնպիսի երևույթներով, ինչպիսիք են հապաղած քաղաքացիական ձևավորումը և քաղաքական միամտությունը։ Երիտասարդության հենց նման ոչ հասուն կատեգորիան է հակված խուսափելու աշխատանքից, խնամառու կյանք վարելու, երբեմն էլ ընկնելու թշնամական պրոպագանդայի ազդեցության տակ։ Հանրահայտ է, որ ներկայումս բուրժուական գաղափարախոսությունը մեծ ուշադրություն է դարձնում պրոպագանդայի սոցիալ-հոգեբանական կողմերին։ Նրա նպատակն է ներգործել ոչ միայն բանականության, այլև զգացմունքների վրա և քաղքենիական տրամադրություններ հրահրել։

Գաղափարադաստիարակչական աշխատանքի հաջողությունը դպրոցում հիմնականում կախված է այն բանից, թե ժողովրդական կրթության աշխատողներն ինչպես են դնում և լուծում աշակերտների գաղափարաքաղաքական, աշխատանքային, բարոյական, ինտերնացիոնալ, հայրենասիրական, գեղագիտական, ֆիզիկական դաստիարակության խնդիրները։

Դպրոցի առաջնահերթ խնդիրն է աշակերտներին նախապատրաստել կյանքի, աշխատանքային գործունեության, դաստիարակել արժանի հերթափոխ։



Հավանության է արժանի Սիսիանի շրջանի դպրոցների շրջանավարտների նախաձեռնությունը, որոնք որոշել են ամբողջ դասարանով գնալ արտադրություն, շարունակել հայրերի գործը։ Անհրաժեշտ է, որ դա լայն արձագանք գտնի հանրապետության սովորողների շրջանում։

Լուսավորության մինիստրությունը, դպրոցները պետք է մշտապես բարելավեն աշակերտների աշխատանքային դաստիարակության, մասնագիտական կողմնորոշման գործը, նրանց սեր ներարկեն աշխատանքի նկատմամբ, հարգանք՝ աշխատավոր մարդկանց հանդեպ, խնայողական վերաբերմունք ժողովրդական բարիքի նկատմամբ։

Հարկ է շեշտել նաև արդյունաբերական ձեռնարկությունների, գյուղատնտեսական և այլ կազմակերպությունների կուսակցական կազմակերպությունների ու ղեկավարների պատասխանատվությունը հանրային արտադրության և գիտատեխնիկական առաջընթացի աճած պահանջներին համապատասխան աշակերտների աշխատանքային դաստիարակությանն ու մասնագիտական կողմնորոշմանը նպաստող պայմանների ստեղծման գործում։

Էական թերություններ կան աշխատանքային ուսուցման բազայի ստեղծման գործում։ Բարվոք չէ դպրոցական արհեստանոցների մատակարարման գործը։ Բոլոր բազային ձեռնարկություններում չէ, որ ստեղծված են ուսումնաարտադրական տեղամասեր։ Այստեղ հարկավոր է վճռականորեն և արագ շտկել գործերը։

Պետք է ուժեղացնել դպրոցականների, մատաղ սերնդի բարոյական դաստիարակությունը, նրանց պաշտպանել սպառողական հոգեբանության մանրէներից։

Այստեղ անհրաժեշտ ենք համարում ուշադրությունը բևեռել նաև հետևյալ հանգամանքի վրա. շատ ընտանիքներում նկատվում է հիվանդագին հոգատարություն երեխաների նկատմամբ։ Երեխան աճում է ջերմոցային պայմաններում, նրան ամեն ինչ տրվում է և այն էլ շռայլորեն, նրան թույլատրված է ամեն ինչ։ Սովորաբար, դա բացատրվում է այն քաղքենիական փիլիսոփայությամբ, թե «ես դժվար եմ մեծացել, մանկություն չեմ տեսել, թող իմ երեխաները լավ ապրեն»։ Առանձին մարդիկ ուզում են դրանով արդարացնել անգամ իրենց տնտեսական ուռճացումը, կուտակման մարմաջը, ինչքամոլությունը, պատճառաբանելով, թե իբր «ամեն ինչ արվում է երեխաների համար, թե ո՛ւր է նրանց մնալու»։ Նման «հոգատար» ծնողներին անհրաժեշտ է հիշեցնել, որ երեխաների մեջ պետք է ներարկել լավ սովորելու և բարեխիղճ աշխատելու ձգտում, դաստիարակել խելացի, զարգացած, ազնիվ, բարոյապես տոկուն, հասարակությանը պիտանի մարդ։ Հենց սա է իսկական հոգատարությունը երեխաների, նաև հասարակության նկատմամբ։

Անհրաժեշտ է դասավանդման ընթացքում ամենալուրջ ուշադրությունը նվիրել մատերիալիստական աշխարհայացքի մշակմանը, դասակարգայնության զգացում պատվաստելուն։ Պետք է ուժեղացնել պատանիների ու աղջիկների ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական դաստիարակության գործը, պահպանել ու բազմապատկել մեր հիանալի ավանդույթներն այդ մարզում։

Չի կարելի կրթված ու բազմակողմանիորեն զարգացած մարդուն պատկերացնել առանց լեզվի բարձր կուլտուրայի։ Դպրոցը պետք է մշտապես կատարելագործի ու խորացնի մայրենի լեզվի, նրա հետ մեկտեղ ռուսաց լեզվի ուսումնասիրումն ու խոր յուրացումը, ինչպես նաև ապահովի մեկ օտար լեզվի ուսուցանումը։

Յուրաքանչյուր աշակերտ, անկախ այն բանից, թե վաղը ինչպիսի մասնագիտություն է ընտրելու, պարտավոր է դպրոցում խորությամբ, կատարելապես տիրապետել մայրենի լեզվին, յուրացնել նրա բոլոր հարստությունները, ընկալել նրա ամբողջ գեղեցկությունն ու հմայքը, սովորել հստակ, պատկերավոր խոսել և շարադրել իր մտքերը։

Հանրապետության լուսավորության մինիստրությունը, ժողովրդական կրթության բոլոր մարմինները պետք է շարունակեն աշխատանքը մայրենի լեզվի դասավանդման արմատական բարելավման, ուսուցման ամբողջ պրոցեսի, ձևերի և մեթոդների հետագա կատարելագործման նպատակով։ Այս

խնդրի կատարմանն ակտիվորեն նպաստելու է կոչված վերջերս ստեղծված «Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում» ամսագիրը։

Մեր ժողովրդի համար ռուսաց լեզուն ո՛չ միայն ազգամիջյան շփման, հաղորդակցման միջոց է, այլև իր ավագ եղբոր՝ ռուս ժողովրդի, սովետական միասնական ընտանիքի բոլոր ժողովուրդների հետ հոգեհարազատության լեզու։

Հանրապետությունում զգալի աշխատանք է կատարված աշակերտների կողմից ռուսաց լեզվի խոր տիրապետումն ապահովելու համար։ Հրատարակվել են ռուսաց լեզվի ու գրականության կատարելագործված ծրագրեր և դասագրքեր, ուսուցողական նյութեր։ Զգալիորեն ավելացել է մեթոդական գրականության լույսընծայումը։ Սկսվել է «Հայկական դպրոցում ռուսաց լեզվի ուսուցչի մատենաշարի» հրատարակումը։ Գործում են ռուսաց լեզվի խորացված ուսուցմամբ դպրոցներ և այլն։

Քիչ բան չի արված։ Անհրաժեշտ է այսուհետ ևս կատարելագործել ռուսաց լեզվի ուսուցման դրվածքը ինչպես հանրակրթական դպրոցներում, այնպես էլ միջնակարգ-մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում, հետևողականորեն իրականացնել այդ հարցի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերջերս ընդունած որոշումը։

Մեր դպրոցի դաստիարակչական գործունեության բարելավման այս և մյուս բոլոր հարցերը պետք է մշտապես գտնվեն հանրապետության լուսավորության մինիստրության, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, տեղական սովետների գործկոմների ուշադրության կենտրոնում։

Կարևոր տեղ է հատկացվում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմին։ Այդ բնագավառում նույնպես մենք ձեռքբերումներ շատ ունենք։ Բայց թերություններն էլ քիչ չեն։

Առանձին մասնագիտությունների երիտասարդ բանվորական կադրերի պլանավորման ու պատրաստման գործում եղած լուրջ թերությունների մասին մենք խոսել ենք Կենտկոմի նախորդ պլենումում։ Այսօր պետք է շեշտել, որ շատ ուսումնարաններում վատ վիճակում է սովորողների ուսուցման ու դաստիարակության գործը։ Բարելավման կարիք ունի մանկավարժների, արտադրական ուսուցման վարպետների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը։ Հանրապետության պրոֆտեխուսումնարաններում սովորողների մաղումը միայն 1981—1982 ուսումնական տարում կազմել էր մի քանի հազար մարդ։ Դաստիարակչական աշխատանքի շրջանակից դուրս մնացած շատ սովորողներ կատարում են հանցագործություններ։

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի առաջադրած խնդիրներից, պետք է վճռական միջոցներ ձեռնարկել երիտասարդ բանվորական կադրերի պատրաստման ու դաստիարակության գործում տեղ գտած թերություններն արմատախիլ անելու համար։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ հանրապետության բանվոր դասակարգը հիմնականում համալրվի պրոֆտեխուսումնարանների սաների հաշվին։ Այդ գործում մենք պետք է փոխ առնենք լենինգրադցիների փորձը, կարգավորենք դպրոցների, պրոֆտեխուսումնարանների և ձեռնարկությունների հստակ, գործնական փոխհարաբերությունը։

Բարելավման կարիք ունի հանրապետության բուհերում և տեխնիկումներում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, որին պետք է ակտիվորեն ձեռնամուխ լինեն կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, ռեկտորատներն ու դիրեկցիաները, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, հաշվի առնելով ուսանող երիտասարդության շրջանում տարվող այդ աշխատանքի յուրահատկությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը շեշտեց ուսուցչի դերի հետագա բարձրացման անհրաժեշտությունը։ Ուսուցիչը հասարակության վստահված անձն է մեր երեխաների դաստիարակության գործում։ Մեզանում քիչ չեն այդ բարձր կոչմանն արժանի մանկավարժներն ու դասախոսները։ Ուսուցիչների, մանկավարժների բազմահազարանոց բանակը, բուհերի ու տեխնիկումների պրոֆեսորադասախոսական անձնակազմը մեր ժողովրդի, հանրապետական կուսակցական կազմակերպության ոսկյա ֆոնդն են։ Նաև նրանց բերած մեծագույն նպաստով ենք մենք հասել մեր գլխավոր նվաճումներից մեկին՝ նոր մարդու հայրենասեր-կառուցողի աճեցմանն ու դաստիարակմանը։



Բայց կան նաև այնպիսիները, որոնք անհրաժեշտ կոնտակտ չեն ստեղծում իրենց և աշակերտների միջև, սաների հետ շփվում են միայն պարապմունքների ընթացքում, չեն մասնակցում դպրոցական, ուսանողական միջոցառումներին, իսկ հանրակացարաններում հազվադեպ հյուրեր են։ Դա չի կարող չհանգեցնել երիտասարդների մեկուսացմանը իրենց հոգևոր դաստիարակներից։ Լավ մանկավարժը ո՛չ միայն սովորեցնում է ու դաստիարակում, այլև իր անձնական օրինակով վարակում է աշակերտին, նրա մեջ բնական ձգտում առաջացնում նմանվելու իր սիրելի ուսուցչին։ Ուսուցչին հոգատարությամբ շրջապատելը, նրա համար աշխատանքի ու կենցաղի նորմալ պայմաններ ստեղծելը կուսակցական և սովետական մարմինների կարևորագույն խնդիրներից մեկն է։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժինը, կուսակցական կոմիտեները պետք է ուժեղացնեն վերահսկողությունը և փոխհամաձայնեցնեն ժողովրդական կրթության մարմինների ամբողջ բազմազան գործունեությունը։

Շոշափված հարցերի ողջ բազմակերպությամբ հանդերձ, երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծման գործում մեծ դեր է հատկացված նաև լենինյան կոմերիտմիությանը։

Այսօր ինքնուրույն կյանք է մտնում երկրի ողջ պատմության մեջ առավել գրագետ, մասնագիտորեն առավել լավ նախապատրաստված երիտասարդ սերունդ։ Նա աճել է սոցիալիզմի, բարեկեցության մշտական վերելքի, խաղաղության պայմաններում։ Կոմունիստական իդեալներին, հեղափոխական ավանդույթներին հավատարիմ՝ երիտասարդությունն աշխատում է հնգամյակի առաջավոր բնագծերում։

Մեր հանրապետության գրեթե բոլոր արտադրական կոլեկտիվներում հարվածային աշխատում են կոմերիտական-երիտասարդական բրիգադներ, որոնց անդամներից շատ-շատերը հայրենասիրական նախաձեռնությունների և ձեռնարկումների հեղինակներ են, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար ծավալված շարժման ակտիվ մասնակիցներ։ Ուսումն աշխատանքի հետ զուգակցելու արգասավոր ձև դարձան ուսանողական շինարարական և մյուս ջոկատները։

Կոմերիտմիությունը կոչված է առաջամարտիկ լինելու թե՛ էկոնոմիկայի, և թե սոցիալ-կուլտուրական, հոգևոր զարգացման կարևորագույն խնդիրների լուծման գործում։ Նա պետք է անդուլ շարունակի երիտասարդ սերնդի մեջ մարքս-լենինյան աշխարհայացք ձևավորելու աշխատանքը, պատանիներին և աղջիկներին կոփի կոմունիստական գաղափարայնության, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներին նվիրվածության, բարձր բարոյականության ոգով, անհաշտվողական վերաբերմունք սերմանի բուրժուական գաղափարախոսության, կյանքի նկատմամբ սպառողական վերաբերմունքի դրսևորումների, մեր հասարակությանը խորթ արարքների ու բարքերի դեմ։

Մենք երբեք չպետք է նվազեցնենք երիտասարդ սերնդի պարտականությունը ժողովրդի և պետության հանդեպ, պատմության և ապագա սերունդների հանդեպ։ Մեր հասարակությունը յուրաքանչյուր երիտասարդի համար ստեղծել է կրթության ու աշխատանքի, ըստ ամենայնի կատարելագործվելու ամենալայն հնարավորություններ։ Խնդիրն այն է, որ դրանք լիովին իրացվեն սպյծառ ապագայի է՛լ ավելի ակտիվ կառուցման նպատակով։

Ընկերնե՛ր։

Կենտկոմի պլենումը բոլոր կուսակցական կոմիտեներից պահանջեց ունենալ հատկապես պատրաստված կադրեր, որոնք ունակ լինեն հմտորեն կազմակերպել բնակչության տարբեր խմբերի՝ բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, երիտասարդության հետ տարվող գաղափարախոսական աշխատանքը և պատասխան տալ այդ աշխատանքի համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները սիստեմատիկաբար և խորապես ուսումնասիրում են գաղափարախոսական աշխատողների քաղաքական ու գործնական հատկությունները, գաղափարախոսական ճակատի վճռական տեղամասերն ամրապնդում տեսականորեն պատրաստված, գործունյա աշխատողներով։

Հանրապետության գաղափարախոսական կադրերի՝ կուսակցական աշխատողների, դասախոսների, պրոպագանդիստների գերակշիռ մեծամասնությունը, ինֆորմացիայի միջոցների ստեղծագործական կազմը բարձրագույն կրթությամբ մարդիկ են, որոնք մասնագիտական պատրաստություն են ստացել կուսակցական դպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում կամ անցել պատրաստման ու վերապատրաստման հատուկ դասընթացներ։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է մշտապես բարելավեն գաղափարախոսական կադրերի հետ տարվող աշխատանքը, մեր պրոպագանդիստների վարպետությունը համապատասխանեցնեն մարդկանց աճած կրթական ու կուլտուրական մակարդակին։ Հարկավոր է մշտապես ընդլայնել նրանց գաղափարաքաղաքական մտահորիզոնը և մեթոդաբանական զինվածությունը, պատվաստել վերլուծողի հատկություններ, նորի զգացողություն, միօրինակությունից խուսափելու հմտություն։ Այստեղ, ընկերներ, տեղին է հիշեցնել, որ պրոպագանդիստական աշխատանքը համարելով մասնագիտություն, Վ. Ի. Լենինը քննադատում էր նրանց, ովքեր «...այդ պրոֆեսիան սովորաբար չափից ավելի են համալրում սակավ ընդունակ մարդկանցով և դրանով իջեցնում են պրոպագանդայի մակարդակը»։ Նա սովորեցնում էր գտնել այնպիսի մարդկանց, որ նման աշխատանքի հակումներ և ներքին պահանջ ունեն, կոչ էր անում նման մարդկանց «մասնագիտացնել, ամբողջովին զբաղեցնել և խնամքով պահպանել»։

Գաղափարախոսական կադրերի ընտրության, պատրաստման ու դաստիարակության հարցերը մշտապես պետք է գտնվեն կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում։ Պետք է հասնել այն բանին, որ ամենուրեք գաղափարախոսության ոլորտում աշխատեն պատրաստված, քաջատեղյակ, հեղինակավոր, լայնորեն կրթված մարդիկ, անհրաժեշտ պայմաններ ստեղծել նրանց հաջող աշխատանքի համար, հոգ տանել նրանց որակավորման սիստեմատիկ բարձրացման մասին։ Նրանց գործունեության գնահատման չափանիշը պետք է լինի մասսաների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության մակարդակը։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց ապահովել հասարակական գիտությունների, նախ և առաջ տնտեսագիտության բնագավառում գաղափարատեսական աշխատանքի, մեր գիտական հիմնարկությունների և յուրաքանչյուր գիտնականի աշխատանքի զգալիորեն ավելի բարձր մակարդակ։ Դրվում է գիտական որոնումներն ակտիվացնելու, դեպի կյանքի կողմից մեր հասարակության առաջադրվող գործնական խնդիրները վճռական շրջադարձ կատարելու հարցը։

Հասարակական գիտությունների ուշադրության կենտրոնում պետք է լինի հասուն սոցիալիզմի պրոբլեմատիկան։ Պետք է բոլոր հասարակական գիտությունների ջանքերը կենտրոնացնել մեր մերձավոր և հեռանկարային նպատակների իրականացման մեթոդների ու միջոցների կոնստրուկտիվ մշակման վրա։ Կուսակցությունն ու պետությունը մեր հասարակագետներից սպասում են նաև քաղաքատնտեսության բնագավառի լուրջ հետազոտություններ, այնպիսի հրատապ հարցերին նվիրված ուսումնասիրություններ, ինչպիսիք են գիտատեխնիկական առաջընթացի խթանումը, պլանավորման ու կառավարման սիստեմի բարելավումը, համաժողովրդական, համապետական շահերի առաջնայնության ապահովումը, բաշխման հարաբերությունների կատարելագործումը, գնագոյացման գիտական սկզբունքները և շատ այլ հարցեր։

Սովետական Հայաստանի հասարակագետները զգալի հաջողությունների են հասել էկոնոմիկայի, պատմության, փիլիսոփայության, նյութական ու հո-



գևոր կուլտուրայի պրոբլեմների հետազոտման ասպարեզում։ Այդ բնագավառներում տարվող աշխատանքի բովանդակությունը հիմնականում համապատասխանում է կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների կողմից սովետական գիտության առջև դրված խնդիրներին։

Մասնավորապես ուշադրության են արժանի մատերիալիստական աշխարհայացքի տեսության, հասուն սոցիալիզմի հասարակության զարգացման օրինաչափությունների, գիտական իմացության մեթոդաբանության պրոբլեմներին նվիրված հետազոտությունները, որ կատարվում են հանրապետության գիտությունների ակադեմիայի ինստիտուտներում։ Իրականացվում են գիտատեխնիկական հեղաշրջման փիլիսոփայական, սոցիալական, տնտեսական, իրավական, գեղագիտական կողմերին, կուսակցության պատմության, սոցիալիստական պետության, մշակույթի, գրականության և արվեստի հարցերին նվիրված աշխատանքներ։

Պետք է նշել արդի պայմաններում հանրապետությունում տեղի ունեցող տնտեսական, սոցիալական, գաղափարախոսական պրոցեսների կառավարման կատարելագործման տեսական պրոբլեմների և կոնկրետ ուղիների ու միջոցների մշակումը մեր բուհական ամբիոնների կողմից։

Մեր տնտեսագետները վերջին ժամանակներս ուշադրությունը կենտրոնացրել են հանրապետության հանրային համախառն արտադրանքի և ազգային եկամտի ընդլայնված վերարտադրության, բնակչության զբաղվածության ռացիոնալ կառուցվածքի ձևավորման ուղիների որոշման, սոցիալիստական տնտեսավարության մեխանիզմի կատարելագործման հարցերի վրա, մասնակցել հանրապետության գիտատեխնիկական առաջընթացի կոմպլեքսային ծրագրի կազմմանը։

Պատշաճը մատուցելով կատարվածին, պետք է շեշտել, որ մեր տնտեսագետներն առայժմ անբավարար արդյունավետությամբ են մշակում ժողովրդական տնտեսության պլանավորման հետագա կատարելագործման, էկոնոմիկայի կառավարման տերիտորիալ և ճյուղային սկզբունքի ճիշտ զուգորդման, հանրային արտադրության ինտենսիվացման ներգործուն տնտեսական լծակների կիրառման, ռեսուրսախնայողական վերարտադրության ապահովման հարցերը, հանրապետության յուրահատկությունից ելնելով բնաօգտագործման ռացիոնալացման գիտական հիմունքները։

Երկրի պարենային ծրագրի իրականացման և հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետագա զարգացման շահերը տնտեսագիտությունից պահանջում են մշակել նաև գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ գյուղատնտեսական արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու, արդյունաբերական տեխնոլոգիայի ներդրումը, մասնագիտացման ու կենտրոնացման, միջտնտեսային ու ագրոարդյունաբերական ինտեգրացման պրոցեսն արագացնելու, տնտեսավարման սիստեմը, աշխատանքի կազմակերպումն ու վարձատրումը կատարելագործելու, կոլեկտիվ կապալը արմատավորելու վերաբերյալ և այլն։

Ըստ արժանվույն գնահատելով մեր պատմաբանների աշխատանքը «Հայ ժողովրդի պատմության» բազմահատորյակի ստեղծման, «Հայ ժողովրդի պատմության» քառահատոր ռուսերեն հրատարակության նախապատրաստման, հանրապետության՝ Հայրենական մեծ պատերազմի տարիների պատմությանը նվիրված հետազոտությունները հրատարակման պատրաստելու ասպարեզում և այլն, միաժամանակ պետք է ասենք, որ մեր ժողովրդի պատմության մի շարք ժամանակահատվածներ ու հարցեր պահանջում են ավելի սևեռուն ուշադրություն, խոր ուսումնասիրում։ Վերցնենք, օրինակ, XIX դարի վերջին, XX դարի սկզբին մեր ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի պատմությունը։ Կուսակցական դիրքերից, իմացության մարքս-լենինյան կոնցեպցիայի, դասակարգային մոտեցման, պատմականության հիման վրա նրա կոմպլեքսային, համապարփակ ուսումնասիրումն ու մշակումը, այնպիսի աշխատությունների ստեղծումը, որոնք բովանդակեին մեր գաղափարախոսական հակառակորդների կողմից չարաշահվող հարցերի պարզ ու հստակ պատասխանները, կարևոր խնդիր են, որին պետք է համատեղ ձեռնամուխ լինեն մեր

պատմաբանները։ Գիտությունների ակադեմիան և ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղը պարտավոր են անհրաժեշտ նախաձեռնություն հանդես բերել այստեղ։

Անհրաժեշտ է է՛լ ավելի ակտիվորեն ուսումնասիրել զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման, արդի փուլում ազգային հարաբերությունների զարգացման, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության ձևավորման ու զարգացման, սոցիալիստական ազգերի մերձեցման, ազգային մշակույթների փոխհարստացման պատմությունը։ Նման հետազոտությունները կօգնեն մեր մարդկանց դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով։

Հանրապետության փիլիսոփաների, սոցիոլոգների, իրավագետների և հոգեբանների համար հասուն սոցիալիզմի հասարակության զարգացման ու կատարելագործման օրինաչափությունների խոր ու համակողմանի հետազոտումը, նրա առաջընթացի ռեալ դինամիկայի բացահայտումը առանցքային խնդիր է։ Նոր հետազոտություններ են անհրաժեշտ մեր հասարակության անդասակարգային կառուցվածքի կազմավորման, սոցիալական ու կուլտուրական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսների, աշխատավորների հասարակական գիտակցության կազմավորման ու հետագա զարգացման պրոցեսների վերաբերյալ։

Պետք է ավելի գործնական բնույթ հաղորդել զարգացած սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղաշրջման և գիտատեխնիկական առաջընթացի տեսական ու սոցիալական պրոբլեմների հետազոտություններին։

Հարկավոր է ավելի հետևողականորեն զբաղվել հետազոտությունների պլանավորման, ոճի ու մեթոդների հարցերով, վերջ տալ սխոլաստիկ տեսաբանմանը, մանրաթեմայնությանը, խմբակային շահերով պարփակվելուն։ Սկզբունքային, անկողմնակալ քննադատության պետք է ենթարկվեն մատերիալիստական դիալեկտիկայի հիմնարար սկզբունքներից թույլ տրվող ամեն տեսակի նահանջները, ցածր գիտական մակարդակով կատարված հետազոտությունները։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել հետազոտությունների մեթոդաբանական կողմին, ուժերը առավել հրատապ հարցերի վրա կենտրոնացնելով, անհրաժեշտ է հմտորեն կիրառել գիտական որոնման մարքս-լենինյան փորձված մեթոդաբանությունը, հոգ տանել նրա աշխարհայացքային անաղարտության մասին։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քաղաքական լուսավորության, մասսայական-քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճի փոփոխումը համարեց կուսակցության գլխավոր խնդիրներից մեկը արդի պայմաններում տարվող գաղափարախոսական աշխատանքում։

ՍՄԿԿ-ն իր ամբողջ ստեղծարար գործունեությունը կառուցում է մարքսիզմ-լենինիզմի ամրակուռ հիմքի վրա։ Նրա մեծահարուստ գանձարանից են սովետական մարդիկ քաղում ոգու ուժ ու սոցիալական լավատեսություն, պատմական հեռանկարի ըմբռնում ու անխորտակելի հավատ կոմունիստական իդեալների հանդեպ։

Կուսակցությունը միշտ էլ հսկայական նշանակություն է տվել իր անդամների գաղափարատեսական պատրաստությանը։ Անփոփոխ խնդիր է գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը։

Կուսակցական ուսուցման սիստեմն այնքան ավելի լավ կկատարի իր դերը, որքան ավելի ակտիվորեն կատարելագործենք դրա ոճը, ձևն ու մեթոդիկան, որքան ավելի համարձակորեն ազատվենք ձևամոլությունից, տիրացուականությունից և քարացածությունից, պարապմունքների միօրինակ անցկացումից, որքան ավելի ճիշտ հաշվի առնենք ունկնդիրների յուրաքանչյուր կատեգորիայի առանձնահատկությունները։ Կուսակցական դեռ շատ կազմակեր-



պություններ, պրոպագանդիստներ պետք է հաստատակամորեն և հետևողականորեն վերակառուցեն իրենց աշխատանքը, հոգ տանեն ուսուցման արդյունավետությունն իսկապես բարձրացնելու մասին։ Հարկավոր է լրջորեն ձեռնամուխ լինել այն բանին, որ պարապմունքներն ամենուրեք անցնեն իրոք ակտիվորեն, շահագրգռությամբ։ Երևանի ժամացույցի գործարանի կուսակցական կազմակերպությունում, օրինակ, նոր կառուցվածքին համապատասխան կոմպլեկտավորվել են դպրոցներ ու սեմինարներ, դրանցում պարապմունքներն անցնում են կազմակերպված, առանց ձախողումների, վատ չի ունկընդիրների հաճախումը։ Բայց, միևնույն ժամանակ, ինչպես ցույց է տվել ուսումնասիրությունը, այստեղ պարապմունքների ժամանակ պրոպագանդիստները հաճախ ստանձնում են հռետորի, իսկ մասնակիցները՝ սոսկ պասսիվ ունկնդրի դեր։ Իսկ չէ՞ որ դա իջեցնում է ուսուցման արդյունավետությունը։

Կամ, հարց է ծագում, ի՞նչ օգուտ այն ուսուցումից, երբ պրոպագանդիստն ինքը զինված չէ ո՛չ գաղափարապես, ո՛չ մեթոդապես։ Այսպիսի պրոպագանդիստների են հանձնարարել պարապմունքների վարումը, օրինակ, Վարդենիսի, Մարտունու, Շամշադինի, Կրասնոսելսկի, Իջևանի և այլ շրջանների որոշ կուսկազմակերպություններ։

Առանձնակի ուշադրություն պետք է նվիրվի կուսակցության տնտեսական քաղաքականության ուսումնասիրմանը։ Պարապմունքները պետք է անցկացնել այնպես, որ դրանք նպաստեն ժողովրդատնտեսական արմատական խնդիրների կատարման համար ունկնդիրների ջանքերի ակտիվացմանը, ձևավորեն տնտեսական մտածողություն, որը նպատակամղված լինի նախաձեռնության ու սոցիալիստական ձեռներեցության զարգացմանը, տնտեսական առաջադիմությանը, ամեն բանում խնայողություն դաստիարակելուն, այն ուղիների ստեղծագործական որոնմանը, որոնք նվազագույն ծախսումներով տանում են դեպի բարձր վերջնական արդյունքներ։

Յուրաքանչյուր դպրոցում ու սեմինարում, յուրաքանչյուր լսարանում, մարքս-լենինյան տեսության ինչ հարց, ինչ դրույթ էլ որ ուսումնասիրվի, պետք է շաղկապվի կոմունիստական շինարարության կենդանի պրակտիկային, ժողովրդական տնտեսության զարգացման, կոլեկտիվների առջև կանգնած կոնկրետ խնդիրների, մարդու դաստիարակման, նրա աշխատանքային ու սոցիալական ակտիվության խթանման պրոբլեմների հետ։

Մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, այսօր, ինչպես երբեք, սերտորեն կապված է մեր պատմական նվաճումների, մեր կարգերի առավելությունների համոզիչ և հմուտ պրոպագանդման հետ։ Հարկավոր է ավելի խոր բացահայտել սոցիալիզմի այնպիսի հիմնարար արժույթների նշանակությունը, ինչպիսիք են կոլեկտիվիստական ոգին ու ընկերական փոխօգնությունը, իսկական ժողովրդապետությունն ու մարդասիրությունը, ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, հասարակության բարոյական առողջությունն ու վաղվա օրվա հանդեպ յուրաքանչյուր մարդու վստահությունը։ Կարճ ասած, քաղաքական ուսուցման ողջ իմաստը պետք է լինի այն, որ յուրաքանչյուրն ավելի խոր տիրապետի մարքս-լենինյան ուսմունքին, հասկանա կուսակցության քաղաքականությունն այսօրվա պայմաններում, կարողանա գործնականում կիրառել ստացած գիտելիքները, ավելի պարզորոշ պատկերացնի ու իրագործի իր հասարակական պարտքը։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը շեշտեց, որ ամբողջ դաստիարակչական և պրոպագանդիստական աշխատանքում պետք է մշտապես հաշվի առնել մարդկության ապրած պատմական ժամանակաշրջանի առանձնահատկությունները։

Պատերազմից հետո աննախադեպ սրվել է երկու աշխարհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի ու իմպերիալիզմի հակամարտությունը։ Տեղի է ունենում պայքար հանուն միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի։ Մարդկության ապագան զգալիորեն կախված է այդ գաղափարախոսա-

*կան պայքարի ելքից։ Այս կապակցությամբ առանձնապես կարևոր ու պատասխանատու խնդիրներ են առաջադրվում գաղափարախոսական ճակատի աշխատողներին, որոնց պարտքն է մեր երկրի խաղաղասիրական քաղաքականության, մեր արտաքին քաղաքական նախաձեռնությունների մասին ճշմարտությունը հատատակամորեն ու համոզիչ կերպով հասցնել արտասահմանյան հասարակայնության ամենալայն շրջաններին, վճռական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության ամեն մի տարատեսակի դեմ։*

*Դրա համար հարկավոր է հասնել արտասահմանյան լսարանին հասցեագրված ողջ պրոպագանդայի փաստարկվածությանն ու օպերատիվությանը, դրավչությանը, հրապարակախոսականությանն ու մատչելիությանը, ակտիվ հարձակողականությանը։*

*Մենք պետք է ավելի արդյունավետորեն, նպատակասլաց օգտագործենք արտաքին քաղաքական պրոպագանդայի բոլոր առկա հնարավորությունները։*

*Ուժեղացնելով մեր գործունեությունը գլխավոր ուղղություններում՝ սովետական կարգերի, սովետական ապրելակերպի, մեր երկրի ժողովուրդների բարեկամության նվաճումների ու առավելությունների հմուտ, համոզիչ ցուցադրման գործում, միևնույն ժամանակ անհրաժեշտ է ուժեղացնել հակապրոպագանդան, ժամանակին և օպերատիվ կերպով հակազդել իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիաներին, դրանց տալ փաստարկված և սուր հակահարված։ Մեր համապատասխան կազմակերպությունները պետք է վերակառուցեն և շեշտակի բարելավեն իրենց հակապրոպագանդիստական աշխատանքը, այն վարեն սիստեմավորված։ Անհրաժեշտ է ոչ միայն օպերատիվ կերպով հակահարված տալ իմպերիալիստական պրոպագանդային, այլև հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաների երկարաժամկետ նպատակների խոր վերլուծության հիման վրա մշակել դրանց մերկացման և վնասազերծման առավել գործուն ու արդյունավետ միջոցներ։*

*Առավել պետք է բարելավել սփյուռքահայության հետ տարվող աշխատանքը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հայտնի որոշումից հետո նկատելիորեն ակտիվացել է սփյուռքահայ քաղաքական ու հասարակական առաջադիմական կազմակերպությունների ու առանձին գործիչների հետ կապերի ընդլայնման ու ամրապնդման աշխատանքը, որոնք պաշտպանում են Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը, նպաստում ՍՍՀՄ-ի և մեր հանրապետության հաջողությունների պրոպագանդմանը, մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը սփյուռքահայերի հետագա համախմբմանը։*

*Մեծ նշանակություն տալով սփյուռքահայերի շրջանում կատարվող աշխատանքին, դրականորեն գնահատելով Սովետական Հայաստանի նկատմամբ նրանց գերակշիռ մեծամասնության հայրենասիրական տրամադրություններն ու զգացմունքները, Սովետական Միության նկատմամբ համակրանքն ու հարգանքը, միաժամանակ չպետք է մոռանալ, որ սփյուռքահայությունը սոցիալ-դասակարգային առումով միատարր չէ։ Այստեղ շարունակում են գործել մեր նկատմամբ թշնամական կազմակերպություններ, որոնք հանդես են գալիս իմպերիալիզմի գործակալների դերում։ Անհրաժեշտ է ակտիվորեն ու հետևողականորեն մերկացնել դաշնակցության հետադիմական նացիոնալիստական գաղափարախոսությունը և այդ կուսակցության պարագլուխների հակասովետական գործունեությունը, որը նրանք վերջին ժամանակներս ակտիվացրել են՝ առավել ռեակցիոն ուժերի հետ նույն սայլին լծված։*

*Սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեն, արտասահմանյան երկրների հետ մշակութային կապի հայկական ընկերությունը, մշակութային և այլ կապեր իրականացնող մյուս կազմակերպությունները պետք է մշտապես կատարելագործեն իրենց աշխատանքը, բարձրացնեն արդյունավետությունը, ավելի շատ հոդվածներ և այլ նյութեր ուղարկեն կուսակցության*



*և սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականության մասին։ Հարկավոր է բարելավել Մերձավոր և Միջին Արևելքի, Եվրոպայի և Ամերիկայի երկրների համար նախատեսված մեր ռադիոհաղորդումների որակը, միջոցներ ձեռնարկել դրանց տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։*

*Անհրաժեշտ է, որ արտասահմանյան կապերի իրականացմանն ու արտաքին քաղաքական պրոպագանդային ամենօրյա ուշադրություն նվիրեն ոչ միայն այդ նպատակին կոչված կազմակերպությունները, այլև գործին առնչվող կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները։ Առանձնակի պատասխանատվություն է ընկնում ՀԿԿ Կենտկոմի ինֆորմացիայի և արտասահմանյան կապերի բաժնի վրա, որը պետք է համապատասխան ուղղություն տա արտասահմանյան կապեր իրականացնող կազմակերպությունների գործունեությանը և կոորդինացնի այն։*

*Համառոտակի սրանք են, ընկերներ, մեր հանրապետական կուսակցական կազմակերպության գլխավոր խնդիրները, որոնք բխում են ընկեր Յու. Վ. Անդրոպովի ծրագրային ելույթից, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումից որոշումից։*

*Ամենակարևորը, որ մենք բոլորս պետք է հիշենք և իրականացնենք գործնական աշխատանքում, հետևյալն է՝ ոչ մի վառ միջոցառում, աչքի զարնող պրոպագանդա, տաղանդավոր արվեստ կամ դասավանդում չի կարող արդյունավետ լինել առանց գաղափարական խոր հագեցվածության, առանց այսօրվա կոնկրետ իրողությունների հետ կենդանի կապերի, առանց հետագա առաջընթացի ուղիների հետ սերտ շաղկապման։*

*Զարգացած սոցիալիզմի կատարելագործումը դիալեկտիկորեն շաղկապված է գլխավոր արտադրողական ուժի՝ մարդու կատարելագործման հետ։ Ուստի, մեր խնդիրն է առաջին պլան մղել և բարելավել գաղափարախոսական ու դաստիարակչական աշխատանքը, ջանքերը նպատակամղել մեր մարդկանց մտավոր ու պրոֆեսիոնալ հնարավորությունների զարգացմանը և համապատասխան պայմաններ ստեղծել այդ հիմնական ռեսուրսները ստեղծագործության վերածելու համար։*

*Մեր կուսակցական կազմակերպությունը պետք է կատարելագործի իր աշխատանքի ոճն ու մեթոդները և այն կառուցի այնպես, որ ապահովի աշխատավոր մասսաների, մեր հասարակության յուրաքանչյուր անդամի գիտակցականության և աշխատանքային ակտիվության մշտական բարձրացումը, հասնի այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավոր օժտված լինի բարձր պատասխանատվության զգացումով, լինի կրթված, ձգտի անընդհատ սովորել, բարձրացնել իր որակավորումը, աշխատել, կերտել, հայտնագործել և այդ բանն անել ավելի լավ, քան երբևէ։*

*Այս ամենը միասին վերցված կապահովի ինչպես մեր հասարակության, այնպես էլ անհատի առաջադիմությունը, կատարելագործումը։*

*Ընկերնե՛ր։*

*Անցել է տասնմեկերորդ հնգամյակի ուղիղ կեսը։ Չնայած նախորդ տարվա վերջի և այս տարվա սկզբի դժվարություններին, ապահովվել է դրա առաջին կեսի տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծումը։ Սակայն սխալ կլիներ, եթե չտեսնեինք նաև այդ աշխատանքներում գոյություն ունեցող թերությունները։ Այժմ մեր խնդիրն այն է, որպեսզի յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, կուսակցական, սովետական, տնտեսական մարմնում քննադատաբար վերլուծվեն կատարվածի արդյունքները, բացահայտվեն թերությունները և մշակվեն կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովվեն տըն-*

*տեսական ու սոցիալական զարգացման հնգամյա պլանների լրիվ կատարումը։*

*Մեզ սպասում է ինչպես ընթացիկ տարվա, այնպես էլ ամբողջությամբ վերցված հնգամյակի պլանների կատարման համար աշխատավորների հոգևոր եռանդի մոբիլիզացման, նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման մեծ ու լարված աշխատանք։ Կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների պարտքն է կազմակերպել ու գլխավորել այդ աշխատանքը, հասնել մեր առջև ծառացած խնդիրների լրիվ իրականացմանը։ Դրան պետք է ամենայն ակտիվությամբ նպաստի մեր կողմից տարվող բազմազան ու նպատակամղված գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։*

*Թույլ տվեք, ընկերներ, ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, նրա քաղբյուրոյին հավաստիացնել, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը կապահովի ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների նպատակասլաց ու գործարար իրականացումը, Սովետական Հայաստանի աշխատավորների, ողջ ժողովրդի ջանքերը կնպատակամղի երկրի էկոնոմիկայի ու մշակույթի հետագա վերելքին, նրա պաշտպանական հզորության ամրապնդմանը։*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍԻ 12-Ի ՊԼԵՆՈՒՄԻ

## ՈՐՈՇՈՒՄԸ

### ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումից ու պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ արտասանած ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին

Լսելով և քննարկելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի «ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումներից ու պլենումում ՍՄԿԿ Կետկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» զեկուցումը, Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը նշում է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումը սովետական հասարակության զարգացման կարևորագույն խնդիրների լուծման, կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ըստ ամենայնի բարելավման նկատմամբ ՍՄԿԿ-ի լենինյան մոտեցման վառ դրսևորումը եղավ:

Սովետական Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը մեծ ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի ութերորդ նստաշրջանի արդյունքները: Սերտորեն համախմբված Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի՝ ընկեր Յու. Վ. Անդրոպովի գլխավորած քաղբյուրոյի շուրջը, նրանք ամբողջովին հավանություն են տալիս և միաժամանակ պաշտպանում են կուսակցության ներքին և արտաքին իմաստուն քաղաքականությունը, արտադրության արդյունավետության բարձրացման, նրա ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի վերելքի, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման, սովետական ապրելակերպի հիմքերի ամրապնդման, խաղաղության պահպանման, ջերմամիջուկային պատերազմի կանխման կուսակցության կուրսը:

Հունիսյան պլենումի որոշման մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառում արծարծվեցին կոմունիստական շինարարության, դաստիարակչական աշխատանքի մակարդակի

հետագա բարձրացման գիտականորեն հիմնավորված խնդիրներ, որոնք նախատեսված են մոտակա ժամանակաշրջանի և ավելի հեռանկարի համար: Պլենումը մշակեց գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման ծավալուն ծրագիր՝ զարգացած սոցիալիզմի պահանջներին, կոմունիստական շինարարության ժամանակակից խնդիրներին լիովին համապատասխան:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը, կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները հետևողական աշխատանք են կատարում՝ բարելավելու դաստիարակության և պրոպագանդայի գործը:

ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումների իրականացման նպատակով մշակված կոմպլեքսային պլաններում տնտեսական և կուլտուրական շինարարության հիմնական հարցերը քննարկվում և լուծվում են կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական, քաղաքական և դաստիարակչական աշխատանքի խնդիրների հետ կոմպլեքսայնորեն:

Վերջին ժամանակաշրջանում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում երկու անգամ քննարկվել են հանրապետության կուսակցական կազմակերպության գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերը: ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քարտուղարությունը քննարկել են գաղափարախոսական աշխատանքի բազմազան հարցեր: «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից և ՍՄԿԿ XXVI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում քննարկվել են մի շարք քաղկոմների և շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների, ստեղծագործական միությունների և հիմնարկությունների գաղափարախոսական աշխատանքի պրակտիկան, ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական, բարոյական, աթեիստական դաստիարակության հետագա ուժեղացման խնդիրները:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերով սկսել են ավելի խոր և ավելի շոշափելիորեն զբաղվել կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները:

Հանրապետական կուսակցական կազմակերպությունը դրական փոփոխությունների է հասել գաղափարախոսական, քաղաքական-մասսայական գործունեության մի շարք բնագավառներում: Կատարելագործվել են դաստիարակչական պրոցեսի կուսակցական ղեկավարումն ու կազմակերպումը: Ավելի նպատակասլաց է դարձել հանրապետության առջև ծառացած տնտեսական ու սոցիալական զարգացման, կուլտուրական շինարարության խնդիրների գաղափարախոսական ապահովման, աշխատավորական կոլեկտիվներում, կենսագործունեության բոլոր ոլորտներում կարգապահության և կազմակերպվածության ամրապնդման, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացման ասպարեզում կատարվող աշխատանքը:

Մեծացել է ղեկավարների նկատմամբ պահանջկոտությունը ոչ միայն արտադրական պլանների և առաջադրանքների կատարման համար, այլև կոլեկտիվներում բարոյահոգեբանական մթնոլորտի համար, ընդունվող որոշումների, տնտեսական գործունեության սոցիալական, քաղաքական և դաստիարակչական հետևանքների համար:

Ավելի նպատակամետ է դառնում կոմունիստների, բոլոր աշխատավորների շրջանում գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի, գաղափարաքաղաքական վսեմ համոզմունքների և բարոյական հատկանիշների ձևավորման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման, սովետական ապրելակերպի նորմերի հաստատման աշխատանքը: Քաղաքական և տնտեսագիտական կրթության սիստեմի մեջ ընդգրկված են հարյուր հազարավոր մարդիկ: Գաղափարադաստիարակչական խնդիրների լուծման գործում ավելի ակտիվորեն իրենց ավանդն են ներդնում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները, գիտության և կուլտուրայի հաստատությունները:



Կուսակցական կազմակերպությունների կատարած գաղափարաքաղաքական աշխատանքը նպատակամղված է ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և 1982 թվականի նոյեմբերյան պլենումների որոշումների կենսագործմանը, տնտեսական և սոցիալական զարգացման խնդիրների հաջող լուծմանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը:

Հանրապետության արդյունաբերությունը գերակատարել է ապրանքային արտադրանքի արտադրության և իրացման ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանները: Անցած տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ դրանց ծավալների աճը կազմել է համապատասխանաբար 104,8 տոկոս և 105,5 տոկոս: Հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները բնակլիմայական դժվարին պայմաններում ապահովեցին պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը: Պետությանը մսի վաճառքի պլանը 1983 թվականի առաջին կիսամյակում կատարվել է 111,4 տոկոսով, կաթինը՝ 104,7, ձվինը՝ 115,1, բրդինը՝ 124,8 տոկոսով: Կատարվել է բնակելի տների ընդհանուր տարածության գործարկման կիսամյակի պլանը:

Դրա հետ մեկտեղ, հանգամանորեն և խստապահանջ կերպով վերլուծելով հանրապետական կուսակցական կազմակերպության գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի պահանջների լույսի ներքո, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը գտնում է, որ գործունեության այս կարևոր ոլորտում եղած թերացումները և թերությունները դեռևս դանդաղ են հաղթահարվում:

Հանրապետության ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսակցական կազմակերպություններն են, որ պատշաճ ուշադրություն են դարձնում գաղափարախոսական աշխատանքին, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերին և հասել են գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական և տնտեսական գործունեության սերտ միասնության ապահովման: Ամենուրեք չէ, որ արդյունավետ աշխատանք է կատարվում աշխատողների մարքս-լենինյան կրթության և տնտեսագիտական ուսուցման ասպարեզում: Կուսակցության մի շարք քաղաքային և շրջանային կոմիտեներ մոտիկից չեն զբաղվում բանավոր ու տպագիր պրոպագանդայի գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացման, բովանդակության, ձևերի ու մեթոդների կատարելագործման, մասսայական ինֆորմացիայի միջոցների արդյունավետ օգտագործման, գաղափարախոսական կադրերի պատրաստման գործի բարելավման հարցերով: Գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակությունն ու ձևերը միշտ չէ, որ համապատասխանում են աշխատավորների աճած հանրակրթական և կուլտուրական մակարդակին, նրանց պահանջմունքներին, բավարար չափով հաշվի չի առնվում մեր արդի հասարակության հոգևոր կյանքում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական պրոցեսների դինամիզմը:

Մի շարք կուսակցական կազմակերպություններում քիչ ուշադրություն է նվիրվում արտադրության, հասարակական գործերի կառավարման մեջ աշխատավորների լայն ներգրավմանը, քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը, աշխատավորական կոլեկտիվի դաստիարակչական դերի բարձրացմանը: Դեռևս թույլ է օգտագործվում սոցիալիստական մրցության դաստիարակչական պոտենցիալը: Ոչ բավարար ակտիվությամբ է կատարվում առաջավոր փորձի տարածման և ներդրման մասսայական-քաղաքական աշխատանքը:

Հարկավոր է այսօրվա պահանջների մակարդակին բարձրացնել բարոյական դաստիարակության աշխատանքը, ավելի ակտիվ, հետևողական ու նպատակասլաց պայքար մղել կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ: Ամենուրեք չէ, որ սիստեմատիկ քաղաքական-դաստիարակչական աշխատանք է տարվում ըստ բնակության վայրի, այդ գործում թույլ

են օգտագործվում տեղական սովետների, արհմիությունների և կոմերիտմիության ուժերը:

Կուսակցության աճած պահանջներին լրիվ չափով չի համապատասխանում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների գործունեությունը:

Հարկավոր է հասարակական գիտությունների բնագավառում կատարվող հետազոտական աշխատանքների թեմատիկան առավելագույնս մոտեցնել զարգացած սոցիալիզմի հասարակության արդի խնդիրներին:

Անհրաժեշտ է առավել ակտիվ օգտագործել գրականության և արվեստի հնարավորությունները աշխատավորների գաղափարաբարոյական դաստիարակության գործում, բարելավել կուլտուրայի հաստատությունների գործունեությունը, հատկապես գյուղում:

Կատարելագործման կարիք ունեն արտաքին քաղաքական պրոպագանդայի և հակապրոպագանդայի ասպարեզում կատարվող աշխատանքը, քաղաքական հրապարակախոսության դրվածքը: Կուսակցական կոմիտեների, համապատասխան գաղափարախոսական գերատեսչությունների և հիմնարկությունների հակապրոպագանդիստական գործունեության մեջ առկա թերությունների վերացումը հրատապ խնդիր է:

Անհրաժեշտ է գաղափարախոսական կադրերի պատրաստման գործը բարձրացնել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջների մակարդակին:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը որոշում է.

1. Ամբողջովին և լիովին հավանություն տալ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի «Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը» որոշմանը, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ճառի բովանդակած ծրագրային դրույթներին ու հետևություններին և դրանք ընդունել ի ղեկավարումն և անշեղ կատարումն:

Հանրապետական կուսակցական կազմակերպության կարևորագույն խընդիրներից մեկը համարել գաղափարախոսական գործունեության հետագա կատարելագործումը, դրա արդյունավետության բարձրացումը:

Անհրաժեշտ է գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական աշխատանքը վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խընդիրների մակարդակին, որ կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում: Մասսայական-քաղաքական աշխատանքը ի սպաս դնել կուսակցության և ժողովրդի միասնության հետագա ամրապնդմանը, աշխատավորների կոմունիստական համոզվածության, քաղաքական ակտիվության բարձրացմանը, նրանց ստեղծագործական եռանդի զարգացմանը:

Պետք է հաստատակամորեն հասնել այն բանին, որ բանվոր դասակարգի հեղափոխական գաղափարախոսությունն ու բարոյականությունը, նրա կոլեկտիվիստական հոգեբանությունը, շահերն ու հայացքները բնորոշ լինեն բոլոր սովետական մարդկանց հոգևոր կերպարի համար: Անհրաժեշտ է գաղափարադաստիարակչական աշխատանքը հետևողականորեն խարսխել գիտական հիմքի, կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության ամրակուռ հիմքի վրա, այն հագեցնել այսօրվա կյանքի իրողությունների հետ սերտորեն կապված հետագա առաջընթացի ուղին ցույց տվող խոր գաղափարներով:

Հանրապետության կոմունիստների և բոլոր քաղաքացիների գիտակցության ձևավորումը ամբողջ կուսակցական կազմակերպության գործն է:

2. Հաստատել գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի բարելավման մասին ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների իրականացման՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-պրոպագանդիստական միջոցառումների պլանը:

3. Հայաստանի կոմկուսի քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները, գաղափարախոսական հաստատությունները պետք



է մշակեն և իրականացնեն կոնկրետ միջոցներ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի առաջադրած խնդիրների կատարման նպատակով:

Առաջնահերթ խնդիր է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների ու նյութերի, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառի պարզաբանումն ու խոր ուսումնասիրումը, դրանց կենսագործման ապահովումը:

4. Հայաստանի կոմկուսի քաղկոմներն ու շրջկոմները պետք է.

— մշտապես կատարելագործեն աշխատանքի ոճը, ապահովեն գաղափարախոսական, կազմակերպական-կուսակցական, սոցիալ-տնտեսական գործունեության միասնությունը.

— պրոպագանդայի և ագիտացիայի միջոցներով ըստ ամենայնի նպաստեն ժողովրդատնտեսական արմատական պրոբլեմների լուծմանը.

— բարելավեն գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ղեկավարումը: Բոլոր կուսակցական կոմիտեները, նրանց առաջին քարտուղարները պետք է խորամուխ լինեն դրա վիճակին, ձգտեն հասնել քաղաքական, աշխատանքային, բարոյական դաստիարակության սերտ միասնության, գաղափարական ներգործության միջոցների կոորդինացման բարելավման, սիստեմատիկաբար տարածեն աշխատանքի լավագույն փորձը, լայնորեն օգտագործելով գաղափարախոսական հանձնաժողովների հնարավորությունները, վճռականորեն պայքարեն միօրինակության, ձևամոլության, գաղափարադաստիարակչական աշխատանքում զուտ քանակական ցուցանիշներով տարվելու դեմ.

— մասսայական-քաղաքական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրեն աշխատավորական կոլեկտիվներ, ըստ ամենայնի բարձրացնեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքում.

— բարելավեն ըստ բնակության վայրի տարվող աշխատանքը.

— միջոցներ ձեռնարկեն բարելավելու մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ-ի պատմական փորձի պրոպագանդումը: Կուսակցական ուսուցման, կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմում ապահովեն Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ-ի պատմության, ՍՄԿԿ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների փաստաթղթերի խոր ուսումնասիրումը: Կատարելագործեն կուսակցական լուսավորության, մասսայական-քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճը, ըստ ամենայնի զարգացնեն պարապմունքների ակտիվ ձևերը, դրանց հաղորդեն ավելի շատ գործնական ուղղվածություն այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր ոք խորապես հասկանա կուսակցության քաղաքականությունը, կարողանա գործնականում կիրառել ստացած գիտելիքները: Լայնորեն օգտագործեն կոմունիստների քաղաքական ինքնակրթության մեթոդը: Հատուկ ուշադրություն նվիրեն ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման բարելավմանը.

— տնտեսագիտական ուսուցումը, պրոպագանդան և դաստիարակությունն ամբողջովին ենթարկեն ժողովրդական տնտեսության ինտենսիվացման պահանջներին, ժամանակակից տնտեսագիտական մտածողության մշակմանը: Տնտեսագիտական ուսուցումը դիտեն որպես արտադրության արդյունավետության բարձրացման միջոցներից մեկը.

— ժողովրդական դեպուտատների սովետների, արհմիությունների և կոմերիտմիության հետ համատեղ մասսաների քաղաքական ու տնտեսագիտական լուսավորությունը զուգակցեն հասարակական-պետական գործերում, վերահսկողության կազմակերպման մեջ նրանց ակտիվորեն ներգրավելու հետ: Հատուկ ուշադրություն նվիրեն գաղափարադաստիարակչական գործունեության արդյունավետ ձևերի մշակմանն ու ներդրմանը ագրոարդյունաբերական միավորումների, արտադրական բրիգադների պայմաններում.

— լայնորեն ծավալեն գիտատեխնիկական, գյուղատնտեսական, աթեիստական, իրավական գիտելիքների պրոպագանդան, այդ նպատակով օգտագործելով ժողովրդական համալսարանները, դասախոսական պրոպա-

գանդայի և մասսայական պրոպագանդայի մյուս ձևերը, հաստատակամորեն արմատավորեն սովետական ծիսակատարությունները.

— լայնորեն, նպատակասլաց և օրգանական միասնությամբ կազմակերպեն հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը, կուսակցական սկզբունքայնության և անհանդուրժողականության դիրքերից հանդես գան ազգային սահմանափակվածության կամ ազգային նիհիլիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ, խնամքով և զգայուն վերաբերվեն բոլոր ազգությունների ներկայացուցիչների զգացմունքներին ու արժանապատվությանը.

— բարելավեն պրոպագանդիստների, ագիտատորների, քաղինֆորմատորների, արտահաստիքային դասախոսների, զեկուցողների և գաղափարախոսական մյուս աշխատողների ընտրությունը և ուսուցումը: Հասնեն կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողների, արտադրության առաջավորների, մասնագետների, գիտության, գրականության և արվեստի գործիչների բոլոր կոմունիստների առավել ակտիվ մասնակցությանը գաղափարադաստիարակչական աշխատանքին:

5. Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, հանրապետության բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության մինիստրությունը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղը պետք է ապահովեն մարքս-լենինյան տեսության հրատապ պրոբլեմների, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի հանձնարարած գաղափարախոսական աշխատանքի հարցերի մշակման հետագա բարելավումը: Գիտական կոլեկտիվների ուշադրությունը կենտրոնացնել հասուն սոցիալիստական հասարակության զարգացման միտումների հետ կապված պրոբլեմների հետազոտման վրա: Ակտիվացնել գիտական պրպըտումները, ապահովել գիտական հաստատությունների, բոլոր հասարակագետ գիտնականների և հատկապես տնտեսագետների վճռական շրջադարձը դեպի մեր հասարակության զարգացման հանգուցային գործնական խնդիրները: Ընդլայնել դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բնագավառի գիտական հետազոտությունները, մշակել այդ աշխատանքի հետագա բարձրացման հանձնարարականներ:

Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, հանրապետության բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության, լուսավորության մինիստրությունները, պրոֆտեխնիկական կրթության պետական կոմիտեն, բուհերի կուսակցական կոմիտեներն ու ռեկտորատները պետք է ապահովեն ուսումնական հաստատություններում հասարակագիտական առարկաների դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացումը, ըստ ամենայնի զարգացնեն հետաքրքրությունը դրանց ուսումնասիրման նկատմամբ, ուժեղացնեն հասարակագետ դասախոսների պատրաստման որակի վերահսկումը:

6. Հանրապետության թերթերի ու հանդեսների խմբագրությունները, հեռուստառադիոպետկոմը, Արմենպրես պետինֆորմացիոն գործակալությունը պետք է հասնեն մասսայական ինֆորմացիայի միջոցների դաստիարակչական ու կազմակերպիչ դերի հետագա բարձրացման: Պետք է համակողմանիորեն և խորապես լուսաբանել հանրապետության աշխատավորների կյանքը, սոցիալ-տնտեսական զարգացման և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում սովետական ժողովրդի հաջողությունները:

Կուսակցական կոմիտեները պետք է գործարար կերպով ուղղություն տան մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների աշխատանքին, բարձրացնեն դրանց մարտունակությունն ու հեղինակությունը, հատուկ ուշադրություն նվիրեն ժուռնալիստական կադրերի որակավորման բարձրացմանը:

7. Հայկական ՍՍՀ հրատպետկոմը պետք է գործուն միջոցներ ձեռնարկի հրապարակվող գրականության գաղափարաքաղաքական, գիտական, գեղարվեստական, ինչպես նաև պոլիգրաֆիական մակարդակը բարձրացնելու համար:



8. Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությունը, պետկինոն, հեռուստառադիոպետկոմը, հրատպետկոմը, հանրապետության ստեղծագործական միություններն ու հիմնարկները, նրանց կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես հոգ տանեն գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, թատրոնի և կինոյի գործիչների, ժուռնալիստների մեջ բարձր գաղափարայնություն, քաղաքացիականություն դաստիարակելու, նրանց ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու նկատմամբ: Տաղանդի նկատմամբ հոգատար, հարգալից վերաբերմունքը օրգանապես զուգակցեն բարձր սկզբունքայնության և պահանջկոտության հետ: Բարձրացնեն գեղարվեստական ստեղծագործության վրա ներգործելու գլխավոր մեթոդի՝ մարքս-լենինյան քննադատության մակարդակը: Ջգտեն հասնելու գրականության և արվեստի հետագա արգասավոր զարգացման, գեղարվեստական ստեղծագործության մեջ սոցիալիստական ռեալիզմի արվեստի լենինյան հիմնարար սկզբունքների՝ կուսակցականության, դասակարգայնության, ժողովրդայնության հետևողական իրականացման:

Մշտապես ուշադրություն նվիրեն ստեղծագործական ինքնագործունեության զարգացմանը, մշակույթի արժույթներին մասսաների հաղորդակցմանը:

9. ՀԱՄԽ-ը պետք է արհմիութենական կոմիտեների ուշադրությունն ուղղի կոլեկտիվներում ծավալվող դաստիարակչական և կուլտուր-մասսայական աշխատանքի որակի բարձրացմանը: Անհրաժեշտ է բարձրացնել սոցիալիստական մրցության արդյունավետությունը, կատարելագործել նրա ձևերը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, վճռականորեն հասնել կարգապահության ամրապնդմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կասեցնել աշխատանքային օրենսդրության ամեն տեսակ խախտումները, աշխատավորների շահերն անտեսելու փաստերը, ավելի արդյունավետորեն զբաղվել սոցիալ-կենցաղային հարցերով: Ձեռնարկությունների ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների հետ համատեղ հասնել աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման՝ սոցիալ-տնտեսական և գաղափարադաստիարակչական խնդիրների լուծման գործում:

10. ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության կոմիտեները պետք է գաղափարական ազդեցության ոլորտում ընդգրկեն երիտասարդության բոլոր խմբերը, կատարելագործեն երիտասարդությանը կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթներով դաստիարակելու գործը: Երիտասարդությանը լայնորեն ներգրավեն հասարակական-քաղաքական գործունեության մեջ, նրան դաստիարակեն կոմունիստական իդեալներին նվիրվածության ոգով, զարգացնեն ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, իր երկրի համար հպարտության զգացումը, սովետական ժողովրդի հեղափոխական նվաճումները պաշտպանելու պատրաստակամությունը, սեր ներարկեն ՍՍՀՄ զինված ուժերի նկատմամբ:

11. Հանրապետության լուսավորության, բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության, կուլտուրայի մինիստրությունները, Հայկական ՍՍՀ պրոֆտեխկրթության պետական կոմիտեն պետք է ապահովեն ուսումնական և դաստիարակչական պրոցեսների օրգանական միասնությունը, աշակերտների գիտական աշխարհայացքի, բարոյաքաղաքական բարձր հատկանիշների ձևավորումը:

12. ՀԱՄԽ-ը, Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրությունը, ՀԼԿԵՄ Կենտկոմը պետք է միջոցներ մշակեն և իրականացնեն կուլտուր-լուսավորական հիմնարկությունների գործունեության հետագա բարելավման նպատակով, հատկապես գյուղում, բարձրացնեն նրանց դերը աշխատավորների ժամանցը կազմակերպելու գործում: Հարկավոր է հասնել այն բանին, որպեսզի

դրանք դառնան մշակույթի իսկական օջախներ, կոմունիստական դաստիարակության կենտրոններ:

13. Կուսակցական կոմիտեների, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների, գաղափարախոսական բոլոր հիմնարկությունների կարևորագույն խնդիրը համարել հակապրոպագանդիստական գործունեության ուժեղացումը: Ակտիվ հակահարված հասցնել հակասովետիզմին և հակակոմունիզմին: Հետևողականորեն բացահայտել իմպերիալիզմի, նրա քաղաքականության և գաղափարախոսության հետադիմական, հակաժողովրդական էությունը: Վճռականորեն մերկացնել դաշնակցության նացիոնալիստական գաղափարախոսությունը, նրա պարագլուխների հակասովետական, արկածախնդրական գործունեությունը: Մշտապես զարգացնել սովետական մարդկանց քաղաքական զգոնությունը, նրանց անհաշտվողականությունը թշնամական հայացքների նկատմամբ, դասակարգային հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաներին, ռեալ սոցիալիզմի դեմ ձեռնարկվող օպորտունիստական և ռևիզիոնիստական հարձակումներին հակազդելու հմտությունը:

14. Կուսակցական կոմիտեները պետք է ուժեղացնեն գաղափարախոսական կադրերի հետ տարվող աշխատանքը: Հարկավոր է անհրաժեշտ պայմաններ ստեղծել նրանց ակտիվ գործունեության համար, մշտապես հոգ տանել նրանց գաղափարատեսական մակարդակը, խորագիտակությունը և պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու մասին: Միջոցներ իրականացնել կատարելագործելու գաղափարախոսական աշխատողների բոլոր կատեգորիաների պատրաստման և վերապատրաստման սիստեմը:

Յուրաքանչյուր գաղափարախոսական աշխատող պետք է կոմունիստական գաղափարայնության, իր աշխատանքի հանդեպ պահանջկոտության, հանձնարարված գործի համար պատասխանատվության օրինակ լինի:

15. Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստրությունը պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկի բարձրացնելու բուժսպասարկման ողջ գործի որակը, շեշտը դնելով ողջ բնակչության ամենամյա դիսպանսերացում արմատավորելու միջոցով հիվանդությունների կանխարգելման վրա:

16. ՀԱՄԽ-ը, ՀԼԿԵՄ Կենտկոմը, Հայկական ՍՍՀ բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթության, լուսավորության մինիստրությունները, պրոֆտեխկրթության պետկոմիտեն, սպորտկոմիտեն պետք է միջոցներ մշակեն մասսայական ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի հետագա բարելավման նպատակով:

Հարկավոր է յուրաքանչյուր շրջանում տարածել կուլտուր-մարզական համալիրներ ստեղծելու փորձը, դրանք ենթարկելով տեղական սովետներին՝ անկախ գերատեսչական պատկանելությունից:

***

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ ողջ հանրապետության կոմունիստները, աշխատավորներն իրենց ուժերը, գիտելիքներն ու եռանդը կներդնեն ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների նպատակասլաց և գործարար կատարման ասպարեզում՝ հանուն սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման, սոցիալիստական հայրենիքի հզորության ամրապնդման կոմունիստական կուսակցության կանխագծումների իրականացման պայքարում:



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿԸ

**Վ. Մ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ,
Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովի նախագահ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ և սովետական պետության ուշադրության կենտրոնում եղել և մնում է հոգատարությունը՝ անհատի համակողմանի զարգացման առավել բարենպաստ պայմաններ ստեղծելու նկատմամբ: ՍՄԿԿ XXVI համագումարը, առաջադրելով սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման լայն ծրագիր, առաջին պլան մղեց բնակչությանը սննդամթերքներ մատակարարելու գործի բարելավման խնդիրը, որի լուծման համար մշակվել է մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի երկրի պարենային ծրագիրը: Դա կուսակցության ընթացիկ տասնամյակի տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է:*

*Պարենային ծրագրի իրականացման հիմնական ուղղություններն են՝*

*ագրոարդյունաբերական կոմպլեքսի հաշվեկշռված զարգացումը, դրա բոլոր ճյուղերում կառավարման, պլանավորման և տնտեսական խթանման կատարելագործումը.*

*գյուղատնտեսական արտադրության արագ տեմպերի ապահովումը հետևողական ինտենսիվացման, հողի բարձրարդյունավետ օգտագործման, նյութատեխնիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդման, գիտության ու առաջավոր փորձի նվաճումների առավել արագ ներդրման հիման վրա.*

*ագրոարդյունաբերական կոմպլեքսի արտադրատեխնիկական պոտենցիալի օգտագործման ըստ ամենայնի բարելավումը, կապիտալ ներդրումների և նյութական ռեսուրսների հատույցի զգալի բարձրացումը, արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման զարգացումը՝ միջտնտեսային և միջճյուղային կապերի ընդլայնման հիման վրա.*

*խնայողության ու տնտեսման, գյուղատնտեսական արտադրանքի կորուստների նվազման և որակի բարձրացման համար մղվող պայքարը՝ մթերքների արտադրության, վերամշակման ու պահպանման առաջավոր տեխնոլոգիաների լայն ներդրման, մասնագիտացված տրանսպորտով փոխադրումների կազմակերպման միջոցով.*

*գյուղում կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների հետագա բարելավումը:*

*Երկրի պարենային ծրագիրը բազմակողմանի մշակվել է, նրա հիմնական*

ուղղություններն ու իրագործման սկզբունքները սահմանվել են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և հաջորդ պլենումներում։

ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հունիսյան և հոկտեմբերյան, 1983 թ. հուլիսյան պլենումներում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումներում խորապես վերլուծված են մեր հանրապետության պարենային ծրագրի բովանդակությունը և կենսագործման կոնկրետ միջոցները։

Հանրապետության գյուղատնտեսության աշխատողները պարենային ծրագրի իրականացման առաջին քայլերը կատարում են կլիմայական դժվարին պայմաններում։ Կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ նրանք բնության քմահաճույքներին հակադրում են իրենց համառ կամքն ու ստեղծագործ աշխատանքը։ Հետևողականորեն ներդնելով առաջավոր փորձը և գիտության նվաճումները, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողները հնգամյակի երկու տարում ապահովեցին գյուղատնտեսության համախառն արտադրանքի ավելի քան 11 տոկոս աճ՝ հնգամյա պլանով նախատեսված 3,9 տոկոսի փոխարեն։

Երկրագործության կուլտուրայի բարձրացման և նախատեսված ագրոտեխնիկական միջոցառումների իրականացման հիման վրա նկատելիորեն աճել է բերքատվությունը, հնարավորություն ընձեռելով ապահովել բուսաբուծության համախառն արտադրանքի ավելացումը և հաջողությամբ կատարել գյուղատնտեսական կուլտուրաների մեծ մասի պետվաճառքի պլանները։ Գերակատարված են հացահատիկի, շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի, խաղողի և բանջարեղենի, մյուս մթերքների պետվաճառքի առաջադրանքները։ Պլանից ավելի պետությանն է վաճառվել 37 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 36 հազար տոննա կարտոֆիլ, 28 հազար տոննա բանջարեղեն, 22 հազար տոննա խաղող, 7 հազար տոննա հացահատիկ, 5 հազար տոննա պտուղ։ Մթերքների մեծ մասի մթերումների ծավալը գերազանցել է նախորդ տարվա մակարդակը։

Լավ ցուցանիշների հասան նաև հանրապետության անասնապահները։ Կոլեկտիվ և պետական տնտեսություններում 1981 թ. համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացավ 7 հազար, միսը՝ 16 հազար տոննայով, ձվինը՝ 19 միլիոն հատով։ Կովերի կաթնատվությունն աճեց 34 կիլոգրամով և հանրապետությունում առաջին անգամ կազմեց 2.087 կգ։ Ավելացել է անասունների և թռչունների գլխաքանակը, կրճատվել են անկումները և դուրսգրումները։ Անասնապահական մթերքների արտադրության ավելացման նպատակով կատարված աշխատանքը հնարավորություն ընձեռեց հաջողությամբ կատարելու նաև դրանց պետվաճառքի առաջադրանքները։ Կաթի և բրդի պետվաճառքի պլանները կատարված են շուրջ 108 տոկոսով, ձվինը՝ 105,8 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ պետությանը ավելի է վաճառվել 3,6 հազ. տոննա կաթ, 1,9 հազար տոննա միս, 16 միլիոն հատ ձու։ Գերակատարվել են նաև խոտի կուտակման, սենաժի և սիլոսի պատրաստման առաջադրանքները։

Գյուղատնտեսության ասպարեզում հանրապետության հաջողությունները ՀԿԿ Կենտկոմի քաղաքական և կազմակերպական մեծ աշխատանքի, կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների արդյունավետ գործունեության, դաշտերի ու ֆերմաների մշակների անձնվեր աշխատանքի արդյունք են։

Անցած տարվա հաջողությունները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները հողագործության և անասնապահության արտադրանքն ավելացնելու քիչ ռեզերվներ չունեն և դրանց խելացի օգտագործումը, գյուղատնտեսական արտադրության հետևողական ինտենսիվացումը ճյուղի դինամիկ զարգացման հիմնական ուղիներն են։

Չնայած նշված հաջողություններին, սխալ կլիներ անտեսել հանրապետության գյուղատնտեսության զարգացման ասպարեզում առկա թերություններն ու բացթողումները։ Մի շարք շրջաններ, բազմաթիվ տնտեսություններ սիստեմատիկաբար թերակատարում են գյուղատնտեսական արտադրանքի մթերումների պլանները, քողարկվելով հանրապետության ընդհանուր ցուցանիշների ետևում։ Այսպես, բանջարեղենի պետվաճառքի առաջադրանքները



խիստ կերպով թերակատարել են Ապարանի, Գորիսի, Արթիկի, Սիսիանի, Ղափանի շրջանները։ Պտուղների մթերումների պլանների կատարումը ձախողել են 13 շրջաններ, պետությանը պակաս հանձնելով շուրջ 10 հազար տոննա պտուղ։ Թերակատարումը մեծ չափերի է հասել Սիսիանի, Գուգարքի, Գորիսի, Թալինի, Նաիրիի շրջաններում։

Բոստանային կուլտուրաների արտադրության ու վաճառքի ասպարեզում թերացել են Արարատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի և Արտաշատի շրջանները։ Դրա հետևանքով 71 հազար տոննա պլանային առաջադրանքի փոխարեն պետությանը վաճառվել է 31 հազար տոննա։ Մի շարք շրջաններ թերակատարել են խաղողի և ծխախոտի պետվաճառքի առաջադրանքները։

Հանրապետության առանձին շրջաններում անբավարար են կիրառվում անասնապահության զարգացման նպատակով մշակված կազմակերպական, տնտեսական միջոցառումները։ Վերջին տարիներին առաջին անգամ հանրապետությունը չկատարեց մսի մթերումների տարեկան պլանը։ Այդ գործում հատկապես թերացան Թալինի, Անիի, Արթիկի, Իջևանի, Շամշադինի, Ապարանի, Նոյեմբերյանի և մի քանի այլ շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք պետությանը պակաս հանձնեցին 3.278 տոննա միս, այն դեպքում, երբ ամբողջությամբ վերցրած հանրապետության պլանը թերակատարվեց 2.734 տոննայով։

1982 թվականին լուրջ թերություններ բացահայտվեցին «Հայթռչնարդի» վարչության ձեռնարկություններում։ Վարչությունը անցյալ տարի մսի պետվաճառքի պլանը թերակատարեց 2.213 տոննայով, հավերի ձվատվությունը կազմեց ընդամենը 164 հատ։ Բրոյլերների միջին կենդանի քաշը 1982 թ. եղել է 989 գ։ Թռչունների անկումը հասել է 33,3 տոկոսի, իսկ կերերի գերածախսը՝ 20 հազար տոննայի։

ՀԿԿ Կենտկոմը և Մինիստրների խորհուրդը վճռական միջոցների դիմեցին։ Ամրապնդվեց վարչության ղեկավարությունը, իրականացվեցին կազմակերպական, տեխնիկական և արտադրական անհրաժեշտ ձեռնարկումներ, բարելավվեց վարչության կոլեկտիվներում տարվող գաղափարախոսական, քաղաքական և դաստիարակչական աշխատանքը։ Բնական է, որ արդյունքները երկար սպասեցնել չտվեցին։ Արդեն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում թռչնաբույծները նվաճել են բարձր բնագծեր։ Վաճառվել է 136,9 միլիոն ձու, պլանային առաջադրանքից 16,3 միլիոնով ավելի։ Ըստ որում, անցած տարվա նույն ժամանակաշրջանի մակարդակը գերազանցվեց 19,2 միլիոնով։ Վեց ամիսների ընթացքում թռչնի մսի վաճառքը կազմել է 8.772 տոննա, 57 տոննայով ավելի նախատեսվածից։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ թռչնի մսի վաճառքը ավելացել է մոտ 1.600 տոննայով։ Մրցության առաջավորներն են Էջմիածնի ու Բարձրաշենի ձեռնարկությունները, որոնք գերակատարել են թե՛ ձվի և թե մսի արտադրության պլանները։ Ձվի արտադրության առավել բարձր ցուցանիշների են հասել Լուսակերտի, Գետամեջի, մսի գծով՝ Երևանի, Սյունիքի, Ստեփանավանի, Ջրառատի և Նոր Խարբերդի թռչնաֆաբրիկաները։

Մենք մսի զգալի ռեսուրսներ ենք կորցնում կոլտնտեսականներից, բանվորներից ու ծառայողներից անասունների գնումը վատ կազմակերպելու պատճառով։ Բավական է նշել, որ անցյալ տարի չկատարվեց այդ սեկտորի համար առաջադրված պլանը, ընդ որում, վեց հազար տոննա միս բնակչությունից պակաս գնվեց, քան նախորդ տարում։ Այդ կարևոր գործն անբավարար է կազմակերպված մասնավորապես Անիի, Կալինինոյի, Ստեփանավանի, Ապարանի, Արթիկի, Շամշադինի, Ղուկասյանի շրջաններում, որտեղ տարեկան պլանը կատարված է հազիվ 31—47 տոկոսով։ Աշխատանքի այս բնագավառում Արտաշատի շրջանում կուտակված փորձը վերջերս քննարկվեց մեր հանձնաժողովի նիստում։ Նշվեց, որ անցած տարվա ընթացքում շրջանի բանվոր-ծառայողների ընտանիքների անձնական օժանդակ տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 986-ով, այդ թվում կովերինը՝ 477-ով։ 1.185-ով ավելացել է խոզերի գլխաքանակը։ 106 ընտանիքների տրվել է տնամերձ հողամաս։ Տնտեսություններն օգնում են քա-

ղաքացիներին՝ գյուղատնտեսական մթերքների արտադրության կազմակերպման գործում։ Շրջանի անձնական տնտեսությունները զգալի չափով գերակատարեցին պետությանը մսի վաճառքի անցած տարվա առաջադրանքը, իսկ 1983 թվականի առաջին եռամսյակում նախատեսված 55 տոննայի դիմաց վաճառեցին 201 տոննա։

Հավանություն տալով այդ ասպարեզում Արտաշատի շրջանում կատարված դրական աշխատանքին, հանձնաժողովը միաժամանակ նշեց, որ այստեղ մեկ ընտանիքի հաշվով պահվող անասունների քանակը դեռևս զգալիորեն ցածր է հանրապետության միջին ցուցանիշից։ Հարկ է գործնական միջոցներ ձեռնարկել անձնական օժանդակ տնտեսությունների հետագա զարգացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման նպատակով։ Խնդիր դրվեց կոլտնտեսականներին և բանվոր-ծառայողներին վաճառել անասունների մատղաշ, նրանց տրամադրել կեր և արոտավայրեր, ինչպես նաև հատկացնել հանքային պարարտանյութեր, թունաքիմիկատներ, տնամերձերում կազմակերպել գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարի աշխատանքներ։

Շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդներին հանձնարարված է լայնորեն արմատավորել արտաշատցիների փորձը։

Լուրջ պրոբլեմ են անասնապահության կերի բազայի ամրապնդումը և կերարտադրությունը ինդուստրիալ հիման վրա կազմակերպումը։ Մեզ մոտ շարունակվում է բնական կերահանդակների ոչ ռացիոնալ և էքստենսիվ օգտագործման պրակտիկան։ Մի շարք շրջաններում պրոբլեմը լուծում են դաշտային ցանքաշրջանառության մեջ կերային կուլտուրաների տեսակարար կշռի ավելացման ուղիով։ Եթե 1970 թ. վարելահողերի ընդհանուր տարածության մեջ կերային կուլտուրաների բաժինը կազմում էր 43 տոկոս, ապա 1982 թ. այն հասավ 56 տոկոսի։ Մինչդեռ կուլտուր-տեխնիկական անհրաժեշտ միջոցառումների կիրառման շնորհիվ հնարավոր է հանրապետության 137 հազար հեկտար խոտհարքների միջին բերքատվությունը հասցնել 20—22 ցենտների և լրացուցիչ ստանալ 120—125 հազար տոննա խոտ։ Դրանով շուրջ 40 հազար հեկտար հողատարածություն կարելի է ազատել կերային կուլտուրաներից և հատկացնել պարենային կուլտուրաներին։ Մեր հանրապետության համար դա էական պրոբլեմ է, որի շուտափույթ լուծումը ագրոարդյունաբերական կոմպլեքսի հրատապ խնդիրներից մեկն է։

Գյուղատնտեսության և մթերումների մինիստրությունները, շրջանային կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները, բավարար ուշադրություն չեն նվիրում վիտամինային խոտալյուրի պատրաստման հարցին, որի հետևանքով տարեցտարի չեն կատարվում այդ արժեքավոր կերատեսակի արտադրության ու մթերումների պլանները։ Անցած տարի, օրինակ, 20 հազար տոննա խոտալյուր պատրաստելու առաջադրանքը կատարվեց հազիվ կիսով չափ։

Մենք հաճախ ականատես ենք լինում նաև հակառակ պատկերին, երբ տնտեսությունն ապահովված է անհրաժեշտ քանակի կերերով, մինչդեռ անասնապահական մթերքների արտադրությունը չի ավելանում և նույնիսկ նվազում է։ Դա նախ և առաջ կերը ոչ ռացիոնալ, անարդյունավետ օգտագործելու, իսկ շատ դեպքերում՝ անտնտեսվարության ու անպատասխանատվության ուղղակի հետևանք է։

Կերերի գերածախսի և անարդյունավետ օգտագործման գլխավոր պատճառներից մեկը հանրապետությունում կերապատրաստման գործի վատ կազմակերպումն է, կերախոհանոցների և արտադրամասերի անբավարար աշխատանքը։ Շատ տնտեսություններում կերային արտադրամասերն օգտագործվում են միայն կոշտ կերերը մանրացնելու համար։ Մինչդեռ դրանք նախատեսված են վերամշակելու կերի ողջ պաշարը, պատրաստելու հավասարակշռված խառնուրդներ։ Դա անասնապահության ինտենսիվ վարման կարևոր պահանջներից մեկն է և անհրաժեշտ է, որպեսզի տնտեսությունների մասնագետներից ու ղեկավարներից մինչև շրջանների ու համապատասխան մինիստրությունների ղեկավարները սևեռուն ուշադրություն նվիրեն այդ գործին։



Կերարտադրության խնդիրներին մշտապես կարևոր տեղ է հատկացնում ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը։ Քննարկելով դաշտային և արոտամարգագետնային կերարտադրության հետագա ինտենսիվացման ասպարեզում Ստեփանավանի շրջանում կատարված աշխատանքի հարցը, հանձնաժողովը նշեց, որ վերջին երեք տարիների ընթացքում շրջանում գործնական միջոցներ են ձեռնարկվել կերային կուլտուրաների միջին բերքատվությունը բարձրացնելու, կերահանդակները բարելավելու նպատակով։

Ածնուամենայնիվ, կերարտադրության արդյունավետ կազմակերպման և նրա ինտենսիվ վարման գործում դեռևս կան էական թերություններ ու բացթողումներ։ Ոչ բոլոր տնտեսություններում է, որ բավարար աշխատանք է կատարվում բնական խոտհարքների բերքատվության բարձրացման և կերահանդակների բարելավման համար։ Շրջանը տարեցտարի չի կատարում վիտամինային խոտալյուրի արտադրության պլանները, կայունացված չէ կերերի մյուս տեսակների արտադրության մակարդակը։ Պատրաստվող սենաժի որակը չի համապատասխանում պետական ստանդարտին։ Հանգամանքներ, որոնք դժվարություններ են հարուցում անասնապահության հետագա զարգացման գործում։ Եվ պատահական չէ, որ վերջին հինգ տարում կաթի արտադրության պլանը շրջանը կատարել է միայն մեկ անգամ։

Հանձնաժողովը համապատասխան հանձնարարականներ է տվել ինչպես Ստեփանավանի, այնպես էլ մյուս շրջսովետների գործկոմներին, շրջանային ագրոարդյունաբերական միավորումներին, գյուղատնտեսության, մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրություններին, Հայգյուղտեխպետկոմին, Հայգլխջրշինին և քաղաքացիական ավիացիայի հայկական վարչությանը, որոնք պետք է անհրաժեշտ օգնություն ցույց տան շրջաններին՝ բնական կերահանդակներում կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման, կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման, բնական խոտհարքների ու արոտավայրերի պարարտացման աշխատանքներում։

Կաթի արտադրության աճի ցածր տեմպերի հիմնական պատճառներից մեկը կովերի գլխաքանակի դանդաղ ավելացումն է։ Դեռ ավելին, շատ շրջաններում անցած տարի կովերի գլխաքանակը պակասել է։ Պլանավորված 186 հազար գլխի փոխարեն տարվա վերջին եղել է ընդամենը 175 հազար գլուխ կով։ Գլխաքանակի այսպիսի նվազումը տասնյակ հազարավոր տոննա կաթի կորուստ է մեկ տարում։

Հանձնաժողովը օրերս քննարկեց կովերի գլխաքանակն ավելացնելու և հոտի վերարտադրությունը բարելավելու միջոցառումների մասին հարցը Արագածի և Մարտունու շրջանների տնտեսություններում։ Լուրջ թերություններ բացահայտվեցին կովերի գլխաքանակի, հոտում դրանց տեսակարար կշռի ավելացման, անասնաբուծության սելեկցիոն տոհմային աշխատանքների, ինֆեկցիոն հիվանդությունների կանխման գործում։ Հանձնաժողովը միջոցառումներ մշակեց տնտեսական ղեկավար կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու և անասնապահության զարգացման գործը ամուր հիմքերի վրա դնելու նպատակով։ Առանձնահատուկ նշանակություն պետք է տրվի կովերի գլխաքանակի ավելացմանը, որովհետև հանրապետությունում այդ գործը փաստորեն ինքնահոսի է մատնված։ Ըստ էության գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունները և շրջանային մարմինները խորությամբ չեն զբաղվում այդ խնդրով։ Դա մեր անասնապահության զարգացման առանցքային պրոբլեմներից է։

Նախատեսված է ընթացիկ տարում պետությանը վաճառել 112 հազար տոննա միս, որը 7 հազար տոննայով ավելի է նախորդ տարվա փաստացի կատարողականից։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում անասնագլխաքանակը փաստորեն չի ավելանում։ Հետևաբար, բացառվում է մսի մթերումների պլանի կատարումը գլխաքանակի աճի հաշվին։ Եթե նկատի ունենանք, որ այս տարի խըտացված կերերով ապահովվածությունը նույնպես նվազագույնը կլինի, ապա

դրության բարդությունն ակնհայտ է դառնում։ Իսկ ո՞րն է ելքը։ Այդ ելքը, նշեց Յու. Վ. Անդրոպովը Մոսկվայի հաստոցաշինարարների հետ հանդիպման ժամանակ. «Մեզ համար գլխավոր ուղին արտադրության արդյունավետության բարձրացումն է»։ Ուստի, առաջադրանքը պետք է կատարել ոչ թե քանակի, այլ որակական պարամետրերի բարելավման միջոցով՝ միջին օրական քաշաճի և հանձնվող անասունների քաշի ավելացման շնորհիվ։ Ըստ հաշվարկների, առաջադրանքի կատարումն ապահովելու համար անցյալ տարվա համեմատությամբ հանձնվող յուրաքանչյուր անասունի քաշը պետք է ավելացնել 20—25 կիլոգրամով։

Մսի արտադրության ավելացման հիմնական ռեզերվներից մեկը անասունների ինտենսիվ բտումն է Այդ գործում մենք որոշակի հաջողություններ ունենք։ Եթե 1975 թ. հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները պետությանն են վաճառել խոշոր եղջերավոր անասունների չորս հազար գլուխ ծանրաքաշ մատղաշ, ապա անցյալ տարի 56 հազար գլուխ անասուն վաճառվելի է 324 կգ միջին կենդանի քաշով, ընդ որում 12.500 գլուխը՝ 350 կգ-ից ավելի։ Այս ասպարեզում որոշակի դրական փորձ ունեն Աբովյանի, Հրազդանի, Նաիրիի, Կալինինոյի, Ղուկասյանի, Էջմիածնի, Արտաշատի և այլ շրջաններ։

Սակայն այս կարևոր գործում առկա են լուրջ թերացումներ։ Կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան պետությանն են վաճառում խոշոր եղջերավոր անասունների 33 հազար գլուխ թեթևաքաշ մատղաշ՝ 230—235 կգ կենդանի քաշով, իսկ դա շուրջ 2.000 տոննա մսի բացահայտ կորուստ է։ Ընթացիկ տարում խնդիր է դրված,— և դրա իրականացման համար կան բոլոր պայմանները,— խոշոր եղջերավոր անասունների ամբողջ մատղաշը վաճառել 320—330 կգ-ից բարձր քաշով։ Ոչ պակաս կարևոր ռեզերվ է գառների ինտենսիվ բտումը։ Այդ նպատակով մեզ մոտ կատարված են առաջին քայլերը և այժմ անհրաժեշտ է հոտի պլանավորված վերարտադրության համար նախատեսվածից ավելի ամբողջ գլխաքանակը բտել և նույն տարում պետությանը հանձնել 35 կգ-ից ոչ պակաս քաշով։ Մսի արտադրության ռեզերվներն անբավարար են օգտագործվում պետական անասնապահական համալիրներում և թռչնաֆաբրիկաներում, որտեղ լիովին չեն օգտագործվում արտադրական հզորությունները, խախտվում են կերերի ծախսման, անասունների և թռչունների աճեցման տեխնոլոգիայի նորմաներն ու պահանջները։

Մսի պետական ռեսուրսների համալրման կարևոր միջոց է դրա ներտնտեսային ծախսումների կրճատումը։ Վերջին տարիներին, ձեռնարկված միջոցների շնորհիվ, որոշակիորեն կարգավորվել է վիճակը։ Սակայն շատ տեղերում դեռևս նկատվում են կենդանի չնչին քաշով անասունների, հատկապես մատղաշի, մորթի դեպքեր՝ ներտնտեսական կարիքների համար։ Անցյալ տարի մսի մեծ չափերի հասնող գերածախս են տվել Արագածի, Արտաշատի, Գորիսի, Սիսիանի շրջաններում և դա, մի շարք դեպքերում, առանց մսի պետվաճառքի պլանները կատարելու։ Առանձին տնտեսություններում ներտնտեսային կարիքների համար իրացնելու քողի տակ թաքցվում են անկումների և անասունների առուծախի փաստերը, տարբեր մեքենայությունների և չարաշահումների տեղիք է տրվում։

Անասնապահության զարգացման առանցքային հարցերից մեկը գյուղատնտեսական կենդանիների անպտղությունը և ստերջությունը վերացնելու նպատակով տարվող աշխատանքն է։ Քննարկելով այդ հարցը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը նշեց, որ մի շարք շրջաններում այդ գործը խիստ անբավարար է։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում քիչ է 100 մայր անասունից ստացվող մատղաշների քանակը, բավարար պայքար չի տարվում անասունների ստերջության և անպտղության վերացման համար, որը բացասաբար է անդրադառնում հոտի վերարտադրության վրա։ Ավելին, շրջանների զգալի մասում չեն կանխում կովերի չհիմնավորված խոտանումը։ 1982 թ. խոտանվել է 38,5 հազար գլուխ կով, որը կազ-



մում է նախրի 22 տոկոսը։ Այդ տեսակետից վիճակն անբավարար է Սպիտակի, Ախուրյանի, Ստեփանավանի և Թումանյանի շրջաններում։

Լուրջ անելիքներ կան մատղաշների պահպանման, հաշվառման գործի կարգավորման ասպարեզում։ Անասնաբուծության ու կերարտադրության և անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտները դեռևս հարկ եղած օգնությունը ցույց չեն տալիս տնտեսություններին՝ բարելավելու գյուղատնտեսական կենդանիների հոտի վերարտադրությունը, նվազագույնի հասցնելու ստերջությունը և անպտղությունը։ «Հայգյուղտեխպետկոմի» շրջանային միավորումները բավարար չափով չեն լուծում արհեստական սերմնավորման պետական կայաններին, միջշրջանային ու միջտնտեսային գյուղատնտեսական կենդանիների արհեստական սերմնավորման կայաններին հեղուկ ազոտ, ինչպես նաև ավտոպահեստամասեր մատակարարելու հարցը։

Ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը պարբերաբար անդրադառնում է բուսաբուծության զարգացման հրատապ խնդիրներին, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, մթերքների արտադրության և պետգնումների առաջադրանքների կատարումն ապահովելու նպատակով։ Առանձնահատուկ նշանակություն է տրվում քաղաքների բնակչությանը բանջարեղենով և բոստանային կուլտուրաների տեսականիով բավարարելու հարցին։ Հանձնաժողովը խնդիր է դրել բնակչության սպասարկման գործը կազմակերպական բարձր հիմքերի վրա դնելու նպատակով թարմ բանջարեղենի և պտղի մատակարարումն ու վաճառքը կատարել սահմանված գրաֆիկով։

Հանձնաժողովի ուշադրության կենտրոնում է գյուղական օբյեկտների շինարարության հարցը։ Քննարկելով հանրապետությունում ալրաղաց ձեռնարկությունների կարողությունների իրացման արագացման հարցը, հանձնաժողովը մասնավորապես նշեց, որ այդ աշխատանքների ձգձգման պատճառով թերակատարվել է տեսակավոր ալյուրի արտադրության պլանը։ Խնդիրն այն է, որպեսզի համապատասխան գերատեսչությունների օպերատիվ և գործնական միջամտությամբ արագացվի կարողությունների կառուցումն ու գործարկումը։ Այդ կապակցությամբ գյուղական շինարարության մինիստրությանը հանձնարարվեց ապահովել Վերին Թալինի օրական 500 տոննա կարողությամբ ալրաղաց ձեռնարկության շահագործումը հանձնարարված ժամկետում։

Ձգձգվում է «Հայգյուղտեխպետկոմի» Նուռնուսի սաևտրակուտակիչ բազայի շինարարությունը։ Տաս միլիոն ռուբլու արժեքով շինությունը նախատեսված է գյուղատնտեսական տեխնիկայի կենտրոնացված մատակարարումը կազմակերպելու համար։ Քննարկելով այդ հարցը, հանձնաժողովը նշեց, որ հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրությունը և «Հատուկմոնտաժշին» գլխավոր վարչությունն անհրաժեշտ հետևողականություն հանդես չեն բերում բազայի շինարարությունն արագացնելու գործում։ Ընդ որում մինիստրությունը թերակատարում է նաև «Գյուղտեխպետկոմի», գյուղատնտեսության, մսեղենի ու կաթնեղենի արտադրության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունների մի շարք այլ օբյեկտների շինարարության պլանները։

Բազմապիսի են ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովում քննարկվող խնդիրները։ Վերջին մի քանի նիստերում քննարկել ենք նաև պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրության համակարգի մթերող և առևտրական կազմակերպությունների կողմից 1983 թ. բերքի ընդունման ու իրացման հարցը, մսեղենի և կաթնամթերքի որակի բարձրացման և տեսականու բարելավման հարցը, գյուղատնտեսական երկրորդային հումքը օգտագործող ու վերամշակող հզորությունների ավելացման վիճակը և շատ այլ հարցեր։ Հանձնաժողովի գործունեության կարևոր ուղղություններից է կուսակցության և կառավարության որոշումների կատարման վերահսկողությունը։ Այդ առումով վերջերս հանձնաժողովն անդրադարձավ «Հայկական ՍՍՀ պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրության ջերմատնային տնտեսությունների գործունեությունը բարելավելու միջոցառումների մասին» Հայկական

ՍՍՀ Մինիստրների խորհրդի 1981 թ. որոշման կատարմանը։ Քննարկումը ցույց տվեց, որ այդ կարևոր որոշման իրականացման բնագավառում առկա են լուրջ թերություններ։ Առանձին ջերմատնային տնտեսություններում ու կոմբինատներում ցածր է վարունգի, պոմիդորի, կանաչեղենի բերքատվությունը, շատ տնտեսություններում չի պահպանվում բանջարեղենի նախատեսված տեսականին, անբավարար է ըստ ամիսների բանջարեղենի արտադրության համաչափ կազմակերպումը։ Ջերմոցային տնտեսությունների ընդհանուր արտադրության 77,6 տոկոսը կատարվում է մայիս, հունիս և հուլիս ամիսներին, իսկ ձմռան ընթացքում փաստորեն անբավարար է բնակչությանը և հասարակական սննդի օբյեկտներին բանջարեղենի մատակարարման գործը։ Տնտեսությունների մեծ մասում լուծված չէ կենտրոնական ջեռուցման հարցը։ Պտուղ բանջարեղենի տնտեսության մինիստրությունը հետևողական աշխատանք չի կատարում պահանջվող քանակի վառելանյութի ապահովման համար։

Ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը չի բավարարվում միայն գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման, արտադրանքի քանակական և որակական պարամետրերի ապահովման, հումքի վերամշակման, գյուղատնտեսական օբյեկտների շինարարության և մյուս հանգույցային հարցերի քննարկմամբ, որոշումների ու հանձնարարականների ընդունմամբ և դրանց կատարման նկատմամբ անհրաժեշտ վերահսկողության իրականացմամբ։ Հանձնաժողովի անդամները զբաղվում են նաև ամենօրյա կազմակերպական աշխատանքով։

Այնուամենայնիվ, մենք դեռևս շատ անելիքներ ունենք ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող բոլոր ճյուղերի, մինիստրությունների և գերատեսչությունների գործունեության կոորդինացման, պարենային ծրագրի բոլոր պահանջներն ու խնդիրները կետ առ կետ իրականացնելու գործում։ Մեր հատուկ հոգածության առարկան են շրջանային ագրոարդյունաբերական միավորումների գործունեությունը, նրանց անհրաժեշտ, գործնական օգնության կազմակերպումը, արդեն կուտակված դրական փորձի ընդհանրացումը և պրոպագանդումը, թերությունների ու բացթողումների արագ շտկումը։

Այս տարի նույնպես եղանակը լուրջ դժվարությունների առջև է կանգնեցրել գյուղի աշխատողներին։ Դրա առանձնահատկությունն անսովոր լայն ընդգրկումն է։ Փաստորեն չկա մի շրջան, որ այս կամ այն չափով տուժած չլինի ցրտահարությունից, կարկտահարությունից և տարերային մյուս աղետներից։ Հսկայական վնաս է հասցվել գյուղատնտեսական արտադրության փաստորեն բոլոր ճյուղերին։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հատուկ միջոցառումներ է կիրառել տարերային աղետների հետևանքների վերացման գործում Հայկական ՍՍՀ-ին օգնելու համար։ Ի պատասխան սովետական պետության հոգատարության, հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները, գյուղի ու քաղաքի աշխատավորները մոբիլիզացրել են բոլոր ռեզերվները, դրսևորում են կամք ու եռանդ, հմտություն և կազմակերպվածություն՝ դիմագրավելու բնության քմահաճույքներին, վերականգնելու ժողովրդական տնտեսությանը հասցված վնասը, ապահովելու գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքը։

Հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի աշխատողները որպես գործողությունների ծրագիր են ընդունել ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումների որոշումները։ Ամենուրեք սոցիալիստական մրցություն է ծավալվել պարենային ռեսուրսների ավելացման, սահմանված բնագծերի նվաճման համար։

Պարենային ծրագիրը, որը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում ընկ. Յու. Վ. Անդրոպովը համարեց երկրում իրականացվող կոմպլեքսային սոցիալ-տնտեսական խոշորագույն ծրագրերից մեկը, ոչ միայն արմատական շրջադարձ է գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի վերելքի գործում։ Այն իր բնույթով, մասշտաբայնությամբ կոչված է ապահովելու ամբողջ ժողովրդական տնտեսության առաջընթացը։ Այդ ծրագիրը, թե՛ տնտեսական, թե՛ քաղաքական առումով ընթացիկ տասնամյակի կենտրոնական պրոբլեմն է, որի հաջող լուծման երաշխիքը տարեկան պլանների և ողջ տասնմեկերորդ հնգամյակի պլանի կատարումն ու գերակատարումն է։

---

# ՂԵԿԱՎԱՐԻ ԽՈՍՔԻ ԵՎ ԳՈՐԾԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

**ԴՈՆԱՐԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար



**ՍՄԿԿ** ԿԵՆՏԿՈՄԻ նոյեմբերյան (1982 թ.) և հունիսյան (1983 թ.) պլենումները, ղեկավարվելով կուսակցության կադրային քաղաքականության վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի դրույթներով ու պահանջներով, առանձնահատուկ կերպով շեշտեցին ղեկավար կադրերի խոսքի ու գործի միասնության ապահովման, նրանց հեղինակության բարձրացման հույժ անհրաժեշտությունը։ «Բացառիկորեն,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը հունիսյան պլենումում,— կարևոր է հասնել այն բանին, որ խոսքը երբեք չտարբերվի գործից, իսկ գործի էությունը չփոխարինվի ձևով։ Դա, եթե ուզում եք, մեր սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման կարևորագույն ռեզերվներից մեկն է պետական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում»։ Պլենումը նշեց, որ մեծ է կոմունիստի, առանձնապես ղեկավար կոմունիստի օրինակի ուժը, որովհետև նա միշտ մասսաների աչքի առջև է, և որքան ավելի մեծ պոստ է գրավում, այնքան ավելի մեծ պատասխանատվություն է ընկնում նրա վրա։

Երբ կադրային քաղաքականության ասպարեզում գնահատում ենք մեր քաղաքային կազմակերպության ծավալած գործունեությունը կուսակցության XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան և հունիսյան պլենումների այդ պահանջների չափանիշներով, պարզորոշ երևում են և՛ դրական աշխատանքը, և՛ վրիպումներն ու թերությունները։ Այդ խնդիրներին անդրադարձավ ՀԿԿ Կենտկոմի պլենումը ընթացիկ տարվա ապրիլի վերջերին։ Պլենումը գործարար մթնոլորտում քննարկեց ՀԿԿ Լենինականի քաղկոմի հաշվետվությունը՝ ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջների լույսի ներքո կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակության աշխատանքի վերաբերյալ։ Պլենումը, իր ելույթում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը համակողմանիորեն ընդհանրացրին այդ ասպարեզում մեր կուտակած փորձը։ «Լենինականի կուսակցական կազմակերպությունը,— ասաց ընկ. Կ. Դեմիրճյանը,— հասել է այն բանին, որ բոլոր մակարդակի կադրերը՝

ամբողջությամբ վերցրած, քաղաքի գործերի վիճակի համար բարձր պատասխանատվության զգացումով իրենց ջանքերը ներդնում են տնտեսական և կուլտուրական շինարարության, սոցիալական զարգացման և կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծմանը»։ Այդպիսի բարձր գնահատականը, անշուշտ, մեզ ուրախացնում է։ Սակայն մեզ համար լուրջ դաս է քաղկոմի հասցեին արված քննադատությունը։ ՀԿԿ Կենտկոմի պլենումը մեր ուշադրությունը բևեռեց կադրային քաղաքականության ասպարեզում ունեցած վրիպումների, թերությունների և թերացումների վերացման վրա։

Կուսակցությունն այսօր մեզնից պահանջում է ավելի հետևողականորեն զբաղվել ընդհանուր առաջընթացի ապահովման, բոլոր բնագավառներում կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների գործունեության բարելավման հարցերով։ Իսկ այդ խնդիրների լուծումը մեծ չափով պայմանավորված է կադրերով, նրանց եռանդով ու տնտեսավարման հմտություններով։ Կադրերի հետ տարվող աշխատանքը մեր գործունեության բաղկացուցիչ մասն է, լենինյան ոճի փորձված միջոցը։ Միայն այդ աշխատանքի կատարելագործմամբ է հնարավոր իրագործել կուսակցության մշակած ծրագրերը և ընդունած որոշումները։

Ղեկավարվելով կուսակցության պահանջներով ու ցուցումներով՝ քաղկոմն իր կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքի նպատակը համարում է կադրերի գործարարության ապահովումը, իսկ դրան մեծապես նպաստում է նրանց գործունեության վերահսկողությունը։

Քաղկոմի բյուրոյի նիստերում և բաժիններում պարբերաբար քննարկում ենք տարբեր ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների հաշվետվություններն ու հաղորդումները, բացահայտում գոյություն ունեցող թերությունները, յուրաքանչյուրին տալիս կոնկրետ հանձնարարություններ։ Այսպես, քաղկոմի բյուրոյում քննարկել ենք կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության նպատակով կոմպրեսորների գործարանի կուսկազմակերպության և տնտեսական ղեկավարության ծավալած աշխատանքի հարցը։ Քննարկումը ցույց տվեց, որ ձեռնարկությունում գոյություն ունեցող թերությունները հիմնականում բացատրվում են միջին օղակի կադրերի քաղաքական պատրաստականության և կազմակերպչական հմտության ոչ բավարար մակարդակով, նրանց հետ տարվող դաստիարակչական թույլ աշխատանքով։ Բացահայտելով թերություններն ու դրանց պատճառները՝ բյուրոն կոնկրետ ուղղություն տվեց կուսակցական ու տնտեսական ղեկավարությանը, կանխորոշեց կադրերի ընտրության և տեղաբաշխման ասպարեզում ձեռնարկության ղեկավարների գործունեության ձևերն ու մեթոդները։ Իրականացնելով քաղկոմի բյուրոյի հանձնարարականները՝ դիրեկցիան ու կուսբյուրոն զգալիորեն շտկեցին դրությունը։

Խոսքի և գործի միասնության պատշաճ ապահովման համար պահանջվում է խորանալ ղեկավար կադրերի աշխատանքի ոճի, ղեկավարման ձևերի ու մեթոդների մեջ, ընդհանրացնել այն ողջ դրականը, որ կուտակվել է նրանց գործունեության ընթացքում, բացահայտել թերացումները։ Հարկավոր է պարզել, թե այս կամ այն ղեկավարի մոտ ինչպիսի հատկանիշներ պետք է զարգացնել, ինչպիսի հատկանիշներից նրան զերծ պահել։ Երկու տարի առաջ լոկոմոտիվային դեպոյի պետ նշանակվեց այդ կոլեկտիվում հասունացած Հ. Հակոբյանը, որը տեխնիկական գիտությունների թեկնածու է, լավ մասնագետ, ինչպես ասում են՝ «գործի լեզուն հասկացող»։ Այնուհանդերձ, կոլեկտիվ ղեկավարելու հմտության պակասը երբեմն նրան կանգնեցնում էր դժվարությունների առջև. Նա չէր կարողանում հստակորեն կոորդինացնել արտադրության բոլոր օղակների ղեկավարների գործունեությունը։ Ուսումնասիրելով նրա աշխատանքի ոճը՝ քաղկոմը խորհուրդ տվեց երիտասարդ պետին ավելի հետևողական լինել հանձնարարությունների կատարման ստուգման մեջ, իր ենթակաների նկատմամբ ցուցաբերվող հոգատարությունը զուգորդել պահանջկոտությամբ, յուրաքանչյուրի աշխատանքը գնահատելիս ելնել միայն սկզբունքային դիրքերից։ Ղեկավարվելով այդ ցուցումներով, Հ. Հակոբյանին հաջողվեց կարճ ժամանակում ձերբազատվել վերոհիշյալ թերություններից, ավելի բանիմացորեն ղեկավարել կոլեկտիվը։



Խոսքի և գործի միասնությունը ցայտուն կերպով արտացոլվում է աշխատավորական կոլեկտիվների ստանձնած պարտավորություններում ու դրանց կատարման մեջ։ Մենք խորհուրդ ենք տալիս կադրերին, տնտեսական ղեկավարներին, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին՝ համակողմանիորեն ուսումնասիրել, մշակել և ընդունել այնպիսի պարտավորություններ, որոնք համապատասխանում են կոլեկտիվի ուժերին, ձեռնարկությունների հնարավորություններին։ Անշուշտ, պարտավորություններ ստանձնելիս, պետք է հաշվի առնել եղած բոլոր ռեզերվները։ Մի խոսքով, պահանջում ենք ընդունել ռեալ պարտավորություններ և անվերապահորեն կատարել դրանք։ Այս առումով նպատակային աշխատանք է կատարվում կրկնակի շքանշանակիր բամբակագործվածքային արտադրամիավորումում։ Այդ բազմահազարանոց և աշխատանքային լավագույն ավանդույթներով հարուստ կոլեկտիվը երկար տարիներ քայլում է քաղաքի և հանրապետության արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների շարքում։ Այստեղ սիստեմատիկաբար կատարվում ու գերակատարվում են ոչ միայն պետական առաջադրանքները, այլև ստանձնած սոցպարտավորությունները։ Եվ դա շնորհիվ այն բանի, որ, ինչպես ասում են, կադրերն իրենց տեղում են, գիտեն հարգել իրենց խոսքը։ Պլաններն ու պարտավորությունները մշակելիս նրանք, ինչպես հարկն է, ծանրութեթև են անում իրենց ռեզերվներն ու հնարավորությունները արտադրության բոլոր օղակներում և գործնական միջոցներ ձեռնարկում դրանք կատարելու համար։

Այդ միավորման ղեկը վստահված է ակտիվ և սկզբունքային կոմունիստ Գ. Դարբինյանին։ Բազմազբաղ է նրա առօրյան. Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է ու ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, քաղկոմի բյուրոյի և դասախոսական խմբի անդամ։ Հարկ է լինում նրան՝ լուծելու այդ պարտականություններին առնչվող շատ հարցեր, դասախոսություններով հանդես գալ տարբեր կոլեկտիվներում։ Ժամանակակից բազմակողմանի զարգացած, գաղափարապես կոփված կոմունիստի իսկական տիպար է, որի համար խոսքի ու գործի միասնությունը պատվի խնդիր է։ Նաև հմուտ ու բանիմաց մասնագետ է. Մոսկվայի տեքստիլ ինստիտուտն ավարտելուց հետո, 1938 թվականից աշխատում է թեթև արդյունաբերության բնագավառում, տնտեսական գիտությունների թեկնածու է։ Արդեն երկու տասնամյակից ավելի ղեկավարում է մեր քաղաքի ամենախոշոր ձեռնարկությունը՝ տեքստիլ կոմբինատը և ապա՝ նրա բազայի վրա ստեղծված բամբակագործվածքային արտադրամիավորումը։ Եվ այդ ընթացքում ձեռնարկությունը բազմիցս հաղթող է դուրս եկել հանրապետական և միութենական սոցիալիստական մրցությունում, շահել համապատասխան դրոշներ ու մրցանակներ, պարգևատրվել Աշխատանքային կարմիր դրոշի ու Ժողովուրդների բարեկամության շքանշաններով։ Կոմբինատի կոլեկտիվը հանդես է եկել մի շարք արժեքավոր նախաձեռնություններով։ Այստեղ են ծնունդ առել բազմահաստոցայինների, վարպետ-դաստիարակների, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը, խնայողության խստագույն ռեժիմի կիրառմանը նվիրված բազմաթիվ շարժումներ, որոնք տարածվել են հանրապետության ու Միության թեթև արդյունաբերության համակարգի ձեռնարկություններում։

Ուրախալի է, որ բամբակագործվածքային արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Գ. Դարբինյանի օրինակը եզակի չէ։ Նման դրական հատկանիշներով են օժտված նաև քաղաքի ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների շատ ղեկավար կադրեր։ Այսպես, դարբնոցամամլիչային սարքավորումների արտադրամիավորումը քաղաքի առաջավոր ձեռնարկություններից է։ Այն համաչափորեն է կատարում պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, պատրաստի արտադրանքը ժամանակին առաքում պատվիրատուներին։ Եվ այդ ամենը՝ տարիներ շարունակ։ Կոլեկտիվում տիրում է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ։ Ինչո՞ւմն է գաղտնիքը։ Ճիշտն ասած, մի առանձին գաղտնիք էլ չկա։ Պարզապես կադրերն

իրենց տեղում են. ապահովվում է ղեկավարների խոսքի ու գործի սերտ միասնությունը։

Խոսեմ ավելի կոնկրետ. 1963 թվականից դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի, ապա՝ համանուն արտադրամիավորման գլխավոր դիրեկտորն է կոմունիստ Կարապետ Աբրահամյանը։ Պոլիտեխնիկականի դիպլոմով աշխատանքային կենսագրությունն սկսել է այս ձեռնարկությունում. յոթ տարի արտադրության պետ է եղել և գլխավոր ինժեներ։ Նա պահանջկոտ է իր և ուրիշների նկատմամբ, ինչպես ասում են, գիտի իր խոսքի արժեքը ու հարգում է այն։ Եվ, ամենակարևորը, հետևողական է և սկզբունքային։ Անցած երկու տասնամյակում նա հմտորեն է ղեկավարել արտադրությունը, ապահովել նրա համաչափ աշխատանքը, իրեն դրսևորել որպես ղեկավար դաստիարակի, որպես պրոպագանդիստ, քաղաքական և տնտեսական գիտելիքներով զինել է կոմունիստներին ու տնտեսական ակտիվին։ Եվ, բնականաբար, բոլոր տարիներին հմտորեն ղեկավարել է արտադրությունը, որի շնորհիվ գործարանը, ապա՝ միավորումը պատվով է կատարել արտադրական ծրագիրը, մրցանակային տեղեր գրավել սոցիալիստական մրցությունում, շահել միութենական դրոշներ։ Այստեղ ժամանակին լուծվում են տեխնիկական և տնտեսական, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական հարցերը։ Ժամանակին, սահմանված ժամկետներում համալրվում է մեքենայական պարկը, ներդրվում նոր տեխնիկան։ Խստագույն կերպով կիրառվում է խնայողության ռեժիմը, ձեռնարկությունը բողոքարկներ չի ստանում և տուգանքներ չի վճարում, բոլոր արտադրամասերն ու տեղամասերը աշխատում են տնտհաշվարկով, հաշվի են առնվում յուրաքանչյուր կիլոգրամ մետաղը, կիլովատ-ժամ էլեկտրաէներգիան, յուրաքանչյուր լիտր ջուրն ու վառելանյութը, բացառված են հանրային ունեցվածքի հափշտակումներն ու շռայլումները։

Միավորման գլխավոր դիրեկտորի գործելակերպի բնորոշ հատկանիշներից մեկը հոգատարությունն է արտադրության մարդու նկատմամբ։ Նա ջանում է, որպեսզի անվերապահորեն լուծվի կոլեկտիվի սոցիալական զարգացման ծրագիրը և հասնում է իր նպատակին։ Վերջին տարիներին ձեռնարկության միջոցներով կառուցվել են բնակելի երեք տուն, բաղնիք, բանվորական ճաշարան, խաղասենյակներ, խաղահրապարակներ, բացվել են կիսաֆաբրիկատների և պտուղ-բանջարեղենի խանութներ։ Բանվորներին ճաշարանում կաթը և հացը տրվում է անվճար։ Նախատեսվում է մինչև ընթացիկ հնգամյակը կառուցել երկու բնակելի տուն, պանսիոնատ, բացել արդյունաբերական ապրանքների խանութ, մեծ թվով բանվոր-ծառայողների ապահովել բնակարաններով։ Միավորումը իր նպաստն է բերում պարենային ծրագրի կատարմանը։ Արդեն ստեղծվել է ճագարաբուծական օժանդակ տնտեսություն, ձեռք բերվել 15 կով, հիմնվել խնձորենու այգի. դիրեկցիան որոշել է առաջիկա տարիներին զգալիորեն ավելացնել ճագարների գլխաքանակը, իսկ կաթնապրանքային ֆերմայում՝ կովերինը հասցնել 100-ի։

Այսպիսով, ղեկավարի խոսքի ու գործի սերտ միասնությունը երևան է գալիս ոչ միայն արտադրության, այլև սոցիալ-կուլտուրական կյանքի բնագավառում։ Իսկ վերջինիս առնչվող խնդիրների լուծումը տվյալ ձեռնարկությունում բանվորական ու մասնագիտական կադրերի ամրապնդման, նրանց հոսունության կանխման վճռական երաշխիք է։ Այս դրական հատկանիշը բնորոշ է նաև բամբակագործվածքային արտադրամիավորման, Հղկող հաստոցների, էլեկտրատեխնիկական, «Ստրոմմաշինա» գործարանների ղեկավարներին։ Եվ մեկ կարևոր հանգամանք. թվարկածս ձեռնարկություններում դիրեկցիաները և կուսկազմակերպությունները գործում են համերաշխորեն, ձեռք-ձեռքի տված։ Չկա փոքր ու մեծ մի հարց, որը չքննարկվի-չլուծվի նրանց փոխադարձ համաձայնությամբ, հատկապես երբ այն վերաբերում է կադրերին, նրանց ընտրությանն ու տեղաբաշխմանը։

Սակայն, ցավոք, ոչ բոլոր ղեկավարներն են վարվում այդպես։ Պատահում է՝ մեկը ամբիոնից մի բան է ասում, իսկ պրակտիկայում այլ բան է անում, դառնում անօգնական, փորձում ենք աջակցել, լսում ենք հաշվետվությունը, զրուցում հետը, բայց ջանքերը զուր են անցնում։ Եվ ահա հետևանքը.



խզում է առաջանում խոսքի ու գործի միջև, խոստումը գործի չի վերածվում, և այդ ամենը բացասաբար է անդրադառնում ընդհանուր աշխատանքի վրա։ Քիչ չեն դեպքերը, երբ շինարարական առանձին կազմակերպություններում խախտվում են օբյեկտները շահագործման հանձնելու կոնկրետ ժամկետները, արվում են խոստումներ, սակայն հետագայում հարկ եղած չափով չեն զբաղվում դրանք կատարելու համար։ Աշխատանքի նման ոճի հետևանքը սովորաբար այն է, որ տվյալ օբյեկտի գործարկման ժամկետը մի քանի անգամ փոփոխվում է։ Նման վիճակ էր առաջացել կահույքի ֆաբրիկայի շինարարությունում։ 1981 թ. կապիտալ ներդրումների պլանը կատարվել էր ընդամենը 51, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 50,6 տոկոսով։ Գործերը բարվոք չէին նաև հաջորդ տարում։

Գիտատեխնիկական առաջընթացի արդի պայմաններում ղեկավարներից պահանջվում է ավելի պատասխանատվությամբ վերաբերվել կառավարման կատարելագործմանը։ Նրանք պետք է տիրապետեն նաև ղեկավարման ժամանակակից մեթոդներին, ունենան նորի զգացողություն, ինքնադաստիարակության կարողություն։ Վ. Ի. Լենինը ժամանակին նշել է, որ ոչ մի բարեխղճություն, կուսակցական ոչ մի հեղինակություն չեն փոխարինի գործիմացությանը, որը տվյալ դեպքում գլխավորն է, իսկ այդ խնդիրն այժմ ավելի է կարևորվում, քանի որ ղեկավարի և ենթակաների փոխհարաբերությունների չափանիշները փոխվել են։ Այսօրվա բանվորը միջնակարգ կամ միջնակարգ-մասնագիտական կրթության տեր անձնավորություն է, հասու է գիտատեխնիկական նորույթներին, երկրում և աշխարհում կատարվող հասարակական-քաղաքական իրադարձություններին։ Նա քննադատական մոտեցում է դրսևորում ղեկավարի գործերի ու արարքների հանդեպ։

Հաշվի առնելով այդ հանգամանքները՝ մենք ձգտում ենք առաջ քաշել հեռանկարային կադրերի, հենվել երիտասարդության վրա։ Մի խոսքով, ըստեղծել կադրային հուսալի ռեզերվ, որի առկայությունն օգնում է մեզ՝ ղեկավար աշխատանքը վստահել գործիմաց ու բազմակողմանի զարգացած մարդկանց։ Այդ նպատակով քաղկոմում ստեղծել ենք կադրային ռեզերվի անվանացուցակներ՝ իրենց որակական տվյալներով։ Ռեզերվի մեջ ներգրավում ենք այնպիսի անձանց, ովքեր իրենց դրսևորել են որպես բարեխիղճ, քաղաքականապես հասուն աշխատողների, օժտված են կազմակերպչական և մասնագիտական ունակություններով։ Նրանք ակտիվորեն ներգրավվում են քաղկոմի պլենումներում, ակտիվի ժողովներում, բյուրոյի նիստերում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, աշխատավորների նամակների և դիմումների ստուգմանը, զեկուցումներով հանդես են գալիս աշխատավորական կոլեկտիվներում, ելույթ են ունենում քաղկոմի պլենումներում, քաղսովետի նստաշրջաններում, քաղկոմի հանձնարարությամբ կատարում այլևայլ ուսումնասիրություններ։ Նախ՝ այդ ամենը լուրջ փորձաշրջան է դառնում ռեզերվում ընդգրկված յուրաքանչյուր անձի համար և երկրորդ՝ մենք ուսումնասիրում ենք, թե ինչպես են նրանք արտադրական գործունեությունը զուգորդում հասարակական-քաղաքական աշխատանքի հետ։ Դա հնարավորություն է ընձեռում անհրաժեշտության դեպքում կուսակցական, տնտեսական և այլ բնագավառների ղեկավար աշխատողների կազմը համալրել ռեզերվի հաշվին։ Այս իրողության ցայտուն օրինակը կարող են տալ Հղկող հաստոցների և «Ստրոմմաշինա» գործարանների դիրեկտորներ Հ. Հարությունյանը և Լ. Ադամյանը։ Լ. Ադամյանը աշխատանքային կենսագրությունն սկսել է վարպետից, բարձրացել արտադրության ղեկավարման աստիճաններով՝ արտադրության պետ, գլխավոր ինժեներ, 1981 թվականից՝ դիրեկտոր։ Ընդ որում, այդ ընթացքում նա պաշտպանել է դիսերտացիա և դարձել տեխնիկական գիտությունների թեկնածու։ Եվ, ամենակարևորը, երիտասարդ ղեկավարին հաջողվեց ոչ միայն կոլեկտիվը դուրս բերել ծանր վիճակից, այլև հասցնել առաջավորների մակարդակին։

Այս առումով Հղկող հաստոցների գործարանի օրինակը թերևս ավելի բնորոշ է։ Անցած տարի էր, քաղկոմի բյուրոյում քննարկում էինք ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը։ Կա-

մենում էինք պարզել, թե կուսբյուրոն ինչ է անում տասնմեկերորդ հնգամյակի պետական պլանների կատարումը, ՍՄԿԿ XXVI համագումարի և ՀԿԿ XXVII համագումարի պահանջների ոգով կուսկազմակերպության աշխատանքի բարձր արդյունավետությունն ապահովելու համար։ Ընդ որում, առաջին հերթին մեզ հետաքրքրում էր գլխավորած տեղամասերի վիճակի համար կադրերի պատասխանատվության բարձրացման, նրանց խոսքի ու գործի միասնության հարցերը։ Քննարկումը ցույց տվեց, որ ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարներից հետո գործարանի աշխատանքային կոլեկտիվի կյանքում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ. Նա արդեն համաչափորեն կատարում է պետական պլաններն ու սոցպարտավորությունները, հաստոցները ժամանակին առաքում պատվիրատուներին։ Այստեղ այսօր բանվոր-ծառայողների համար կառուցվում է բնակելի տուն, հիմնվում է բանջարանոցային օժանդակ տնտեսություն, ստեղծվում են աշխատանքի և կենցաղի անհրաժեշտ պայմաններ։ Անշուշտ, դրանք ոչ միայն բարձրարտադրողական աշխատանքի ապահովման կայուն երաշխիքներ են, այլև ղեկավարների խոսքի ու գործի միասնության կոնկրետ վկայություններ։ Մինչդեռ մի քանի տարի առաջ այստեղ գործերն անհաջող էին, երկար ժամանակ կային լուծման կարոտ պրոբլեմներ և խնդիրներ, ձեռնարկությունը թերակատարում էր արտադրական պլանները, ընկել էր ծանր կացության մեջ, արտադրության օղակներում թույլ էր աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահությունը։ Բանն այն է, որ նախորդ հինգ տարվա ընթացքում փոխվել էր գործարանի չորս դիրեկտոր։ Ըստ էության քաղկոմը վրիպել էր նրանց հարցում, հաշվի առել թերևս միայն մասնագիտական գիտելիքներն ու պատրաստվածությունը, անտեսելով ղեկավարին բնորոշ մյուս հատկանիշները՝ մասսաների հետ կապի ստեղծման, նրանց դաստիարակության ու համախմբման, կուսկազմակերպության հետ համագործակցված աշխատելու հմտությունը, պահանջկոտությունը իր և ուրիշների նկատմամբ և այլն։

Ստեղծված անբարեհաջող վիճակից դուրս գալու հիմնական ելքը կադրային պրոբլեմի լուծումն էր։ Եվ մենք գործն սկսեցինք հենց այդ պրոբլեմից. դիրեկտոր հաստատեցինք գործարանի առաջատար մասնագետներից մեկին՝ Հակոբ Հարությունյանին, որն իր աշխատանքային մկրտությունն ստացել էր այդ կոլեկտիվում։ Աստիճան առ աստիճան անցել արտադրության վարպետից դիրեկտորի տեղակալի պաշտոնն ընկած ճանապարհը։ Եվ նա այդ մեծ վստահությանը պատասխանեց կոմունիստին վայել բարձր պատասխանատվությամբ։ Քիչ չէ. քսան տարի աշխատել էր գործարանում, լավ գիտեր և՛ արտադրությունը, և՛ մարդկանց, վերջիններս՝ իրեն։ Առաջին իսկ օրվանից նա մտահոգվեց արտադրության բոլոր օղակներում պատշաճ կարգ ու կանոն սահմանելու, աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահությունն ամրապնդելու հարցերով։ Մենք լուրջ առաջադրանքներ տվեցինք նաև սկզբնական կուսկազմակերպությանը (բյուրոյի քարտուղար՝ Մ. Մարգարյան), և վերջինս զորավիգ եղավ նոր դիրեկտորին, նրա բոլոր ձեռնարկումներում։ Խորությամբ ուսումնասիրելով կոլեկտիվի առջև ծառացած դժվարությունները և դրանց հաղթահարման ուղիները, արտադրության կազմակերպման առաջավոր փորձը, առաջնորդվելով ղեկավարման ճիշտ մեթոդներով՝ Հ. Հարությունյանը, կուսկազմակերպության գործուն օգնությամբ, կարողացավ բարձրացնել արտադրության բոլոր օղակների ղեկավարների պատասխանատվությունն ու պահանջկոտությունը, մոբիլիզացնել կոլեկտիվի ուժերը ու նախկինում ետ մնացող և քննադատվող գործարանը դուրս բերել առաջավորների շարքը։

Կադրային կայուն ռեզերվի առկայությունը մեզ հնարավորություն է ընձեռում հարկ եղած դեպքում կատարել անհրաժեշտ փոփոխություններ, մարդկանց տեղաբաշխել ըստ իրենց կարողության։ Ահա շատերից ևս մեկը՝ Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Պարույր Ստեփանյանը։ Բամբակագործվածքային արտադրամիավորումում ենթավարպետ էր, առաջավոր ու նախաձեռնող, բարեխիղճ աշխատանքով ու հասարակական-քաղաքական ակտիվությամբ արժանացել էր լայն ճանաչման։ Այդ հատկանիշների համար էլ նրան ընդգրկել էինք կադրային ռեզերվում, հետո գործուղեցինք կուսակ-



ցական բարձրագույն դպրոցում սովորելու, ապա՝ երաշխավորեցինք գործվածքային ֆաբրիկայի կուսբյուրոյի քարտուղար։ Այժմ նա կատարում է գուլպա-նասկեղենի արտադրամիավորման կուսկոմիտեի քարտուղարի այնքա՜ն պատասխանատու պարտականությունը։ Նման օրինակները եզակի չեն։ Շարքային բանվորից են աճել երկաթուղային հանգույցի կուսկոմիտեի քարտուղար Թելման Վարդպարոնյանը, գործվածքային ֆաբրիկայի կուսբյուրոյի քարտուղար Միհրան Ստեփանյանը, մանարան ֆաբրիկայի արհկոմի նախագահ Գրիգելդա Գևորգյանը և ուրիշներ, որոնց համար խոսքի ու գործի միասնությունը գործունեության պարտադիր նորմ է։

ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում ընկ. Կ. Դեմիրճյանը, քաղաքային և շրջանային կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրելով կադրերի գործարար հատկանիշների զարգացման վրա, միաժամանակ խնդիր դրեց պայքարել նրանց կողմից կատարվող տնտեսավարման ամեն կարգի շեղումների դեմ։ Առանձին ձեռնարկություններում ու հիմնարկություններում գործերի անբավարար վիճակը ցույց է տալիս, որ դեռևս շատ անելիքներ ունենք ղեկավարների խոսքի ու գործի պատշաճ միասնությունն ապահովելու համար։ Բանն այն է, որ որոշ ղեկավար կադրեր չեն աշխատում գործիմացությամբ և նվիրումով, հանդես չեն բերում նախաձեռնություն ու սոցիալիստական ձեռներեցություն, խորությամբ չեն զբաղվում էկոնոմիկայի զարգացման հեռանկարներով։ Թերևս այդ է պատճառը, որ վերլուծական սարքերի փորձնական, հեծանիվի գործարանները, տրիկոտաժի ֆաբրիկան հաճախ են ձախողում պետական առաջադրանքների կատարումը։

Կուսակցությունը բացառում է կարգապահության ընդհանրապես որևէ կարգի խախտում, ինչպիսին էլ այն լինի՝ ֆինանսական, պայմանագրային, տեխնոլոգիական, թե աշխատանքային ու կատարողական։ Վերջին հաշվով, դա հանգեցնում է կուսակցական ու պետական կարգապահության թուլացման, պետական օրենքների խախտման, սոցիալիստական համակեցության նորմերի խաթարման։ Իսկ այդ ամենից տուժում է պետական գործը, վնաս է հասցվում հասարակության շահերին։ Այդպիսի վիճակ էր վերլուծական սարքերի փորձնական գործարանում (դիրեկտոր՝ Ջ. Բաղդասարյան)։ Աշխատանքային բոլոր օղակներում կարգապահության բացակայության պատճառով այստեղ թերակատարվում էին պետական պլանները, դրա հետ միասին խախտվում էին պայմանագրային պարտավորությունները, թանկարժեք մետաղների օգտագործման, լրացուցիչ վարձատրության սահմանված կարգը, կատարվում էին հավելագրումներ, կոլեկտիվում տիրում էր բարոյահոգեբանական անառողջ մթնոլորտ։ Այդ թերությունների համար ստիպված էինք կուսակցական խիստ տույժի ենթարկել դիրեկտորին և արձանագրել, որ անբավարար է սկզբնական կուսկազմակերպության վերահսկողությունը ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ։

Կարգապահության իսկական կրողները պետք է լինեն բոլոր կադրերը, առավել ևս ղեկավարները։ Վերջիններիս սխալը, ոչ ճիշտ քայլը, խոսքի ու գործի խզումը խիստ բացասական ազդեցություն են թողնում շրջապատի, կոլեկտիվի անդամների վրա։ Վ. Ի. Լենինը ժամանակին նշել է, որ եթե մենք կարգապահություն ենք սովորեցնում բանվորներին, ապա պարտավոր ենք սկսել հենց մեզնից։ Մինչդեռ, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, դեռևս կան այնպիսի ղեկավարներ, որոնք անտեսում են այդ պահանջները, դեռ ավելին չարաշահում են պաշտոնական դիրքը, նույնիսկ իրենց գրպանը շփոթում են պետական գրպանի հետ։ Այդպիսի վատ ղեկավարի օրինակ էր «Կոտայք» արտադրամիավորման Լենինականի կահույքի նորոգման մասնաճյուղի դիրեկտոր Մարտին Մանուկյանը։ Ժամանակին լուրջ ահազանգեր ստացանք նրա կոպտության, չհիմնավորված վարչարարության, տնավարության վերաբերյալ։ Հրավիրեցինք քաղկոմ, զրուցեցինք, հանդիմանեցինք ու խորհուրդներ տվեցինք, մի խոսքով՝ կամեցանք շտկել, օգնել նրան։ Սկզբնական կուսկազմակերպությունը քննարկեց նրա հարցը և բանավոր նկատողություն հայտարարեց։ Ճիշտ է, դիրեկտորը խոսք տվեց ձերբազատվել սխալներից, սակայն անցավ որոշ ժամանակ, և նա, փոխանակ համապատասխան

*Նվրակացություն անելու մեր դիտողություններից ու խորհուրդներից, բռնեց հանցագործության, կոնկրետ՝ պետական ունեցվածքի հափշտակության ուղին։ Հետևա՞նքը. Մ. Մանուկյանը հեռացվեց զբաղեցրած պաշտոնից և դատապարտվեց ազատազրկման։ Մ. Մանուկյանի օրինակը ինքնին վկայությունն է այն բանի, որ մենք չենք ճանաչել ղեկավար կադրին, չենք խորացել նրա էության մեջ։ Նմանօրինակ փաստերը հուշում են մեզ՝ մշտական ուշադրության կենտրոնում պահել ղեկավար կադրերի աշխատանքի ոճը, նրանց վարքագիծը։ Ղեկավարը ամեն տեղ և ամեն ինչում պետք է օրինակ ծառայի, լինի կարգապահ, ազնիվ։ Ղեկավարի պատիվն ու կոչումն իր ձեռքում է, նա պետք է թանկ գնահատի այն, իրեն հաշիվ տա յուրաքանչյուր քայլի համար, որովհետև կոլեկտիվի անդամը, շարքային աշխատողը, ի դեմս ղեկավարների, տեսնում է կուսակցության և սովետական պետության ներկայացուցչին, մեր օրենքների ու կյանքի նորմերի իսկական կրողներին։*

*Վերջերս ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումների լույսի ներքո քաղկոմի պլենումում քննարկեցինք կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության աշխատանքի բարելավման վիճակը և մշակեցինք ու հաստատեցինք միջոցառումների ընդարձակ պլան։ Այդ պլանի համապատասխան՝ առաջիկա տարիներին նախատեսվում է կուսքաղկոմի բյուրոյի նիստերում ու պլենումներում քննարկել կադրերի հետ տարվող աշխատանքին առնչվող բազմաբնույթ հարցեր, արմատապես բարելավել տնտեսական ու գաղափարախոսական կադրերի ուսուցումը, որակավորումն ու դաստիարակությունը, էապես բարձրացնել նրանց պատասխանատվությունը ձեռնարկությունների և հիմնարկությունների գործերի վիճակի, կոլեկտիվների բարոյահոգեբանական մթնոլորտի լավացման, ամենուրեք ամուր կարգապահություն հաստատելու համար։ Այդ կապակցությամբ կոնկրետ հանձնարարականներ ենք տվել քաղկոմի բաժիններին, քաղաքային սովետի գործկոմին։ Ընդ որում, միջոցառումները ներառում են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, նրանց խոսքի ու գործի միասնության ապահովման նպատակով տարվող ողջ աշխատանքը։*

*Այսօր կուսակցությունը պահանջում է արմատապես բարելավել ղեկավար կադրերի հետ տարվող աշխատանքը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար։ Մեր խնդիրն է, որպեսզի ղեկավար կադրերը լինեն ոչ միայն լավ տնտեսավարներ, այլև հմուտ դաստիարակներ, գաղափարական մարտիկներ։ Այս է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի պահանջը։*

---



# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ա. ՏՈՒՐՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

*ՍՈՊԱՑԱՅԻ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ բարդ ու բազմակողմանի պրոցես է, որի ընթացքում ստեղծվում է աշխատողի ու հասարակական գործչի, սպառողի ու քաղաքացու, հոգեպես զարգացած անհատի նոր տիպ։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնավորել են մեթոդաբանական այն կարևոր դրույթը, որ անհատի հոգևոր զարգացումը իրականացվում է հանրային-աշխատանքային և հեղափոխական-վերակերտիչ գործունեությանը նրա ունեցած ակտիվ մասնակցության շնորհիվ։ «Մարդիկ, որոնք զարգացնում են իրենց նյութական արտադրությունը և իրենց նյութական հաղորդակցումը,— գրել են նրանք,— իրենց այդ գործունեության հետ միասին փոխում են նաև իրենց մտածողությունը և իրենց մտածողության արդյունքները» (*К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 8, стр. 145*)։*

*ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառում նշվում է. «Կուսակցությունը ձգտում է հասնել նրան, որ մարդը մեզ մոտ դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, իրեն բնորոշ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով»։ Այս տեսակետից առանձնահատուկ ուշադրություն են պահանջում աշխատավորների և, մասնավորապես, երիտասարդության բարոյական դաստիարակության հետագա կատարելագործման հարցերը։ Լինելով գաղափարաքաղաքական և աշխատանքային դաստիարակության հետ օրգանական միասնության մեջ՝ բարոյական դաստիարակությունը տարածվում է արտադրական և հասարակական-քաղաքական գործունեության վրա, միջանձնային, ընտանեկան հարաբերությունների ու կենցաղի, այսինքն՝ մարդու և հասարակության ողջ կացութաձևի ու գործունեության վրա։*

*ՀամԼԿԵՄ-ը անշեղորեն ղեկավարվում է կոմունիզմի պայքարի հետ բարոյական դաստիարակության ունեցած անխզելի կապի մասին Վ. Ի. Լենինի ցուցումներով. «երիտասարդության դաստիարակության, կրթության և ուսուցման ամբողջ գործը պետք է լինի նրա մեջ կոմունիստական բարոյականության դաստիարակումը» (ԵԼԺ, հ. 41, էջ 367)։*

*Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հիման վրա աճել ու ավելի ու ավելի է ամրապնդվում նոր, իսկական մարդասիրական բարոյականությունը։ Նրա հիմնական սկզբունքները շարադրված են ՍՄԿԿ ծրա-*

կրում, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում և վավերագրված են ՍՍՀՄ սահմանադրության մեջ։ Դրանք են՝ հավատարմություն կոմունիզմի գործին, սեր դեպի սոցիալիստական հայրենիքը, դեպի սոցիալիզմի երկրները, բարեխիղճ աշխատանք հասարակության բարօրության համար. «Ով չի աշխատում, նա չի ուտում», յուրաքանչյուրի հոգատարություն հասարակական ունեցվածքը պահպանելու և բազմապատկելու նկատմամբ, հասարակական պարտքի բարձր գիտակցում, անհանդուրժողականություն հասարակական շահերի խախտումների նկատմամբ, կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն. «մեկը՝ բոլորի համար, բոլորը՝ մեկի համար», մարդասիրական հարաբերություններ և փոխադարձ հարգանք մարդկանց միջև. «մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր», ազնվություն և ճշմարտասիրություն, բարոյական մաքրություն, պարզություն և համեստություն հասարակական և անձնական կյանքում, փոխադարձ հարգանք ընտանիքում. հոգատարություն ծնողների, երեխաների դաստիարակության նկատմամբ, անհաշտություն անարդարության, պորտաբուծության, անազնվության, կարիերիզմի, շահամոլության նկատմամբ, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարեկամություն և եղբայրություն, անհաշտություն կոմունիզմի, խաղաղության և ժողովուրդների ազատության գործի թշնամիների նկատմամբ, եղբայրական համերաշխություն բոլոր երկրների աշխատավորների, բոլոր ժողովուրդների հետ։

Կոմերիտմիության անմիջական ներգործությունը անհատի բարոյական ձևավորման վրա սկսվում է արդեն դպրոցական կյանքի մեջ մտնելու պահից և շարունակվում մինչև աշխատանքային հասունության շեմը։ Աճող անհատին ներկայացվող բարոյական պահանջների փուլերն ու հաջորդայնությունը, դրանց աճն ու բարդացումը շարադրված են հոկտեմբերիկների կանոններում, պիոներների օրենքներում և ՀամԼԿԵՄ կանոնադրության մեջ։

Ձևավորվող մարդկային անհատի անցումը այդ աստիճաններով մի անգամ ևս հաստատում է, որ բարոյական, ինչպես նաև գաղափարաքաղաքական, աշխատանքային դաստիարակությունը պետք է իրականացվի և իրականացվում է՝ հաշվի առնելով սոցիալական, տարիքային, հոգեբանական և պրոֆեսիոնալ առանձնահատկությունները։

Դաստիարակչական աշխատանքի հիմնական գլխավոր ուղղությունների միասնությունն ու անխզելիությունը դրսևորվում են նրանց փոխներթափանցմամբ, փոխգործողությամբ և արտահայտվում են ինչպես դաստիարակության բաղադրիչ տարրերի՝ գիտելիքի, համոզմունքի, գործողության, այնպես էլ պրակտիկայի բազմապիսի ձևերի ու միջոցների ընդհանրությամբ։ Չկա դաստիարակչական աշխատանքի այնպիսի մի ձև, որը չպարունակեր և որին չներկայացվեին բարոյական բնույթի պահանջներ։ Դրա հետ մեկտեղ բարոյական դաստիարակությունն ունի նաև իր առանձնահատկությունները, նոր մարդու ձևավորման վրա ներգործության յուրահատուկ ձևերը։ Այդ առանձնահատկությունների և յուրահատուկ ձևերի հիմքում ընկած է աշխարհընկալման ձևավորման պրոցեսը։ Այն անցնում է մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման կիզակետով։

Յուրաքանչյուր տարիքային ժամանակաշրջան ունի աշխարհընկալման իր ձևը։ Օրինակ, մանկությանը (հոկտեմբերիկի շրջանի) հեքիաթների աշխարհն է, մանկական խաղերի աշխարհը, որոնց մեջ արդեն կան բարոյականության՝ բարու և չարի, համատեղ ապրումների ու ուրախության տարրական հասկացությունները։ Պատանեկության հասակում (պիոներական շրջանը) ընդլայնվում են անհատի ձևավորման մարդասիրական սկզբունքները, տեղի է ունենում կոլեկտիվիզմի տարրերի գիտակցում, դրվում են անհատական բարոյական իդեալի և հասարակական իդեալի մերձեցման հիմքերը։

Մարդասիրությունը և կոլեկտիվիզմը կազմում են սովետական մարդու բարոյականության հիմքը՝ արտահայտելով նրա հարգանքը կոլեկտիվի, հասարակության նկատմամբ, ուշադրությունը դեպի մարդիկ։ Ուստի սովետական երիտասարդության կոլեկտիվիստական գիտակցությանը հատուկ են ճշմարտասիրությունը, ազնվությունը, անկեղծությունը շրջապատի հետ ունեցած հարաբերություններում, նվիրվածությունը կոմունիստական իդեալներին, դրանք



հաստատելու կամքը և պատրաստակամությունը։ Հենց այդ հատկություններն էլ ընկած են երիտասարդության (կոմերիտական հասակ) բարոյական դաստիարակության հիմքում։ Նրանց ձևավորումը տեղի է ունենում ինչպես աշխատանքի, ուսման ոլորտում, այնպես էլ սոցիալիստական հասարակության արտադրողական ուժերի, արտադրական հարաբերությունների և կուլտուրայի զարգացման հետ արմատական փոփոխություններ կրած կենցաղի ոլորտում։

Երիտասարդության բարոյական դաստիարակության նպատակով կատարվող կոմերիտական աշխատանքում, հասարակական ինքնավարության ձևերի ու մեթոդների մեջ կարևոր տեղ է հատկացվում կոմերիտական ժողովներին, պիոներական հավաքներին, շեֆական աշխատանքին, անվճար աշխատանքի, սոցիալիստական կարգապահության, քննադատության և ինքնաքննադատության ձևերին, հասարակական ներգործությանը (կոմերիտական տույժեր), բարոյական և նյութական խրախուսման միջոցառումներին, իրավական, բարոյագիտական և գեղագիտական դաստիարակության միջոցներին։ Հայաստանի հանրապետական կոմերիտական կազմակերպության մեջ լայն տարածում են ստացել «Հոգատարություն» և երիտասարդական կոլեկտիվին պատերազմի ու աշխատանքի հերոսների անուններ շնորհելու իրավունքի համար ծավալված շարժումները, Հայրենական մեծ պատերազմի տարիներին զոհվածներին կոմերիտական-երիտասարդական բրիգադների կազմի մեջ մտցնելը և նրանց փոխարեն աշխատելը՝ վաստակած միջոցները հատկացնելով խաղաղության ֆոնդին և այլն։ 17 հազարից ավելի պատանիներ ու աղջիկներ մասնակցում են կամավոր ժողովրդական դրուժինաների գործունեությանը 489 կոմերիտական օպերատիվ ջոկատների կազմում, 18.761 երիտասարդներ ընտրվել են ժողովրդական վերահսկողության մարմիններում, տասներորդ հնգամյակի տարիներին 25.658 մարդ և 629 կոլեկտիվ արժանացել են ՀամԼԿԵՄ Կենտկոմի և Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի պարգևներին։ Այսպիսիք են հանրապետության պատանեկության ակտիվ կենսադիրքորոշման մի քանի գծերը։

Սոցիալիստական հասարակության զարգացման տվյալ փուլում առանձնապես անհրաժեշտ է, որ մեր ողջ երիտասարդությունը ոչ միայն լավ իմանա կոմունիստական բարոյականության նորմերը, այլև անշեղորեն հետևի դրանց. այս է բարոյական դաստիարակության կարևորագույն խնդիրը։

ՍՄԿԿ-ի և սովետական պետության, երկրի բոլոր հասարակական կազմակերպությունների ողջ կենսագործունեության հիմքում ընկած է կոմունիստական բարոյականությունը։ Սակայն դեռ նկատվում են անհատապաշտության ու եսամոլության, մեծամտության ու սնապարծության, շողոքորթության ու ստորաքարշության, խնամիության ու խմբակայնության, բյուրոկրատիզմի ու կարիերիզմի առանձին դրսևորումներ։

Կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը համադրելով ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշման պահանջների հետ, անհրաժեշտ է նշել, որ հաճախ դաստիարակության մասսայական ձևերի ետևում աչքաթող է արվում կոնկրետ մարդը, կոնկրետ աշխատանքը նրա հետ. Հատուկ ուշադրություն է պահանջում սովորող երիտասարդությունը։ Հենց այստեղ, այդ երիտասարդության շրջանում են ամենից հաճախ նկատվում խնամառուական տրամադրությունների ու սպառողական հոգեբանության, քաքաղաքական միամտության ու ուշացած քաղաքացիական ձևավորման դրսևորումներ։ Նշված թերությունները վերացնելու հիմնական ուղիներից մեկն է սովորող երիտասարդության մասսայական ներգրավումը հանրօգուտ աշխատանքի մեջ։

Այսօր գաղտնիք չէ, որ սովետական մարդու կենսամակարդակի բարձրացումը, նրա բարեկեցության աճը խիստ սահմանափակել են (հատկապես քաղաքային պայմաններում) դպրոցական երիտասարդության կողմից ընտանիքում աշխատանքային հմտություններ ձեռք բերելու հնարավորությունը։ Եվ դա օրինաչափ է. դրա հետ մեկտեղ օրինաչափ է նաև դպրոցականներին հանրօգուտ աշխատանքի մեջ ներգրավելու պահանջը։ Դժբախտաբար, չնայած

ձեռնարկված միջոցներին, այս հարցը դեռևս լիովին չի լուծվել։ Գործերի վիճակը հատկապես անբարեհաջող է սովորող տղաների շրջանում։

Սպառողական հոգեբանության դրսևորում է այն, երբ որոշ երիտասարդներ խուսափում են նյութական արտադրության ոլորտում աշխատելուց։ Նրանց կարծիքով, ուրիշները պետք է հաց աճեցնեն, տներ կառուցեն, հաստոցի մոտ կանգնեն, բայց միայն ոչ իրենք։ «Անձնական եսասիրությունը ստորության հարազատ հայրն է»,— գրել է Ա. Մ. Գորկին (Собр. соч., т. 26, М., 1953, стр. 129)։ Անհատապաշտությունը ծնում է պորտաբույծներ, սոցիալիստական սեփականության հափշտակողներ, գռփողներ ու անբաններ։ Հոգատարությունը սեփական բարեհաջողության մասին, ժլատությունը, անհարգալից վերաբերմունքը կոլեկտիվի հանդեպ, հոգատարության բացակայությունը պետության և հասարակության շահերի մասին աղճատված հոգեբանության տեր մարդկանց մղում են այնպիսի հակահասարակական արարքների, ինչպիսիք են գողությունը, սպեկուլյացիան, կաշառակերությունը, մի խոսքով, այն ամենը, ինչ տանում է դեպի անհատի աստիճանական անկում։ Եվ, ուստի, այսօր, երբ անշեղորեն աճում է սովետական մարդկանց բարեկեցությունը, այնքան հրատապ են հնչում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի խոսքերն այն մասին, որ «աշխատանքը և միայն աշխատանքը, դրա ռեալ արդյունքները, և ոչ թե ինչ-որ մեկի սուբյեկտիվ ցանկությունը կամ բարի կամքը պետք է որոշի յուրաքանչյուր քաղաքացու բարեկեցության աստիճանը» (Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր։ «Հայաստան» հրատ., Ե., 1983, էջ 17)։

Դաստիարակչական աշխատանքի մյուս ուղղությունների հետ միասին այս ամենը կոմերիտական կազմակերպություններից պահանջում է հատուկ ուշադրություն դարձնել երիտասարդների մեջ ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր արժեքների սպառման կուլտուրայի ձևավորման վրա, ակտիվ հարձակողական պայքար մղել կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ։

«Անհրաժեշտ է... նպատակասլաց կերպով ձևավորել աճող սերնդի առողջ հետաքրքրությունները, հաստատակամորեն պայքարել ծխելու, հարբեցողության և մյուս վնասակար սովորույթների ու հակումների դեմ, երիտասարդներին հետևողականորեն պատվաստել ֆիզիկական և բարոյական կատարելության պահանջմունք, դաստիարակել վեհ հատկություններ, արիություն և դիմացկունություն, հայրենիքը, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու պատրաստակամություն» (Կ. Ս. Դեմիրճյան։ Կուսակցության հոյակապ կանխագծումների իրականացման առաջին գծում։ «Հայաստան» հրատ., Ե., 1982, էջ 39)։

Կոմերիտական կազմակերպությունները պետք է ձգտեն պատանիների ու աղջիկների գիտակցության ու վարքագծի մեջ հաստատելու կոմունիստական իդեալներ, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները, բարոյական նորմերը դարձնելու ներքին համոզմունքներ, կենսադիրքորոշում։

Անհատի բարոյական կերպավորման, նրա հոգևոր դիմագծի ձևավորման գործում բացառիկ կարևոր դեր է կատարում ազատ ժամանակը, որը դարձել է մեր օրերի կենսական պրոբլեմը։ Ազատ ժամանակի ըմբռնման մեջ սովետական հետազոտողները ելնում են Կարլ Մարքսի այն դրույթից, որ ազատ ժամանակը «ազատ է մնում հաճույքների համար, ազատ ժամանցի համար, որի շնորհիվ ասպարեզ է բացվում ազատ գործունեության ու զարգացման համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26, стр. 264)։ Ազատ ժամանակը լայն ասպարեզ է անհատի զարգացման համար։ Իսկ այն կապակցությամբ, որ սոցիալիզմի ու կոմունիզմի նպատակն է հոգեպես հարուստ, համակողմանի զարգացած մարդը, ազատ ժամանակը այդ հասարակության հարստության չափանիշն է։

Ազատ ժամանակը սոցիոլոգիական կատեգորիա է, որն ունի կոնկրետ պատմական բովանդակություն։ Զարգացած սոցիալիզմի պայմաններում ազատ ժամանակն ավելի ու ավելի է դառնում անհրաժեշտ ժամանակ անհա-



տի համակողմանի զարգացման, կրթության, մտավոր զարգացման, սոցիալական ֆունկցիաներ կատարելու, ընկերական հաղորդակցման, ֆիզիկական ու մտավոր ուժերի ազատ խաղի համար...» (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 274), ըստ Լենինի՝ ժամանակ հանգստի համար, իր զարգացման համար, իր իրավունքներից օգտվելու համար իբրև մարդու, ընտանիքի տիրոջ, քաղաքացու։ Անհատի համակողմանի զարգացմանը նպաստում են ազատ ժամանակի այնպիսի տարրեր, ինչպես ինքնակրթության և հասարակական աշխատանքի վրա, ստեղծագործական գործունեության և սիրողական զբաղմունքների, ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի, հանգստի և զվարճանքների վրա ծախսված ժամանակը։ Հանգստի հենց այդ ակտիվ տեսակներն են ապահովում կուլտուրայի, ընդհանուր և մասնագիտական գիտական գիտելիքների մշտական աճը, արտադրողական աշխատանքի բարձրացումը։

Ազատ ժամանակը, որպես սոցիալոգիական կատեգորիա, սերտորեն կապված է ուրիշ կատեգորիաների և ամենից առաջ այնպիսի կատեգորիաների հետ, ինչպիսիք են անհատի պահանջմունքներն ու շահերը։ Այս կապը կրում է դիալեկտիկական բնույթ։ Մի կողմից մարդու հոգևոր պահանջմունքները սոցիալական պահանջմունքներ են, ունեն կոնկրետ պատմական բնույթ, սոցիալականորեն դետերմինացված են։ Նրանք ձևավորվում են հասարակական միջավայրի, գաղափարախոսական աշխատանքի և վերջին հաշվով արտադրության սոցիալիստական եղանակի ազդեցության տակ, իսկ վերջինը իր վճռական ներգործությունն է ունենում ինչպես աշխատանքի, այնպես էլ ոչ աշխատանքային ժամանակի բնույթի ու բովանդակության վրա։ Այդ պահանջմունքները այդպես ձևավորվում են ոչ միայն ազատ ժամանակի շրջանակներում։ Հոգևոր պահանջմունքները պայմանավորում են մարդու բազմապիսի գործունեությունը ազատ ժամանակ։

Մյուս կողմից, ազատ ժամանակի օգտագործման բնույթը փոփոխում ու զարգացնում է մարդու հոգևոր պահանջմունքները, որոնք այնուհետև նորից են ձևափոխում ազատ ժամանակի զբաղվածության բովանդակությունն ու տեսակները։ Այստեղից էլ պրակտիկ գործունեության երեք մոմենտները։ Առաջինը ձգտումն է աշխատանքի ժամերից դուրս մնացած ժամանակի կառուցվածքում մեծացնել ազատ ժամանակի բաժինը, երկրորդը՝ մարդու մեջ դաստիարակել ազատ ժամանակը կազմակերպելու կուլտուրա և հոգևոր արժեքների սպառման կուլտուրա։

«Հոգևոր սպառումը հոգևոր պահանջմունքների բավարարման պրոցես է։ Այն ունի իր առանձնահատկությունները նյութական պահանջմունքների համեմատությամբ։ Հոգևոր արժեքները, հանդես գալով որպես սպառման առարկա, չեն «չքանում» հոգևոր պահանջմունքների բավարարման պրոցեսում, այլ դառնում են մարդու հոգևոր աշխարհի հարստություն» (А. К. Уледов. Духовная жизнь общества. М., Мысль, 1980, стр. 91)։ Հոգևոր սպառման առանձնահատկություն է նաև այն, որ նրա պրոցեսում տեղի է ունենում հոգևոր արժեքների ստեղծագործական յուրացում, այսինքն, սպառողը ինչ-որ չափով ինքն էլ է դառնում հոգևոր արտադրող։ Այստեղից էլ պրակտիկ գործունեության երրորդ մոմենտի կարևորությունը՝ ձգտումը ազատ ժամանակի ընդհանուր բյուջեում մեծացնելու հոգևոր սպառման ժամանակի տեսակարար կշիռը (բայց, իհարկե, ոչ թե ֆիզիկական կատարելագործման համար անհրաժեշտ ժամանակի հաշվին)։

Մարդու հոգևոր զարգացման հետ կապված գործնական խնդիրների լուծման կապակցությամբ ծագում են հոգևոր պահանջմունքների կառուցվածքին համապատասխանող սպառման կառուցվածքի հիմնավորման հարցը, հոգևոր պահանջմունքների առավելագույն բավարարման ուղիներն ու միջոցները որոշելու անհրաժեշտությունը։

Կոմերիտմիության հետաքրքրությունը ազատ ժամանակի պրոբլեմի նկատմամբ թելադրված է աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ուժեղացման համար ամեն բան անելու անհրաժեշտությամբ, որպեսզի երիտասարդության ազատ ժամանակը լրիվ դառնի իր ազդեցության ոլորտը։

Երիտասարդության կողմից ազատ ժամանակի յուրաքանչյուր րոպեի խելացի օգտագործման համար մղվող պայքարը սովետական մարդու կուլտուրայի համար, նրա գաղափարական և բարոյական կերպարը իսկական կոմունիստական իդեալներին մոտեցնելու համար մղվող ընդհանուր պայքարի մի մասն է։

Հանրապետության կոմերիտական կազմակերպությունները մեծ ուշադրություն են դարձնում ազատ ժամանակի կազմակերպմանը։ Ազատ ժամանակի կազմակերպումը ինքնանպատակ չէ, այլ անհատի ֆիզիկական ու հոգևոր ձևավորման պրոցեսի վրա ակտիվորեն ներգործելու միջոց։ Մեզ մոտ գործում են ինքնագործունեության 5.833 երիտասարդական գեղարվեստական կոլեկտիվներ, հանգստյան օրվա 220 ակումբներ, 85 դիսկոտեկաներ, 1.150 սիրողական, ստեղծագործական միավորումներ, 960 հազար պատանիներ ու աղջիկներ ընդգրկված են ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մշտական պարապմունքների մեջ։ Տարիքային առանձնահատկությունները հաշվի առնելով՝ ստեղծված են «Կաշվե գնդակ», «Ոսկե տափօղակ», «Սպիտակ նավակ» ակումբներ, սիստեմատիկաբար մրցումներ են անցկացվում երիտասարդական թերթերի մրցանակների համար և այլն։ Անցած հնգամյակի տարիներին 30 հազարից ավելի երիտասարդների ազատ ժամանցը կազմակերպված է եղել «Սպուտնիկ» միջազգային երիտասարդական տուրիզմի բյուրոյի միջոցով։

Ազատ ժամանակի կազմակերպման, բարոյական համոզմունքների և հոգևոր կուլտուրայի ձևավորման գործում Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը կարևոր տեղ է հատկացնում ստեղծագործական երիտասարդության հետ տարվող աշխատանքին։ Ուժեղացել է ուշադրությունը նրա գաղափարաբարոյական դաստիարակության, պրոֆեսիոնալ վարպետության և հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման նկատամամբ։ Սիստեմատիկաբար կազմակերպվում են նրանց հաշվետվությունները աշխատավորական կոլեկտիվներում, ստեղծագործական փառատոներ և ստուգատեսներ։ Ակտիվորեն օգտագործվում են բարոյական և նյութական խրախուսման միջոցները։ Լենինյան կոմերիտմիության դափնեկիրներ են դարձել երիտասարդ գրողներ, կոմպոզիտորներ, նկարիչներ, ճարտարապետներ, գեղարվեստական կոլեկտիվներ, ստեղծագործական երիտասարդության տասնյակ ներկայացուցիչներ պարգևատրվել են Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմի և ստեղծագործական միությունների մրցանակներով՝ «Տարվա լավագույն ստեղծագործության համար»։

Երիտասարդության ազատ ժամանակի կազմակերպման աշխատանքում հետզհետե ուժեղանում է կոմերիտմիության փոխգործողությունը մարզական կազմակերպությունների և կուլտուր-լուսավորական հիմնարկությունների հետ։

Դրա հետ մեկտեղ երիտասարդության ազատ ժամանցի կազմակերպման գործում դեռևս կան շատ թերություններ ու բացթողումներ։ Դաստիարակչական տեսանկյունից սուր է դրված ազատ ժամանակի ռացիոնալ կազմակերպման հարցը։ Այն անմիջականորեն կապակցվում է երիտասարդների մեջ խելացի պահանջմունքների և վարվելակերպի կուլտուրայի ձևավորման հետ։

Մեր երիտասարդության կյանքում, որպես կանոն, գերակշռում են հանգստի այն ակտիվ ձևերը, որոնք կապված են անհատի ֆիզիկական և հոգևոր զարգացման հետ։ Սակայն, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, լուրջ անհամամասնություն է առաջացել հանգստի պասսիվ մասսայական տեսակների և ազատ ժամանակ ինքնուրույն, անհատական ստեղծագործության հնարավորությունների միջև։ Թույլ է ըստ բնակության վայրի տարվող աշխատանքը։ Կոմերիտմիության կոմիտեները, իրենց ներգործության ձևերը կենտրոնացնելով աշխատանքային օրերի արտաժամյա ժամանակը կազմակերպելու վրա, բավարար չափով ակտիվ չեն երկու հանգստյան օրերին։

Ազատ ժամանակի կազմակերպման գործում առանձնահատուկ կարևոր նշանակություն է ստանում նաև ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր սպառման հանրային ֆոնդերի օգտագործման կուլտուրայի դաստիարակումը։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է անհանդուրժողական վերաբերմունք դաստիարակեն գռեհկության, անպատկառության, շտամպի նկատմամբ, հանդես գան գաղափարազրկության, գեղարվեստական անճաշակության, դատարկ զվարճալիքների դեմ, անհաշտ պայքար մղեն երիտասարդական միջավայրը Արևմուտքի ցածրորակ մասսայական կուլտուրայի ներթափանցման դեմ։ Չի կարելի մոռանալ, որ ազատ ժամանակը այն ժամանակը չէ, որ ազատ է հասարակության հանդեպ եղած պատասխանատվությունից։



* * *

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ ուժեղանում, ավելի ու ավելի ներդաշնակ է դառնում կյանքի տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր բնագավառների փոխադարձ կապը։ Դա անհրաժեշտ է դարձնում նոր մարդու, համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորման վրա դաստիարակչական բոլոր գործոնների՝ տեխնիկատնտեսական, կազմակերպական, գաղափարախոսական գործոնների ներգործության է՛լ ավելի մեծ համաձայնեցվածությունը։

Կոմերիտական բոլոր կազմակերպությունները կոչված են տիրապետելու դաստիարակչական աշխատանքի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման արվեստին։ Նրանք պետք է գիտականորեն կազմակերպեն կոմունիստական դաստիարակության պրոցեսը, որոշեն նրանց կիրառման հաջորդականությունը՝ հաշվի առնելով երիտասարդության զանազան խմբերի ու կատեգորիաների առանձնահատկությունները։ Խոսքը ուսուցումը երիտասարդության արտադրական և հասարակական-քաղաքական ակտիվության զարգացման հետ համատեղելու մասին է, գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակությունը դաստիարակչական աշխատանքի մյուս ուղղությունների հետ զուգակցելու մասին, դաստիարակչական պրոցեսում նյութական և բարոյական խթանները, համոզման, կոմերիտական ներգործության միջոցները, հասարակական քննադատությունը ճիշտ օգտագործելու մասին, աշխատավորական կոլեկտիվում և ըստ բնակության վայրի տարվող դաստիարակչական աշխատանքի մասին, ուսումնական հաստատությունների, նախադպրոցական, արտադպրոցական, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, արհմիութենական, մարզական, դոսաաֆական և այլ կազմակերպությունների հետ կոմերիտական կազմակերպությունների գործողությունների համաձայնեցվածության մասին։

Մեր կյանքի բոլոր բնագավառներում աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության պահանջը ուղղակիորեն առնչվում է նաև նոր մարդու, համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորման պրոցեսին։ Գիտականորեն կազմակերպել այդ պրոցեսը, հաշվի առնել ընթացիկ խնդիրները, կանխանշել հեռանկարը, կոորդինացնել դաստիարակությամբ զբաղվող զանազան օղակների գործունեությունը. ահա այսպիսի խնդիրներ է առաջադրում կուսակցությունը, և կոմերիտմիության պատվի գործն է հմտորեն ու ակտիվորեն մասնակցել դրանց իրականացմանը։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՌԹԻՎ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ առանձնահատուկ շեշտեց բարոյական արժույթների դերը սովետական հասարակության կյանքում։ Հատկապես կարևորվեց հասուն սոցիալիստական հասարակության կենսագործունեության տարբեր ոլորտներում կոմունիստական բարոյականության նորմերի հետևողական արմատավորումը։ Այսօր մարդը դեռևս հաճախ հանդես է գալիս իբրև բարոյական ներգործման օբյեկտ, ոչ միշտ է նրա գործունեությունը դրսևորվում բարոյական նորմերի հաստատման մարզում։ Տակավին չեն բացահայտված ինքնադաստիարակության բոլոր գումարելիները։

Հիշենք, որ, բացառելով վերացական մարդու մասին պատկերացումը, ընկալելով նրա էությունն իբրև բոլոր հասարակական հարաբերությունների հանրագումար, մարքսիզմը ժխտեց նաև հասարակությունը ֆետիշացնելու պատկերացումները, երբ այն համարվում էր իբրև մարդուց անկախ կառուցվածքների միագումար։ Ըստ Մարքսի հասարակությունը մարդն ինքն է՝ բազմապիսի առնչություններում, մարդկանց միջև հասարակական հարաբերությունների գումար է։

Բարոյականությունը մարդու և հասարակության կյանքի իդեալական պատկերն է, որը խոր արմատներ ունի իրականության նյութական ու տնտեսական բազիսում և միայն կոնկրետ սոցիալ-խմբային, դասակարգային հստակ բնութագրումների շնորհիվ կարելի է ըմբռնել դրա էությունը։ Մարքսիզմ-լենինիզմի դասականները բացահայտեցին բարոյականության, հատկապես բուրժուական բարոյականության դասակարգային բնույթը։ Նրանք մերկացրին բուրժուազիայի էթիկական, կրոնական, միստիկական ֆրազների գաղափարական էությունը, որը հանգում էր մասնավոր սեփականատիրության պաշտպանմանը։

Մարքսիստական էթիկան, իբրև կոմունիստական հասարակության կառուցման պրակտիկ ուղեցույց, և՛ գիտական է, և՛ կուսակցական, որտեղ օբյեկտիվորեն արտացոլված են ու տեսականորեն իմաստավորված աշխատավոր զանգվածների արմատական շահերը, բնորոշվում են դրա գաղափարական ֆունկցիայի բովանդակությունը։ Սոցիալական իրականության մասին ոչ բոլոր գիտելիքներն են գնահատվում բարոյականության չափանիշներով, այլ միայն այն արժույթները, որոնք անմիջականորեն առնչվում են հասարակության ու անհատի փոխկապվածության պրոբլեմին։

Ի տարբերություն մարքսիստների, որոնց համար բարոյականության մեջ ճշմարտացիությունն ունի ոչ միայն տեսական, այլև գործնական նշանակություն, բուրժուական սոցիոլոգիան ճշմարտացիությունը հակադրում է բարոյականության արժույթին, պիտոյականության սկզբունքին։ Պատահական չէ, որ բուրժուական բարոյագիտության մեջ ճշմարտացիությունը փոխարինվում է պրագմատիկական մոտեցմամբ։ Ըստ մարքսիզմի, արժույթն ու ճշմարտությունը նույնական հասկացություններ չեն։ Արժույթը ենթակա է գիտական հետազոտման, կարող է ունենալ կեղծ կամ ճշմարիտ բովանդակություն ու նշանակություն։ Արժութային կատեգորիաների ճշմարտության կամ կեղծության չափանիշը բխում է սուբյեկտների բարոյական գիտակցության համապատասխանումից հասարակական զարգացման տվյալ աստիճանին։ Արժութային կատեգորիաները կորցնում են իրենց օբյեկտիվ իմաստը, երբ դիտվում են հասարակական կյանքի ռեալ պրոցեսներից կտրված՝ ապրիորի արված չափանիշներով։

Լինելով հետևողական օբյեկտիվ գիտություն, մարքսիստական էթիկան հենվում է ոչ թե բարոյական գործոնների, երևույթների թվարկման կամ մակերեսային նկարագրման վրա, այլ բացահայտում է վերջիններիս ներքին էությունն ու բովանդակությունը, սահմանում դրանց սոցիալական ֆունկցիան, զարգացման միտումը։ Ճշմարտությունն իր ուրույն տեղն ունի մարքսիստական էթիկայում, թափանցում է դրա բոլոր հասկացությունների, կոնցեպցիաների, գաղափարների ու կատեգորիաների մեջ, սահմանում դրա գիտական եզրակացությունների կիրառելիությունը հասարակության ու անհատի բարոյական զարգացման պրակտիկայում։ Այդուհանդերձ, հնարավորություն է ընձեռվում ճշգրիտ ու կոնկրետ տարբերություն անցկացնելու բարոյականության՝ իբրև գաղափարախոսության, գիտական ու ոչ գիտական ըմբռնումների միջև։ Տրվում են դրա այս կամ այն սիստեմի օբյեկտիվ գնահատականը, հասարակական զարգացման պահանջներին դրա համապատասխանությունը կամ անհամապատասխանությունը։

Ճշմարտությունը էթիկայում ունի իր առանձնահատկությունները։ Այն այստեղ դրսևորվում է ո՛չ թե անմիջականորեն, «նյութականացված» տեսքով, այլ իբրև դատողությունների ու գնահատումների գնոսեոլոգիական հիմք։ Էթիկայում ճշմարտությունը կոնկրետ դեպք է և պետք է քննվի օբյեկտիվորեն, զերծ սուբյեկտիվ մտայնություններից։ Առաջադիմական ուսմունքներում ճշմարտությունը դիտվել է «բարու» և «չարի», «արդարության» և «անարդարության» կատեգորիաների հետ սերտորեն կապակցված։ Իհարկե, նման կապը չի նշանակում ճշմարտության նույնացումը էթիկական կատեգորիաների հետ կամ դրանց փոխակերպում, ինչպես այն դիտվել է իդեալիստական, կրոնական էթիկայում։ Քննադատելով պլյուրալիզմի փիլիսոփայությունը և մեթոդաբանությունը, մարքսիզմ-լենինիզմը հաստատում է, որ գիտական գիտելիքի միասնությունը բացառում է ճշմարտությունների բազմաթիվությունը։ Ճշմարտությունը մեկն է։

Էթիկայում ճշմարտության պլյուրալիզմի ընդունումը ոչ միայն խարխլում է դրա օբյեկտիվ հիմքերը, այլև ժխտում գաղափարական ֆունկցիայի գիտականությունը։ Իսկական պրոգրեսիվ ու ճշմարիտ կարող է լինել այն բարոյականությունը, որն իր գաղափարախոսական պահանջներում ելնում է հասարակության զարգացման օրենքների գիտական իմացությունից։ Նման բարոյականություն է սոցիալիստականը, որը, արտահայտելով մեծամասնության շահերը, ճշմարտացի է արտացոլում հասարակական հարաբերությունները։ Բարոյական հարաբերությունները սոցիալականի դրսևորում են, դրա առանձնահատկությունների, հակասությունների արտացոլում։ Այն չի կարելի հանգեցնել սոսկ սուբյեկտիվ բարոյական ընտրության արդյունքի, մանավանդ առանձին, մեկուսացված անձի։

Հիշենք, որ սոցիալական պրակտիկան բուրժուական անձնավորության մոտ ձևավորեց «շահամոլության տրամաբանությունը» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 1, стр. 142)։ Այն դիտվեց իբրև մարդու էության անբաժանելի հատկանիշ, իսկ հասարակական բարօրությունը հռչակվեց ֆիկցիա։ Այդ պայմաններում երկատվեց բուրժուական բարոյական համակարգը։ Անհատի իրավունքների ու պարտականությունների ներդաշնակումը իրականության

դարձավ։ Մի կողմից առաջացավ «ակտիվիզմի ու պարտքի բարոյականություն», որն արժանի համարեց սոսկ այն, ինչ մարդ պարտավոր է անել անկախ իր ցանկությունից։ Մյուս կողմից՝ «հեդոնիզմի ու երջանկության բարոյականություն», որի համար բարոյապես արդարացուցիչ է միայն այն, ինչ մարդ ցանկանում է, անկախ ամեն մի պիտոյականության սկզբունքից։

Բուրժուական հասարակությանը բնորոշ է և այն, որ «դիմազրկվում են» բարոյական հարաբերությունները։ Մարդն առարկայի նման դառնում է ֆունկցիոնալ առումով օգտագործման իր, որի նշանակությունը գլխավորապես չափվում է նրա կատարած ծառայությունների արժեքով։ Այնտեղ, որտեղ դա չկա, կամ ի հայտ է գալիս կեղծ բարեպաշտությամբ քողարկված սպասարկման մոտիվը, կամ ֆիքսվում է նման վերաբերմունքի պատահականությունը։ Առավել ռելիեֆ բարոյական օտարումը դրսևորվում է կենսագործունեության արտադրական ու կառավարչական ոլորտներում։ Այստեղ անհատը անում է ձերբազատվելու տնտեսական ու կառավարչական դիմակներից, չենթարկվելու իրեն թելադրված սոցիալական դերերին, ֆունկցիոնալ նշանակումներին, դրանց կատարման նորմերին ու կանոններին։ Սոսկ ձևական ցուցանիշներով վարքագծի այդ կարգավորիչները կրում են բարոյական բնույթ։

Երբ ողջ քաղաքակրթությունը, Մարքսի արտահայտությամբ, հանդես է գալիս իբրև «համընդհանուր օգտակարության սիստեմ», բարոյականությունը անխուսափելիորեն կորցնում է իր գործունեությունը։ Հիրավի կապիտալիզմը թշնամի է հոգևոր արտադրության որոշ տեսակների, այդ թվում բարոյական արժույթների արտադրությանը։

Պետական մոնոպոլիստական կապիտալիզմի հաստատումը և կապիտալիստական արտադրաեղանակի ընդհանուր ճգնաժամը նպաստեցին բուրժուական ավանդական անհատական դասական բարոյականության մահացմանը։ Ավանդական ինդիվիդուալիզմը չանհետացավ, այլ ետ մղվեց։ Մասնավոր շահի իրացումը, «կարիերիայի գծագիրը» բուրժուական ինդիվիդիումի համար դարձավ օրգանապես կախված հավակնորդի հաջողությունից։

«Բարեգործների» շրջանում նսեմանում է անձնական ձեռներեցության նշանակությունը։ Զարգացման լրացուցիչ խթան են ստանում սոցիալական պատվախնդրությունը, շահամոլությունը և այլն։ Այդ հիման վրա ձևավորվում են «բիզնեսի գործարար էթիկան» և ավելի լայն «կորպորատիվ բարոյականությունը»։ Այն պահանջում է անպայման նվիրվածություն տվյալ կորպորացիայի շահերին, դրա ծառայական կոդեքսի բոլոր պատվիրանների կատարում։ Սոցիալական վերահսկողության ֆունկցիան ամրակայվում է խմբային «հասարակական» կարծիքին, որը սատարում է ոչ միայն ներխմբային, այլև ընդհանուր դասակարգային նորմերը։

Բուրժուական բարոյականության զարգացման արդի փուլում անձնական հաջողության ձգտումը ժխտում է ինքնամոռացումը, իսկ կուտակելու տենչին միախառնվել է հաճույքների ու շվայտ զվարճանքի միտումը։ Միայն սպառման ոլորտում է բուրժուական ինդիվիդը իրեն զգում հարազատ տարերքում։ Իսկ նպատակային կենսագործունեությունը ստեղծված իրավիճակում նրա համար խոչընդոտ է դառնում։ Բարոյական վարքագծի համակարգում առավելապես շեշտվում են հարմարվողականությունն ու հաշվենկատությունը։ Դա հանգեցնում է նրան, որ միջանձնային հարաբերություններում կատարվում են հատուցման համարժեքության սկզբունքի խախտումներ։

Հասարակական կյանքում նորմատիվարժութային համակարգի թուլացումը, ժողովրդական զանգվածների՝ սեփական վիճակից դժգոհելու, բարոյական զայրույթի աճը արտակարգ վտանգավոր երևույթ են ողջ մոնոպոլիստական կապիտալիզմի գոյության համար։ Ստեղծվում է սոցիալական վերահսկման խզման, դասակարգային ներհակությունների սրման իրադրություն։ Այդ պայմաններում կապիտալի երդվյալ պաշտպանները ոչ թե միջոցներ ձեռնարկեցին «վերանորոգելու» սոցիալական վերահսկման փչացած մեխանիզմը, այլ ստեղծեցին անձնավորության վարքագծի կառավարման որակապես նոր ձևեր ու մեթոդներ։ Այդ հեռու գնացող ստրատեգիայի նպատակն է բուրժուականացնել առաջին հերթին վարձու աշխատողներին, բանվոր դասակարգին։ Աշխատավոր զանգվածներին բուրժուաանհատապաշտական բա-



րոյականության ներարկումը նպատակ է հետապնդում խոչընդոտել հակաբուրժուական դասակարգային ինքնագիտակցության աճին, հեղափոխական բարոյականության գոյավորմանը։

Աշխատավոր զանգվածների գիտակցությունը բուրժուականացնելու միջոց է նպատակային եղանակների համակարգը, որն ստացել է «մանիպուլյացիա» անունը։ Վերջինիս զինանոցը բաղկացած է տարբեր տիպի ու բնույթի գիտելիքներից, ներազդման բազմազան միջոցներից։ Բարոյական պրոցեսների գիտական կառավարումը ենթադրում է պատմականորեն ստուգված արժութային կողմնորոշիչների առկայություն։ Մանիպուլյացիան մասսայական գիտակցությունը հարկադրաբար հարմարեցնում է ապակողմնորոշող առաջարկներին ու գնահատումներին։ Այն բացառում է մարդկանց անկրկնելի կենսափորձը, անհատի կամ խմբի բարոյական զարգացման ինքնատիպությունը, արժեզրկում ինքնադաստիարակության դերը, կաշկանդում անձի բարոյական ստեղծագործման հնարավորությունը, խոչընդոտում նրա հույզերի ու խոհերի դրսևորմանը։ Մանիպուլյացիայի նպատակն է աղճատել աշխատավորների գիտակցությունը, զրկել նրանց ինքնուրույն մտածելու ու կողմնորոշվելու հնարավորությունից։ Մանիպուլյատիվ մշակման մեքենան բաղկացած է բազում տարրերից։ Դրանցից են պետությունը, կորպորացիաները, գաղափարական ներազդման միջոցները, կրոնական ինստիտուտները, կրթական համակարգերը։ Չնայած իրենց անմիջական ֆունկցիաների կատարման հետ կապված ծանրաբեռնվածությանը, այդ հաստատությունները «համատեղությամբ» իրականացնում են մարդկանց բարոյական գիտակցության վրա ներազդելու դերը։

Բացահայտել սոցիալական հարաբերությունների առանձնահատկությունները՝ նշանակում է ցույց տալ նաև բարոյական գիտակցության հիմնական ֆենոմենների հարաբերակցումը զարգացած սոցիալիզմի հոգևոր հասունների հետ, ինչպես և հայտաբերել ռեալ բարքերի, սովորույթների, վարքագծի հատկանիշները։ Բարոյական գիտակցությունը հարկ է տեսնել ոչ որպես ինչ-որ մեկուսացած հոգևոր կազմավորում, այլ իբրև աշխատավոր լայն զանգվածների պրակտիկայի սուբյեկտիվ գործոն։ Այդ հարաբերությունները պետք է հասկանալ մի կողմից՝ որպես մոտիվացված առնչություններ, որոնք բնորոշ են տարբեր տեսակի զգացմունքներին, մյուս կողմից՝ իբրև կոլեկտիվների, սոցիալական ինստիտուտների գործունեության առանձնահատկություն։

Անշուշտ, սոցիալիստական հասարակության կյանքում սոցիալ-տնտեսական ու քաղաքական ոլորտներում կատարված փոփոխություններն առաջին հերթին պետք է բնութագրվեն հենց այդ տեսանկյունից։ Սակայն կարևոր է նաև ըմբռնել դրանց բարոյահումանիստական իմաստը։ Սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական զարգացման ընթացքում մեր երկրում կատարված հեղափոխական հասարակական վերափոխումների բարոյական նշանակությունն այն է, որ դա պատճառ է հանդիսացել ողջ հասարակության մասշտաբով վերացնելու սոցիալական շահագործման, դասակարգային անհավասարության տարբեր ձևերը և հասարակական բարիքներից, կուլտուրայից օգտվելու՝ դրա հետ առնչվող տարբեր դասակարգերի անհավասար մասնակցությունը։

Սոցիալիստական վերափոխումների պրոցեսում կատարվել է ժողովրդական զանգվածների ազատագրումը նյութական ու կուլտուրական հետամնացությունից։ Կառավարման դեմոկրատական ձևերի հաստատումը պատմության մեջ առաջին անգամ կյանքի կոչեց մասսաների աննախադեպ սոցիալական ակտիվություն։ Այդ վերափոխումները օբյեկտիվ հիմք հանդիսացան՝ հումանիզացնելու հարաբերությունները մարդկանց միջև, զարգացնելու կոլեկտիվիզմի ու համագործակցության հարաբերությունները։ Անհավասարության, դասակարգային ներհակությունների վերացումը, իրենց քաղաքացիական իրավունքներում ու պարտականություններում մարդկանց միջև հավասարության հաստատումը պայմաններ ստեղծեցին նման համակեցության համար, երբ տիրապետում են ոչ թե թշնամանքն ու անտարբերությունը, այլ անշահախնդրությունը, եղբայրական օգնությունը և համագործակցությունը, մարդկանց արժանապատվությունը փոխադարձաբար հարգելը, երբ մարդու գնա-

հատականը որոշում են ոչ թե նրա սոցիալական ծագումը կամ տնտեսական դրությունը, այլ անձնական հատկանիշները։

Հասարակության սոցիալական միատարրության աճի և ազգերի ու ժողովուրդների տնտեսական, սոցիալական, քաղաքական ու հոգևոր ոլորտներում մերձեցման հիման վրա կազմավորվեց նոր պատմական հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդմամբ, սոցիալիստական երկրների ժողովուրդների մերձեցմամբ, տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական բնագավառներում, միջպետական, ազգային, խմբային, միջանձնային հարաբերությունների ամենօրյա պրակտիկայում մարմնավորվեցին փոխօգնության ու ինտերնացիոնալ աջակցության, հավասարության ու փոխադարձ հարգանքի սկզբունքներ, որոնք նպաստում են կոմունիստական բարոյականության աստիճանական ինտերնացիոնալացմանը։

Սոցիալիստական վերափոխումները պայմանավորեցին անհատի նոր դրությունը հասարակության մեջ։ Ստեղծվեցին նոր հնարավորություններ՝ ապահովելու նրա իրավունքները, զարգացնելու անհատականությունը։ «Անհատի զարգացում» հասկացությունը ձեռք բերեց պրակտիկ իմաստ և նշանակում է, որ հասարակության բոլոր անդամներն իրավունք ունեն հաղորդակցվելու կուլտուրայի գանձերին, լուսավորությանը, ձեռք բերելու մասնագիտական որակավորում, մասնակցելու հասարակության կառավարման գործերին։ Սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինը նկատել է, որ աշխատավոր զանգվածներն իրենք են կառուցում նոր կյանք, իրենց փորձով լուծելով սոցիալիստական կազմակերպության բարդ հարցերը։ Նրանց գիտակցականությամբ, բարոյական վարքագծով է պայմանավորվում հասարակության զարգացման օբյեկտիվ պահանջմունքները։

Սոցիալիզմի կառուցման առաջին փուլերում տնտեսական կյանքի ու սոցիալական զարգացման շատ հարցեր առավելապես շաղկապվում էին աշխատավորության քաղաքական գիտակցականության հասունության տվյալ աստիճանի հետ։ Այդ պայմաններում տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացման արմատական խնդիրների լուծումը լիովին ապահովվում էր մասսաների քաղաքական-գաղափարական դաստիարակությամբ։ Բարոյական գործոնը հանդես էր գալիս իբրև հասարակական զարգացման ուղեկցող գործոն, սոցիալական առաջընթացի հզոր արագացուցիչ։

Բարոյական հիմունքները հանդես էին գալիս իբրև լրացում այն շարժիչ ուժերի, որոնք ապահովում էին հասունացած խնդիրների լուծումը։ Դրանց իրականացումը, ըստ Լենինի, անհրաժեշտորեն ամրակայվում է անձնական նյութական շահագրգռությամբ, իսկ «մասսաների խանդավառությունը» համարվում է աջակցող լծակ։ Պատմական այդ ժամանակահատվածի համար կենսական անհրաժեշտություն էր աշխատավոր զանգվածների նյութական շահագրգռվածությունը զուգակցել նրանց քաղաքական գիտակցականության հետ։

Սոցիալիզմի զարգացման արդի փուլում բարոյական գործոնի դերի գնահատումն իբրև լոկ հասարակական առաջընթացի արագացուցչի, լինելով էապես ճշմարիտ, այլևս չի արտահայտում դրա որակապես նոր դերը ներկա ժամանակահատվածում։ Կարևոր է լիովին գիտակցել այն իրողությունը, որ բարոյականությունը սոցիալիստական հասարակության զարգացման ընթացքում ուղեկցող ու աջակցող գործոնից վերածվեց օբյեկտիվ պահանջների ու հնարավորությունների իրականացման անհրաժեշտ նախադրյալի։

Տնտեսապես ու քաղաքականապես հասուն շատ պահանջմունքներ ու խնդիրներ (հասարակական արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացում, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործում և այլն) չեն կարող լուծվել առանց համապատասխան բարոյական նախադրյալների ու պայմանների առկայության։ Մարդու բարոյական կատարելագործումը նրա կյանքի բազմապիսի դրսևորումներում դառնում է ո՛չ միայն հումանիստական իդեալ, այլև ռեալ հասարակական պահանջմունք, սոցիալ-տնտեսական զարգացման կարևոր գործոն։ Այն ոչ միայն ցանկալի է, այլև գործնականում անհրաժեշտ։



Այժմ ինչպես արտադրությունը, այնպես և մարդկանց միջև հարաբերությունները, նրանց կենցաղը, կուլտուրան, հոգեբանությունը, գիտակցությունը հանդիսանում են կուսակցության մշտական ուշադրության առարկան։ Դրանց մասին տնտեսությունների ղեկավարները, կուսակցական կոմիտեները, սովետական ու արհմիութենական մարմինները պետք է դրսևորեն ոչ պակաս հոգատարություն, քան արտադրության զարգացման վերաբերյալ։ Այս շատ բանում նոր մոտեցում է, քանզի խոսքը սոսկ այն մասին չէ, որ հաշվի առնվեն, կանխատեսվեն սոցիալ-տնտեսական միջոցառումների բարոյական հետևանքները։ Խնդիրն ունի սկզբունքորեն այլ մեկնակետ, ողջ տնտեսական, քաղաքական, կուլտուրական գործունեությունը, սոցիալական օրգանիզմի կապերի բազմապիսիության ողջ կոնկրետությունը պետք է ենթարկել մարդկային անհատի համակողմանի զարգացման վեհ նպատակին։ Ոչ թե բարոյականից ելնելով լոկ լրացնել, ճշգրտել տնտեսական և այլ չափանիշները, այլ հասարակական կյանքի բոլոր ոլորտներն օժտել հումանիզմով։ Այս հարցերը հանգամանորեն արծարծվեցին ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերում։

Ստեղծված նոր պատմական իրավիճակը, կապված բարոյական գործոնի դերի ու նշանակության որակական փոփոխումների հետ, մեթոդաբանական առումով պայմանավորում է սուբյեկտիվ գործոնի էթիկական ասպեկտների առավել տարբերակված վերլուծության անհրաժեշտությունը։ Եթե առաջ բավական էր նշել, բարոյականության դերը հասարակական գիտակցության շրջանակներում, առանձնապես չխորանալով նրա սպեցիֆիկ էթիկական մանրամասներում, այժմ անհրաժեշտ է վերհանել ու հաշվի առնել բարոյական ֆենոմենի առանձնահատկություններն իբրև համակարգի, որը հասարակական կյանքում կատարում է տարբեր ֆունկցիաներ։

Կոմունիստական բարոյականության զարգացման նոր փուլն առնչվում է նրա կոնկրետ բովանդակության փոփոխման հետ։ Սոցիալիզմի ու կոմունիզմի բարոյական արժույթները, իբրև բանվոր դասակարգի գաղափարախոսական շահախնդրությունների արտահայտություն, մարմնավորում են հասարակական շահերի, սոցիալական առաջընթացի պահանջների առաջնությունը։ Դրանք համընկնում են մարդկանց պահանջմունքների հետ, որոնք ակտիվորեն մասնակցում են նոր կյանքի կառուցմանը։ Սակայն հասարակական ու անձնական շահերի օբյեկտիվ միասնությունը պետք է դառնա նաև սուբյեկտիվ միասնություն, որպեսզի վերածվի լայն զանգվածների վարքագծի, նրանց կենսական պրակտիկայի բարոյական դրդապատճառի։

Կոլեկտիվիստական գիտակցության կերպավորումն իրականացվում է մարդկային գործունեության տարբեր ոլորտներում, որը դրսևորվում է արդյունավետության տարբեր աստիճաններով։ Օրինակ, մեծ է շաբաթօրյակների դերը կոլեկտիվիստական հատկանիշների արմատավորման գործում։ Լենինը դրանք գնահատում էր իբրև հաղթանակ մանրբուրժուական էգոիզմի սովորույթների, քարացածության, սանձարձակության նկատմամբ, որոնք անիծված կապիտալիզմը ժառանգություն էր թողել բանվորին ու գյուղացուն։ Չափից ավելի բարդ է նման հաղթանակը հատկապես կենցաղի ոլորտում, որտեղ դաստիարակչական աշխատանքը, Լենինի արտահայտությամբ, կպահանջի երկա՜ր, երկա՜ր տարիներ։

Սոցիալիզմ կառուցող հասարակությունը և նրա կոլեկտիվները զարգացման առաջին փուլերում դեռևս ի վիճակի չէին լայն ասպարեզ տալու անձնական անհատականության, ինքնատիպության դրսևորման համար, հենց «այսօր» հոգալու անձնավորության շահերը, չնայած ի վերջո հասարակական շահերը ծառայում էին հանուն մարդու։ Փաստ է նաև, որ բնակչության որոշակի մասի համար հասարակական շահերի առաջնությունն ընկալվում է իբրև անձնական շահի ուղղակի ենթարկում հասարակականին։



Սովետական հասարակության թևակոխումը հասուն սոցիալիզմի փուլը հայտաբերեց կոմունիստական բարոյականության հետագա զարգացման նոր հնարավորություններ։ Այդ փուլին համապատասխանում է հասուն սոցիալիս-

տական բարոյականություն, որի միջուկը հանրօգուտ աշխատանքի նկատմամբ վերաբերմունքն է։ Սոցիալիստական աշխատանքը բարձրագույն բարոյական արժույթ է, որովհետև այն անհատի ու հասարակության հարաբերակցման անմիջական պրակտիկ ձև է, ուր հաստատվում է հասարակական ու անձնական շահախնդրությունների միասնությունը։ Այդուհանդերձ, սոցիալիստական բարոյական արժույթները չեն սահմանափակվում աշխատանքով և ընդգրկում են նաև մարդկանց կենսագործունեության բոլոր ոլորտները՝ հասարակական-քաղաքական գործունեություն, ամենօրյա հաղորդակցում, կենցաղ, ընտանեկան կյանք։

Լենինի Մեծ նախաձեռնություն աշխատության մեջ առաջին կոմունիստական շաբաթօրյակների օրինակով բացահայտվեցին կոմունիզմի ռեալ, բուն ծիլերը։ Կոլեկտիվ աշխատանքի կոնկրետ ձևերում հասարակական շահը արտահայտվեց իբրև ստեղծարար գործունեություն, անձնական շարժառիթ։ Սոցիալիստական հասարակության գոյության առաջին տարիներից նոր բարոյական արժույթների, նոր հասարակական կապերի ստեղծումը մարքս-լենինյան գաղափարախոսության ներգործմամբ ընթացավ իբրև օբյեկտիվ պրոցես։

Կոմունիստական բարոյականության կազմավորման հիմնական փուլերը քննելիս հարկ է նկատել, որ այդ պրոցեսում գաղափարական կողմն առավել ամբողջական էր բացահայտում իր ազդեցությունը, երբ զուգակցվում էր հասարակական զարգացման սոցիալ-հոգեբանական գործոնի հետ։ Իրոք, նոր բարոյականության գաղափարական բովանդակությունը լայն զանգվածները պետք է ընդունեին իբրև ներքին մղում, պահանջ։

Սովետական մարդու բարձր տիպի բարոյական գիտակցության կերպավորմանը նպաստում են անհատի սոցիալացման միջոցների ողջ համակարգը, գոյավորված սոցիալիստական հասարակական հարաբերությունները, գաղափարական ներազդման միջոցները, իրավական ինստիտուտների գործունեությունը, սոցիալիստական արվեստն ու գրականությունը, միջնակարգ ու բարձրագույն կրթության հաստատված համակարգը և այլն։

Կոմունիստական կուսակցությունը հանդիսանում է թե՛ բարոյական առաջընթացի հիմնական սուբյեկտ, թե՛ բարոյական հարաբերությունների վրա ներազդման հիմնական գործոն։ Այդ դերն իրականացնելիս կուսակցությունն իր շարքերը զտում է անազնիվ ու ընչաքաղց մարդկանցից, օգտագործելով բոլշևիկյան քննադատության և ինքնաքննադատության փորձված զենքը։ Կոմունիստական կուսակցության բարոյական հեղինակությունը հզոր խթան է աշխատանքային կոլեկտիվները, բրիգադները, առանձին մարդկանց նոր կյանքի նորմերով տոգորելու գործում։

Բարոյական հարաբերությունների մեջ մարդը մտնում է իբրև ամբողջական անհատ, աշխարհայացքում ու վարքագծում մարմնավորելով մասնագիտական կուլտուրա, կրթություն, քաղաքական ու սոցիալական հասունություն, կենսափորձ։ Տարբերությունները քաղաքի և գյուղի միջև կարող են բեկվել վարվելակերպի ու հաղորդակցման կուլտուրայի մաններայում, բայց ոչ բարոյական օղակներում, որոնք վճռորոշ նշանակություն ունեն անձի վարքագծի համար։ Ե՛վ քաղաքում, և՛ գյուղում կարող են լինել գործի նկատմամբ միանման հակվածներ կամ անտարբերներ։ Սկզբունքայնությունը և գործարարությունը առկա են ինչպես առաջավոր բանվորի, այնպես էլ կոլտնտեսականի ներաշխարհում։ Կոլեկտիվների ժողովներում ակտիվ դիրքորոշում են դրսևորում և՛ սովխոզի, և՛ արտադրական ձեռնարկության հասարակական բարձր գիտակցականությամբ օժտված աշխատակիցները։

Սովետական մարդու բարոյական աշխարհն առավելապես հագեցվում է սոցիալիստական ապրելակերպի արժութային կողմնորոշիչներով, որոնք առանձին մարդկանց գիտակցության մեջ բեկվում են սեփական արժանապատվության, մեծ ու փոքր խոհականության մեջ։ Այդ սկզբունքի խախտումը, գիտակցորեն կամ չգիտակցված անհատին այդ գործերից հեռու պահելը հանգեցնում են ընդդիմադիր տրամադրությունների, բացասական ակտիվության աճին կամ պասսիվության ու անտարբերության։ Հետևաբար շատ կարևոր է, թե որքանով են սոցիալիստական ապրելակերպի ընդհանուր սկզբունքները (որոշումների քննարկումների կոլեգիալությունը, մասսայականությունն ու



հրապարակայնությունը, բոլորի ու յուրաքանչյուրի կարծիքների հաշվառումը) դառնում ցանկացած կոլեկտիվի գործունեության նշանաբանը։ Բարոյական արժույթը առկա է մարդկային գործունեության ցանկացած բնագավառում, այն կարգավորում է մարդկանց փոխհարաբերությունները։

Անհատի բարոյական ձևավորման պրոցեսն օբյեկտիվ ու սուբյեկտիվ, տարերային ու գիտակցական, հուզական ու բանական ներազդման գործոնների միասնություն է։ Այն բարդ համակարգ է, որը ներառում է գիտակցության հասարակական ու անհատական մակարդակները, նորմատիվ ու արժութային տարրեր, գաղափարախոսական ու աշխարհայացքային ասպեկտներ, գոյի և պիտոյականության դրսևորումներ։ Բարոյականությունը պարփակ համակարգ չէ, այն իր բոլոր թելերով կապված է կյանքի, հասարակական պրակտիկայի հետ։ Այն, ինչ կատարվում է կյանքում, արտացոլվում է մարդկանց գիտակցության, բարոյական վարքագծի մեջ։ Հայտնի է, որ արժութային կողմնորոշումների բնույթը էապես պայմանավորվում է տնտեսական ապահովվածությամբ։ Որքան բարձր է բարեկեցության աստիճանը, այնքան բարձր է սոցիալական օպտիմիզմի, լինելիության լիարժեքության աշխարհզգացման մակարդակը։

Սոցիալիստական շինարարության հաջողությունները, ապահովելով մարդկանց անմիջական պահանջմունքների հարաճուն բավարարման հնարավորությունները, մեծապես նպաստում են անձնականի ու հասարակականի ներդաշնակությանը։ Այդ իրողությունը համապատասխան արտահայտություն է գտել սովետական մարդկանց գիտակցության մեջ։ Միաժամանակ անհամեմատ աճել է աշխատավորների պահանջկոտությունը հանրօգուտ գործի կազմակերպման նկատմամբ։ Այն դժվարությունները, որոնք առաջ ընկալվում էին իբրև օբյեկտիվորեն անխուսափելի, այժմ հաղթահարվում են քննադատական վերաբերմունքով։ Շատ ձեռնարկություններում ու կոլեկտիվներում մարդիկ չեն ուզում հաշտվել այն ղեկավարների անտնտեսվարության փաստերի հետ, որոնք փորձում են ամեն մի դժվարություն բացատրել օբյեկտիվ պատճառներով, կոծկել սեփական սխալներն ու թերությունները։

Աշխատանքի վատ կազմակերպման, սոցիալ-կենցաղային հարցերի նկատմամբ ոչ պատշաճ ուշադրություն դրսևորելու հետևանքով շատ ձեռնարկություններում տեղի են ունենում արտադրապրոցեսի խափանումներ, կադրերի հոսունություն, կարգապահության խախտման դեպքեր։ Ուսումնասիրությունները վկայում են, որ սոցիալական ապահովման մակարդակով են պայմանավորվում միգրացիոն պրոցեսները, կողմնորոշումը հարգի մասնագիտությունների նկատմամբ և այլն։ Էական տարբերությունները զանազան սոցիալական խմբերի դրության մեջ որոշ մարդկանց շրջանում կարող են զարգացնել յուրօրինակ «ոչ լիարժեքության կոմպլեքս», նախանձ, վիրավորանք, մյուսների մոտ՝ բացառիկության, գերազանցության, մեծամտության զգացում և այլն։

Կազմակերպական-քաղաքական ներգործմամբ է ապահովվում բանիմացության և օրինականության մթնոլորտի ստեղծումը։ Աշխատանքի լենինյան ոճի խոր տիրապետումը, կոմունիստական շինարարության պրակտիկայի բոլոր հարցերին իսկական կուսակցական մոտեցումը բարենպաստ պայմաններ են ստեղծում՝ լուծելու հրատապ սոցիալական պրոբլեմները, բարձրացնելու սովետական մարդկանց ակտիվությունը։ Անհատի բարոյական վեհացումը անխզելիորեն առնչվում է սեփական թերություններից ձերբազերծվելու, ինքնակատարելագործման հետ։ Իրողություն է, սակայն, մարդը շատ բարդ էակ է։ Եվ դա բացատրվում է ոչ թե նրա բանականությանն ու կամքին չենթարկվող թուլությունների ու անզուսպ կրքերի քմահաճ խաղով, այլ բազմապիսի պահանջմունքներով ու շահախնդրություններով։

Հաճախ ասում են, թե անհատի բարոյական զարգացումը պայմանավորվում է նրա անձնական կյանքում բացասական երևույթների հաղթահարմամբ։ Դա, իհարկե, ճիշտ է, քանզի վարքագծում տակավին քիչ չեն բացասական երևույթները և դրանց դեմ պայքարը դեռ անհրաժեշտ է։ Այդուհանդերձ, բարոյական զարգացումը սոսկ թերությունների ու արատների հաղթահարում չէ։ Ճիշտ է, արատի դեմ պայքարը բարոյական առաջընթացի պայման է, սակայն

պետք է լրացվի իրական պրոգրեսի թելադրումով, ընդգրկելով մարդու բանական պահանջմունքների զարգացումն ու վեհացումը։ Արդի պայմաններում հատուկ իմաստ է ստանում պահանջմունքների վեհացման մասին լենինյան դրույթը իբրև անձնավորության հոգևոր-բարոյական զարգացման մայրուղի։ Պայքարը բարոյական արատների դեմ այդ վերընթաց շարժման պրոցեսի լոկ մեկ կողմն է։ Վ. Ի. Լենինը, բնութագրելով նոր տիպի անհատի հատկանիշները, գրել է. «Թող մեր իդեալը լինի... ամբողջական, իրոք համակողմանի, կատարյալ, կրթված մարդը» (ԵԼԺ, հ. 29, էջ 67)։

Հանրությունից դուրս բարոյականություն գոյություն չունի։ Մարդը ոչ միայն անմիջական սուբյեկտ է բոլոր այն երևույթների, որոնք միավորվում են բարոյական հասկացության մեջ, այլև վերջինիս միջոցով է ամրակայվում նրա հասարակական էությունը։ Հասարակական մարդու գործունեության մեջ գիտակցված հաղորդակցումը վերածվում է ուրիշ մարդու, իր նմանի նկատմամբ կայուն պահանջի։ Այն որակապես այլ՝ սոցիալական, մարդկային պահանջմունք է վառ արտահայտված բարոյական արժույթով։ Այսինքն՝ ենթադրում է մարդկանց որոշակի հոգեբանական վիճակի՝ ապրումի, կարեկցանքի, փոխօգնության, աջակցության զգացման առկայություն։ Բարոյական պահանջմունքն առավել զարգացման է հասնում հասարակությանը անձնվեր ծառայելու իդեալում։ Հաղորդակցման պահանջմունքը ենթադրում է համակեցության օրենքներով ապրելու, այսինքն անհատական վարքագիծը ընդհանուր կանոնակարգին, նորմերին ենթարկելու ունակություն։ Սոցիալական գործունեությունը, հաղորդակցումը ստեղծել են կարգավորման հատուկ մեխանիզմ, որին նախորդել են մարդկանց վարքագծի հիմքում ընկած սովորույթներն ու ավանդույթները։ Մարդը, որպեսզի ունակ լինի գիտակցաբար հետևելու բարոյական կարգավորման նորմերին, պետք է կարողանա ըմբռնել իր կապը հասարակության հետ և մտովի համեմատի ու համադրի իրեն ուրիշների հետ։ Պատմականորեն դա հնարավոր եղավ մարդկային անհատականության ու ինքնագիտակցման զարգացմամբ։ Դա նշանակում է, որ բարոյականը հանդես է գալիս մարդկային անհատի ձևավորման հետ միաժամանակ։ Շրջապատի նկատմամբ սեփական վերաբերմունքի կարգավորումը ենթադրում է բարոյականի առկայություն։

Բարոյապես զարգացած մարդն անձնականը ազատորեն հարաբերակցում է հասարակականի հետ, սեփական վարքագիծը ճշգրտում գիտակցված անհրաժեշտության հետ, բարոյական իդեալի հաստատման նպատակով դրսևորելով հետևողական ակտիվություն։ Բարոյական հասունացման բարձր մակարդակը ձեռք է բերվում մարդու տարիքային զարգացման մի շարք հետևողական փուլերի անցկացմամբ, վարքագծի համապատասխան նորմերի յուրացմամբ։ Լինել հետևողականորեն բարոյական, նշանակում է ոչ միայն սեփական Ես-ը պահել անաղարտ, այլև ակտիվորեն հանդես գալ չարի ամեն տեսակի դրսևորումների դեմ։ Անարդարությունն ու անազնվությունը, ամեն կարգի հակահասարակական վարքագծի նկատմամբ անհանդուրժողականությունն անհատի բարոյական ակտիվության կարևոր դրսևորում է, բարու հաստատման պահանջ։ Հոգևոր բարձր արժույթներով օժտված անհատը սոցիալիստական բարոյականության պահանջներում տեսնում է խոր հասարակական, ինչպես և անհատական իմաստ։ Ոչ պատշաճ զարգացման դեպքում բարոյական պահանջներն ընկալվում են իբրև անհրաժեշտ միայն հասարակության, ընդհանուրի համար, որոնց հարկ է ենթարկվել։ Ենթարկվելու դրդապատճառներն են հնարավոր պատժի սպասումի վախը, որոշակի արտոնություններից զրկվելու տագնապը և այլն։

Անբավարար բարոյական զարգացումը սոցիալական պասիվության, աննախաձեռնության, անկայունության սուբյեկտիվ պատճառ է։ Մարդիկ, որոնք չունեն կայուն սոցիալիստական բարոյական համոզմունքներ, կարող են անկում ապրել։ Դրան հատկապես նպաստում է հոգևոր աղքատությունը։ Բայց քանի որ ինչպես բնության մեջ, այնպես էլ սոցիալական իրականությունում դատարկություն չկա, տվյալ դեպքում այն հագեցվում է մանր հիվանդագին կրքերով, չբավարարված փառասիրությամբ, շրջապատի նկատմամբ նվաստացուցիչ նախանձով։ Իրապաշտությունը, ընչաքաղցությունը, կենցաղային



մանրուքներով հրապուրվելը դառնում են առանձին մարդկանց համար ինքնահաստատման միջոց։ Սակայն իրային, առարկայական միջավայրը, որքան էլ գերադասելի լինի, չի փոխարինում մարդկային շրջապատը։ Այդ իսկ պատճառով ի հայտ են գալիս ուրիշներին գերազանցելու կիրքը։ Այն մի դեպքում դրսևորվում է պրեստիժային իրերի ձեռքբերման մեջ կամ վերածվում է այնպիսի ստատուսի ձգտման, որի օգնությամբ հնարավոր է ունենալ տարբեր տեսակի նյութական ու բարոյական օգուտներ։ Վերջինս առնչվում է կարիերիզմին, երբ այդ նպատակներին հասնելու համար խտրություն չի դրվում միջոցների մեջ։

Ճիշտ զուգակցելով անձնականը հասարակականի հետ, անհատը մշտական բարոյական կատարելագործման հնարավորություն է ստանում։ Նկատենք, որ ինտելեկտուալ զարգացումը մարդու մոտ ինքնաբերաբար չի ձևավորում բարձր բարոյական հատկանիշներ, իդեալներ ու պահանջմունքներ։ Այստեղ հարկավոր է կոմունիստական դաստիարակության համակարգի բոլոր կողմերի միասնություն, հատկապես գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակություն։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում արտասանած ճառում ընկեր Յու. Վ. Անդրոպովը նշեց. «Այժմ հարկավոր է ավելի ճիշտ օգտագործել այդ բոլոր միջոցները, դրանք գործադրել ավելի ակտիվորեն, ստեղծագործաբար, մասնավորապես հաշվի առնելով սովետական մարդկանց կրթվածության ու պահանջմունքների զգալիորեն աճած մակարդակը»։

Անհատի բարոյական զարգացումը կոլեկտիվում գտնվում է կառավարման բարդ սիստեմի գործողության ոլորտում, որը լուծում է տնտեսական, քաղաքական, դաստիարակչական, կազմակերպական և այլ խնդիրներ։ Այստեղ իրենց որոշակի դերն ունեն կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, որոնք գործում են ադմինիստրացիայի հետ ներդաշնակ։

Կոլեկտիվի դաստիարակչական ու կազմակերպչական աշխատանքում, որն ապահովում է բարոյական գործոնի արդյունավետությունը, կարելի է առանձնացնել հետևյալ կարևոր տարրերը. արտադրության կազմակերպման մակարդակը և կոլեկտիվի ղեկավարման ոճը, աշխատանքի դաստիարակչական ներազդեցությունն իբրև նյութական ու հոգևոր արժեքների միասնություն, մարդկային հարաբերությունների վիճակը, աշխատողներին խրախուսելու ստեղծված նյութական ու բարոյական համակարգը, ինչպես նաև հաստատված սոցիալ-հոգեբանական մթնոլորտը։ Ընդհանուր առմամբ անհատի վրա մեր հասարակության ներգործման ողջ սիստեմը հիմնվում է համոզման մեթոդի վրա։ Վերջինս ենթադրում է հասարակության իդեալների, շահերի, բարոյական նորմերի պահպանման նկատմամբ գիտակցական վերաբերմունքի կիրառում։ Այն, սակայն, չի բացառում հարկադրման տարբեր ձևերի գործադրում, որոնք առանձին պարագաներում անհրաժեշտ են։

Կոլեկտիվներում կուտակված սոցիալ-տնտեսական պլանավորման փորձը վկայում է, որ բարոյական դաստիարակության խնդիրները ճիշտ են լուծվում այնտեղ, որտեղ դրանք սերտորեն առնչվում են հասարակական արտադրության զարգացման, մարդկանց կուլտուր-մասնագիտական մակարդակի բարձրացման, հասարակական ու կենցաղային ոլորտներում նրանց նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարման հետ։

Մարդկանց կենսագործունեության բոլոր ոլորտները՝ արտադրականից մինչև ընտանեկան-կենցաղային, ենթակա են բարոյական գնահատման։ Հասարակական կյանքում բարոյական ներգործման ոլորտի ընդլայնումը մեծապես նպաստում է հասարակական կառավարման արդյունավետության բարձրացմանը։ Այսօր մարդ ենթարկվում է բարոյական պարսավանքի ոչ միայն կատարած զանցանքների, սոցիալիստական համակեցության կարգուկանոնի խախտման համար։ Նա բարոյապես պատասխանատու է գիտելիքների պակասի, մասնագիտորեն չկատարելագործվելու համար։ Նրան հանդիմանում են, որ չի օգտագործում սոցիալիզմի անսահման հնարավորությունները հոգևոր վերընթացի մարզում։

Բարոյական դաստիարակության հասարակական խթանների շարքում մեծ

է դրական օրինակի դերը։ Կառավարման պրոցեսում, ելնելով այն իրողությունից, որ ամեն մի աշխատանքային կոլեկտիվ գործունեության, անդամների կազմի ու բարոյական արժույթների ընտրությամբ յուրովի է, չեն կարող լինել բոլորի համար դրական օրինակի ընդհանուր, բացարձակ չափանիշներ։ Դրական օրինակը նույնպես անփոփոխ չի մնում։ Այն զարգանում է, հագեցվում նոր բովանդակությամբ, զանգվածային է ու անհատական։ Դրական օրինակի հիման վրա յուրաքանչյուր մարդու ունակությունների ու հնարավորությունների հաշվառումը օգնում է՝ բացահայտելու դեռևս խոր թաքնված տաղանդները, հավատ ներարկելու իրենց ունակությունների նկատմամբ, վերհանելու սովորական առօրեական վիճակից, նրանց մեջ հրահրելու ստեղծագործական ու սոցիալական ակտիվության կայծը։

Հետազոտությունները վկայում են, որ մի շարք արտադրական կոլեկտիվներում ուշադրությունը միայն բարձր ցուցանիշների նկատմամբ իջեցնում է կոլեկտիվի շատ անդամների աշխատանքային ակտիվությունը։ Աշխատողների մի մասը նման օրինակները կենսագործելու համար մասնագիտական կամ կուլտուրական առումով իրեն պատրաստ չի համարում։ Անհասանելիության զգացումը առանձին աշխատողների մոտ առաջացնում է հիասթափություն ընտրած գործի նկատմամբ, եռանդի անկում, անվստահություն։

Անձնական ու հասարակական շահերի ճշմարիտ ու ներդաշնակ զուգակցումը հնարավոր է միայն համաժողովրդական հասարակական բարիքի ու շահի առաջնության հիման վրա, միայն իսկական կոլեկտիվում։ Մարքսիզմի դասականները տվյալ մեթոդաբանական սկզբունքին տվել են հսկայական նշանակություն։ «Կոմունիստական հասարակության շրջանակներում, միակ հասարակության, որտեղ անհատների ինքնատիպ ու ազատ զարգացումը դադարում է ֆրազ լինելուց, այդ զարգացումը պայմանավորվում է անհատների կապերով, որոնք մասամբ ամփոփված են տնտեսական նախադրյալներում, մասամբ բոլորի ազատ զարգացման անհրաժեշտ համերաշխության մեջ և, վերջապես, եղած արտադրաուժերի հիման վրա անհատների գործունեության ունիվերսալ բնույթի մեջ» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 441):

Ըստ լենինյան սահմանման, մեր բարոյականության բարձրագույն չափանիշը, որ կոնկրետացնում է հասարակական շահերի առաջնության սկզբունքը, տալով նրան կոնկրետ պատմական սոցիալ-դասակարգային ուղղվածություն, պայքարն է հանուն կոմունիզմի կառուցման։ Հավատարիմ լենինյան ավանդներին, կուսակցությունն այսօր էլ բարոյական է համարում այն, ինչ ծառայում է ժողովրդի, կոմունիստական շինարարության շահերին։ Հասարակական շահերի առաջնությունը շեշտված է ՍՍՀՄ նոր սահմանադրությունում։

Սոցիալիստական հասարակության բարոյական զարգացումը, նոր մարդու կերպավորումը անընդհատ ու բարդ պրոցես է, ինչպես անընդհատ ու բարդ է ինքը՝ կյանքը։ Փոխվում են աշխատանքի ու կենցաղի սոցիալ-տնտեսական պայմանները, հասունանում են նորանոր սերունդներ, առաջանում են բազմաթիվ նոր խնդիրներ, որոնք կուսակցությունը պահում է ուշադրության կենտրոնում, շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում։

---



# ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ

**Ս. Ա. ԲԱԴԱԼՅԱՆ**

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՄԱՐՔՍԻԶՄԸ ՀԱՆԴԵՍ ԵԿԱՎ մարդկային մտքի և կուլտուրայի զարգացման շրջադարձային այն ժամանակաշրջանում, երբ քաղաքական պայքարի ասպարեզ էր մտել և արագորեն աճում էր հասարակական մի նոր, ավելի առաջավոր ուժ՝ բանվոր դասակարգը։ Դա XIX դարի քառասնական թվականներն էին, երբ իսկական հեղափոխական տեսության ստեղծումը դառնում էր հրամայական պահանջ։ Այդ տեսությունը պետք է գաղափարապես զիներ բանվոր դասակարգին, հիմնավորեր կապիտալիզմի կործանման անհրաժեշտությունը, կարողանար աներկյուղ նախատեսել ապագան և պատասխան տար բանվոր դասակարգի հասունացած հարցերին։ Պատմական այդ խնդիրը կատարեցին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը։ Նրանք ստեղծեցին գիտական կոմունիզմի ուսմունքը և ցույց տվեցին, որ հենց բանվոր դասակարգն է հեղափոխական այն վճռական ուժը, որը կոչված է մարդկությանն ազատագրելու կապիտալիզմի պատճառած թշվառություններից և սոցիալական աղաղակող անարդարություններից։ Մարքսը բանվոր դասակարգին համարում էր մի դասակարգ, որի «ձեռքին է մարդկության վերածնությունը»։ Հայտնագործելով պատմության մատերիալիստական ըմբռնումը և հավելյալ արժեքի տեսությունը, նա տվեց պրոլետարական հեղափոխության հաղթանակի և կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի առաջացման տնտեսական հիմնավորումը։ Բարձր գնահատելով այդ՝ Վ. Ի. Լենինը նշել է. «Մարքսի տեսության առավել խոր, բազմակողմանի ու մանրակրկիտ հաստատումն ու կիրառումը նրա տնտեսագիտական ուսմունքն է» (ԵԼԺ, հ. 26, էջ 69)։

Հենվելով բազում փաստերի գրանիտե հիմքի վրա, քննադատաբար վերամշակելով ու ստեղծագործաբար զարգացնելով այն ամեն լավագույնը, ինչը մարդկային հանճարն ստեղծել է իր ողջ նախորդ պատմության ընթացքում, Մարքսն առաջին անգամ բացահայտեց կապիտալիզմի հակամարտ հակասությունները, գիտականորեն ապացուցեց դրա կործանման անխուսափելիությունը և դեպի կոմունիզմ մարդկության անցման օբյեկտիվ անհրաժեշտությունը։

Մարքսի տնտեսագիտական ուսմունքի անկյունաքարը, ինչպես ասում էր Լենինը, նրա հավելյալ արժեքի տեսությունն է։ Հավելյալ արժեքի հայտնագործմամբ Մարքսը երևան հանեց կապիտալիստական շահագործման մեխանիզմի էությունն ու գաղտնիքը, մերկացրեց դասակարգային շահերի ներդաշնակության մասին բուրժուական պրոպագանդայի ողջ կեղծիքը։ Նա ցույց տվեց, որ կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի՝ հավելյալ արժեքի արտադրության օրենքի, գործառնությամբ, որում դրսևորվում է կապիտալիստական արտադրության անմիջական նպատակը, ավելի է սրվում աշխատան-

քի ու կապիտալի միջև հակամարտությունը, որը և կանխորոշում է կապիտալիզմի կործանման, նոր, սոցիալիստական կարգերի ծագման անխուսափելիությունը։

Հավելյալ արժեքի մարքսյան տեսությունը բարձր է գնահատում Մարքսի հավատարիմ զինակիցն ու մեծ բարեկամը՝ Ֆրիդրիխ Էնգելսը։ Նա ասում էր, որ հավելյալ արժեքի մարքսյան տեսությունը «պարզ երկնքից ճայթող կայծակի տպավորություն գործեց..., որը կոչված էր ամբողջ տնտեսագիտությունը հեղաշրջելու և որը բանալի էր տալիս կապիտալիստական բովանդակ արտադրությունը հասկանալու համար» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. II, ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ., 1936 թ., էջ XXI, XXIII)։

Պատահական չէ, որ մարքսիզմի բացահայտ ու քողարկված թշնամիները, նրա քննադատները իրենց հարվածներն ամենից առաջ ուղղում են հավելյալ արժեքի տեսության դեմ։ Եվ դա հասկանալի է, քանի որ Մարքսն այդ տեսությամբ ցույց տվեց, որ բուրժուական հասարակության ամբողջ հարստությունը, շահագործող դասակարգերի անաշխատ եկամուտների միակ աղբյուրը բանվոր դասակարգի վարձու աշխատանքի շահագործման հիման վրա ստացվող հավելյալ արժեքն է։

Մարքսյան տնտեսագիտական ուսմունքի բուրժուական քննադատները, աշխատավորներին մոլորության մեջ պահելու համար, ճգնում են ցույց տալ, թե իբր Մարքսը սոցիալիզմի ու կոմունիզմի մասին չի թողել որևէ չափով ամբողջական ուսմունք։ Դեռ ավելին, նրանք պնդում են, թե Սովետական Միությունում և սոցիալիզմի մյուս երկրներում սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարությունն անմիջականորեն կապված չէ Մարքսի ուսմունքի հետ, այլ իրենից ներկայացնում է ինչ-որ առանձնահատուկ մի երևույթ։ «Բուրժուազիայի և ռեֆորմիզմի գաղափարախոսները,— գրում է Յու. Վ. Անդրոպովը Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցերը հոդվածում,— մինչև այսօր էլ հորինում են փաստարկների ամբողջ համակարգեր, փորձելով ապացուցել, թե իբր այն հասարակարգը, որ ստեղծվել է ՍՍՀՄ-ում, մյուս եղբայրական երկրներում, չի համապատասխանում սոցիալիզմի այն ձևին, որ պատկերացնում էր Մարքսը»։

Մարքսն իր առջև խնդիր չէր դնում տալ կոմունիստական հասարակարգի պատկերն իր բոլոր մանրամասնություններով։ Նա հեռու էր ապագա կոմունիստական ֆորմացիայի կազմակերպման դոգմատիկ ու քարացած ձևերի հորինման մտքից, դա կհակասեր նրա ուսմունքի ստեղծագործական ոգուն։ Պատահական չէր, որ Մարքսը վճռականորեն մերժում էր բանվորական շարժման ու սոցիալիզմի որոշ ներկայացուցիչների այն պահանջը, որ պետք է կոմունիզմի նկարագիրը տալ իր բոլոր կողմերով։ Սակայն սոցիալիզմի ու կոմունիզմի այն հիմնարար սկզբունքներն ու գծերը, որոնք ձևակերպել ու հիմնավորել է Մարքսը Էնգելսի հետ միասին, անանց նշանակություն ունեն սոցիալիստական շինարարության տեսության ու պրակտիկայի, սոցիալիզմի քաղաքատնտեսության կարևորագույն պրոբլեմների գիտական մշակման համար։

Մարքսն առաջինն էր, որ գիտականորեն հիմնավորեց, թե բանվոր դասակարգի կողմից իշխանության գրավումից և նրա դիկտատուրայի հաստատումից հետո պետք է գոյություն ունենա հասարակական զարգացման մի հատուկ փուլ՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու մի ամբողջ պատմական ժամանակաշրջան, երբ առաջինը հեղափոխական ճանապարհով փոխարկվում է երկրորդին։ Այդ հետևությունը Գոթայի ծրագրի քննադատություն նշանավոր աշխատության մեջ առաջին անգամ ձևակերպեց Մարքսը, իսկ այնուհետև ստեղծագործաբար զարգացրեց Լենինը։

Սոցիալիզմի շինարարության հարուստ փորձը հաստատեց Մարքսի այն գաղափարը, որ ոչ մի երկիր չի կարող շրջանցել կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի կառուցման օբյեկտիվորեն պայմանավորված փուլերը և միանգամից անցնել նրա զարգացման բարձր փուլին՝ կոմունիզմին, մի կողմ թողնելով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը։ Դա կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի ծագման ու ձևավորման անհրաժեշտ ժամանակաշրջանն է, որի ընթացքում ստեղծվում է սոցիալիզմի տնտեսական հիմքը։

Սոցիալիզմի քաղաքատնտեսության ոսկե ֆոնդի մեջ է մտնում կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի ու նրա երկու փուլերի մասին Մարքսի ուսմունքը։

Մարքսը, դեն նետելով միասնական կոմունիստական ֆորմացիայի մասին ոչ ճիշտ և աղոտ պատկերացումները, ստեղծեց գիտականորեն հիմնավորված կուռ ուսմունք՝ կոմունիստական ֆորմացիայի զարգացման երկու փուլերի մասին։ Ընդհանրացնելով սոցիալիստական շինարարության առաջին տարիների պատմական փորձը, Լենինը համակողմանիորեն զարգացրեց կոմունիստական ֆորմացիայի մասին մարքսյան ուսմունքը։

Նա ցույց տվեց, որ կոմունիստական ֆորմացիան անընդհատ զարգացող մի դինամիկ օրգանիզմ է՝ զարգացման իր աստիճաններով ու փուլերով։ Անցումը կոմունիզմին տեղի կունենա զարգացած սոցիալիզմի միջոցով, երբ, Մարքսի խոսքերով ասած, սոցիալիզմը կհասնի իր ամբողջականությանը։

Զարգացած սոցիալիզմը «մի հասարակություն է,— ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ասաց Յու. Վ. Անդրոպովը,— որտեղ արդեն լիովին ստեղծված են սոցիալիստական սկզբունքներին համապատասխանող տնտեսական բազա, սոցիալական կառուցվածք, քաղաքական սիստեմ, որտեղ սոցիալիզմը զարգանում է, ինչպես ընդունված է ասել, իր սեփական կոլեկտիվիստական հիմքի վրա»։ Մեթոդաբանական կարևոր նշանակություն ունի մարքսիզմ-լենինիզմի ուսմունքից բխող այն էական եզրակացությունը, որ զարգացած սոցիալիզմը դուրս չի գալիս կոմունիստական հասարակական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի շրջանակներից, այլ հանդիսանում է նրա համակողմանի հասունացման պատմականորեն անհրաժեշտ փուլը։ Պահպանելով ու զարգացնելով սոցիալիզմի հիմնական հատկանիշները, այն իր շարժման պրոցեսում ձեռք է բերում հասունության ավելի բարձր աստիճան։ Այդ փուլում է, որ ակնառու կերպով դրսևորվում են սոցիալիզմի առավելություններն ու դրանց իրացման հնարավորությունները։

Մշակելով հասուն սոցիալիզմի կոնցեպցիան, կուսակցությունը մատնանշում է, որ սովետական հասարակության առաջընթացը դեպի կոմունիզմ տեղի կունենա զարգացած սոցիալիզմի ուղիով, որը կոմունիստական ֆորմացիայի ձևավորման անհրաժեշտ ու տևական փուլն է։ Հենվելով զարգացած սոցիալիզմի մարքս-լենինյան տեսության վրա, ասում է Յու. Վ. Անդրոպովը, «...կուսակցությունը սահմանել է իր ստրատեգիան ու տակտիկան ամենամոտ տարիների և ավելի հեռավոր հեռանկարի համար, նախազգուշացրել է հնարավոր չափազանցումներից՝ կոմունիզմի բարձրագույն փուլին երկրի մոտենալու աստիճանի ըմբռնման գործում»։

Սոցիալիզմի քաղաքատնտեսության ձևավորման ու զարգացման համար էական նշանակություն ունեցավ կապիտալիստական մասնավոր սեփականությունը հասարակական սեփականությամբ փոխարինելու անխուսափելիության մասին Մարքսի հարցադրումը։ Նա նշում էր, որ կապիտալիզմին փոխարինելու եկող սոցիալիզմի հիմքն ու անկյունաքարը կդառնա արտադրամիջոցների հասարակական սեփականությունը։ Մարքսը և Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում շեշտը դնում էին արտադրահարաբերությունների միջուկը կազմող արտադրամիջոցների կապիտալիստական մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վերացման անհրաժեշտության վրա։ Նրանք ասում էին, որ «...կոմունիստներն իրենց տեսությունը կարող են արտահայտել մի դրույթով՝ մասնավոր սեփականության ոչնչացում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972 թ., էջ 155)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում իրականացավ Մարքսի և Էնգելսի մեծ կանխատեսումը՝ արտադրամիջոցների հասարակական սոցիալիստական սեփականության հաստատման հիման վրա վերացավ արտադրության օբյեկտիվ կողմի՝ արտադրամիջոցների և անձնական կողմի՝ աշխատուժի միջև եղած դարավոր անջատվածությունը, այսինքն՝ արտադրության պայմաններից աշխատանքի օտարումը։ Արտադրողները դարձան ինչպես արտադրամիջոցների, այնպես էլ արտադրվող արտադրանքի համատեղ սեփականատերերը։

քի ու կապիտալի միջև հակամարտությունը, որը և կանխորոշում է կապիտալիզմի կործանման, նոր, սոցիալիստական կարգերի ծագման անխուսափելիությունը։

Հավելյալ արժեքի մարքսյան տեսությունը բարձր է գնահատում Մարքսի հավատարիմ զինակիցն ու մեծ բարեկամը՝ Ֆրիդրիխ Էնգելսը։ Նա ասում էր, որ հավելյալ արժեքի մարքսյան տեսությունը «պարզ երկնքից ճայթող կայծակի տպավորություն գործեց..., որը կոչված էր ամբողջ տնտեսագիտությունը հեղաշրջելու և որը բանալի էր տալիս կապիտալիստական բովանդակ արտադրությունը հասկանալու համար» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. II, ՀԿ(բ)Կ ԿԿ հրատ., 1936 թ., էջ XXI, XXIII)։

Պատահական չէ, որ մարքսիզմի բացահայտ ու քողարկված թշնամիները, նրա քննադատները իրենց հարվածներն ամենից առաջ ուղղում են հավելյալ արժեքի տեսության դեմ։ Եվ դա հասկանալի է, քանի որ Մարքսն այդ տեսությամբ ցույց տվեց, որ բուրժուական հասարակության ամբողջ հարստությունը, շահագործող դասակարգերի անաշխատ եկամուտների միակ աղբյուրը բանվոր դասակարգի վարձու աշխատանքի շահագործման հիման վրա ստացվող հավելյալ արժեքն է։

Մարքսյան տնտեսագիտական ուսմունքի բուրժուական քննադատները, աշխատավորներին մոլորության մեջ պահելու համար, ճգնում են ցույց տալ, թե իբր Մարքսը սոցիալիզմի ու կոմունիզմի մասին չի թողել որևէ չափով ամբողջական ուսմունք։ Դեռ ավելին, նրանք պնդում են, թե Սովետական Միությունում և սոցիալիզմի մյուս երկրներում սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարությունն անմիջականորեն կապված չէ Մարքսի ուսմունքի հետ, այլ իրենից ներկայացնում է ինչ-որ առանձնահատուկ մի երևույթ։ «Բուրժուազիայի և ռեֆորմիզմի գաղափարախոսները,— գրում է Յու. Վ. Անդրոպովը Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցերը հոդվածում,— մինչև այսօր էլ հորինում են փաստարկների ամբողջ համակարգեր, փորձելով ապացուցել, թե իբր այն հասարակարգը, որ ստեղծվել է ՍՍՀՄ-ում, մյուս եղբայրական երկրներում, չի համապատասխանում սոցիալիզմի այն ձևին, որ պատկերացնում էր Մարքսը»։

Մարքսն իր առջև խնդիր չէր դնում տալ կոմունիստական հասարակարգի պատկերն իր բոլոր մանրամասնություններով։ Նա հեռու էր ապագա կոմունիստական ֆորմացիայի կազմակերպման դոգմատիկ ու քարացած ձևերի հորինման մտքից, դա կհակասեր նրա ուսմունքի ստեղծագործական ոգուն։ Պատահական չէր, որ Մարքսը վճռականորեն մերժում էր բանվորական շարժման ու սոցիալիզմի որոշ ներկայացուցիչների այն պահանջը, որ պետք է կոմունիզմի նկարագիրը տալ իր բոլոր կողմերով։ Սակայն սոցիալիզմի ու կոմունիզմի այն հիմնարար սկզբունքներն ու գծերը, որոնք ձևակերպել ու հիմնավորել է Մարքսը Էնգելսի հետ միասին, անանց նշանակություն ունեն սոցիալիստական շինարարության տեսության ու պրակտիկայի, սոցիալիզմի քաղաքատնտեսության կարևորագույն պրոբլեմների գիտական մշակման համար։

Մարքսն առաջինն էր, որ գիտականորեն հիմնավորեց, թե բանվոր դասակարգի կողմից իշխանության գրավումից և նրա դիկտատուրայի հաստատումից հետո պետք է գոյություն ունենա հասարակական զարգացման մի հատուկ փուլ՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու մի ամբողջ պատմական ժամանակաշրջան, երբ առաջինը հեղափոխական ճանապարհով փոխարկվում է երկրորդին։ Այդ հետևությունը Գոթայի ծրագրի քննադատությունը նշանավոր աշխատության մեջ առաջին անգամ ձևակերպեց Մարքսը, իսկ այնուհետև ստեղծագործաբար զարգացրեց Լենինը։

Սոցիալիզմի շինարարության հարուստ փորձը հաստատեց Մարքսի այն գաղափարը, որ ոչ մի երկիր չի կարող շրջանցել կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի կառուցման օբյեկտիվորեն պայմանավորված փուլերը և միանգամից անցնել նրա զարգացման բարձր փուլին՝ կոմունիզմին, մի կողմ թողնելով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը։ Դա կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի ծագման ու ձևավորման անհրաժեշտ ժամանա-



կաշրջանն է, որի ընթացքում ստեղծվում է սոցիալիզմի տնտեսական հիմքը։

Սոցիալիզմի քաղաքատնտեսության ոսկե ֆոնդի մեջ է մտնում կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի ու նրա երկու փուլերի մասին Մարքսի ուսմունքը։

Մարքսը, դեն նետելով միասնական կոմունիստական ֆորմացիայի մասին ոչ ճիշտ և աղոտ պատկերացումները, ստեղծեց գիտականորեն հիմնավորված կուռ ուսմունք՝ կոմունիստական ֆորմացիայի զարգացման երկու փուլերի մասին։ Ընդհանրացնելով սոցիալիստական շինարարության առաջին տարիների պատմական փորձը, Լենինը համակողմանիորեն զարգացրեց կոմունիստական ֆորմացիայի մասին մարքսյան ուսմունքը։

Նա ցույց տվեց, որ կոմունիստական ֆորմացիան անընդհատ զարգացող մի դինամիկ օրգանիզմ է՝ զարգացման իր աստիճաններով ու փուլերով։ Անցումը կոմունիզմին տեղի կունենա զարգացած սոցիալիզմի միջոցով, երբ, Մարքսի խոսքերով ասած, սոցիալիզմը կհասնի իր ամբողջականությանը։

Զարգացած սոցիալիզմը «մի հասարակություն է,— ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ասաց Յու. Վ. Անդրոպովը,— որտեղ արդեն լիովին ստեղծված են սոցիալիստական սկզբունքներին համապատասխանող տնտեսական բազա, սոցիալական կառուցվածք, քաղաքական սիստեմ, որտեղ սոցիալիզմը զարգանում է, ինչպես ընդունված է ասել, իր սեփական կոլեկտիվիստական հիմքի վրա»։ Մեթոդաբանական կարևոր նշանակություն ունի մարքսիզմ-լենինիզմի ուսմունքից բխող այն էական եզրակացությունը, որ զարգացած սոցիալիզմը դուրս չի գալիս կոմունիստական հասարակական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի շրջանակներից, այլ հանդիսանում է նրա համակողմանի հասունացման պատմականորեն անհրաժեշտ փուլը։ Պահպանելով ու զարգացնելով սոցիալիզմի հիմնական հատկանիշները, այն իր շարժման պրոցեսում ձեռք է բերում հասունության ավելի բարձր աստիճան։ Այդ փուլում է, որ ակնառու կերպով դրսևորվում են սոցիալիզմի առավելություններն ու դրանց իրացման հնարավորությունները։

Մշակելով հասուն սոցիալիզմի կոնցեպցիան, կուսակցությունը մատնանշում է, որ սովետական հասարակության առաջընթացը դեպի կոմունիզմ տեղի կունենա զարգացած սոցիալիզմի ուղիով, որը կոմունիստական ֆորմացիայի ձևավորման անհրաժեշտ ու տևական փուլն է։ Հենվելով զարգացած սոցիալիզմի մարքս-լենինյան տեսության վրա, ասում է Յու. Վ. Անդրոպովը, «...կուսակցությունը սահմանել է իր ստրատեգիան ու տակտիկան ամենամոտ տարիների և ավելի հեռավոր հեռանկարի համար, նախազգուշացրել է հնարավոր չափազանցումներից՝ կոմունիզմի բարձրագույն փուլին երկրի մոտենալու աստիճանի ըմբռնման գործում»։

Սոցիալիզմի քաղաքատնտեսության ձևավորման ու զարգացման համար էական նշանակություն ունեցավ կապիտալիստական մասնավոր սեփականությունը հասարակական սեփականությամբ փոխարինելու անխուսափելիության մասին Մարքսի հարցադրումը։ Նա նշում էր, որ կապիտալիզմին փոխարինելու եկող սոցիալիզմի հիմքն ու անկյունաքարը կդառնա արտադրամիջոցների հասարակական սեփականությունը։ Մարքսը և Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում շեշտը դնում էին արտադրահարաբերությունների միջուկը կազմող արտադրամիջոցների կապիտալիստական մասնավոր սեփականատիրական հարաբերությունների վերացման անհրաժեշտության վրա։ Նրանք ասում էին, որ «...կոմունիստներն իրենց տեսությունը կարող են արտահայտել մի դրույթով՝ մասնավոր սեփականության ոչնչացում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972 թ., էջ 155)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում իրականացավ Մարքսի և Էնգելսի մեծ կանխատեսումը՝ արտադրամիջոցների հասարակական սոցիալիստական սեփականության հաստատման հիման վրա վերացավ արտադրության օբյեկտիվ կողմի՝ արտադրամիջոցների և անձնական կողմի՝ աշխատուժի միջև եղած դարավոր անջատվածությունը, այսինքն՝ արտադրության պայմաններից աշխատանքի օտարումը։ Արտադրողները դարձան ինչպես արտադրամիջոցների, այնպես էլ արտադրվող արտադրանքի համատեղ սեփականատերերը։

Արտադրամիջոցների մասնավոր սեփականության վերացումը և հասարակականի հաստատումը Մարքսը և Էնգելսը համարում էին հանրային արտադրության պլանաչափ զարգացման անհրաժեշտ պայմանն ու հիմքը։ Սոցիալիստական հասարակարգն իրենից կներկայացնի աշխատողների մի կոոպերացիա, որոնք ընդհանուր հիմունքներով կտիրապետեն արտադրամիջոցներին և արտադրությունը կվարեն պլանաչափորեն։ Սոցիալիզմի ժամանակ «արտադրամիջոցների ազգային կենտրոնացումը կդառնա ընդհանուր և ռացիոնալ պլանով հանրային աշխատանքով զբաղված, ազատ և իրավահավասար արտադրողների միավորումից կազմված հասարակության ազգային հիմքը» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 18, стр. 57)։

Արտադրամիջոցների հասարակական սեփականության հիմքի վրա մեր երկրում ստեղծվել է հզոր, պլանաչափորեն զարգացող էկոնոմիկա, որին խորթ են գերարտադրության տնտեսական ճգնաժամերը և կապիտալիզմի մյուս արատները։ Պլանաչափությունը դարձել է սոցիալիստական հասարակության արտադրաուժերի և արտադրահարաբերությունների շարժման ու զարգացման օբյեկտիվ ձևը։

Սոցիալիզմի քաղաքատնտեսության տեսության զարգացման համար որոշիչ նշանակություն ունի Մարքսի այն հիմնարար գաղափարը, որ կոմունիստական ֆորմացիայի երկու փուլերում էլ պլանաչափորեն զարգացող հանրային արտադրության անմիջական նպատակը կդառնա մարդը, նրա նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարումը։ Սոցիալիզմի հիմնական սկզբունքը «կդառնա ամեն մի անհատի լիակատար ու ազատ զարգացումը» (Կապիտալ, հ. I, «Հայպետհրատ», 1954 թ., էջ 620)։

Եթե կապիտալիստական արտադրության անմիջական նպատակը հավելյալ արժեքի արտադրությունն է, ապա «սոցիալիզմի օրոք,— գրում է Յու. Վ. Անդրոպովը Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր հոդվածում,— ինչպես տեսականորեն ապացուցել է Մարքսը, աշխատանքի մարդկանց բարեկեցությունն է, պայմանների ստեղծումը անհատի համակողմանի զարգացման համար։ Ռեալ սոցիալիզմը մարքսյան տեսության այդ դրույթը դարձնում է կենդանի իրականություն» (էջ 13)։ Պատահական չէ, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում աշխատավորների բարեկեցության բարձրացումը դառնում է երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի հրամայական պահանջը, հանրային արտադրության արդյունավետության աճի վճռական գործոնը և հասարակական առաջընթացի հզոր շարժիչ ուժը։

Մարքսյան ուսմունքում էական նշանակություն ունեն հասարակական կյանքի զարգացման տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի բացահայտումը և գիտական հիմնավորումը։ Վերլուծելով տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթի հարցը, ինչպես գրում է Վ. Ի. Լենինը, «Մարքսը հասարակական շարժումը դիտում է որպես բնապատմական պրոցես, որ ենթակա է այնպիսի օրենքների, որոնք ոչ միայն կախված չեն մարդկանց կամքից, գիտակցությունից և մտադրությունից, այլ ընդհակառակն, որոշում են նրանց կամքը, գիտակցությունն ու մտադրությունները» (ԵԼԺ, հ. 1, էջ 195)։

Այս հիմնարար գաղափարներից հետևում է, որ հասարակության տնտեսական կյանքի զարգացման երևույթների, դրանց փոխադարձ պայմանավորվածության գիտական իմացության ելակետը տնտեսական օրենքների օբյեկտիվ բնույթն է։ Տնտեսական օրենքները գործում են մարդկանց կամքից և գիտակցությունից անկախ, հասարակության զարգացումն առաջին հերթին որոշվում է ոչ թե մարդկանց սուբյեկտիվ ցանկություններով, այլ օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողությամբ։ Ի տարբերություն կապիտալիստական արտադրությունը կառավարող մրցակցության կույր ու տարերային օրենքների, կոմունիստական ֆորմացիան զարգանում է մարդկանց կողմից ճանաչված և պլանաչափորեն գործող տնտեսական օրենքների կիրառման հիման վրա։ Նկատի ունենալով կոմունիստական հասարակարգը, Մարքսը նշել է. «Հասարակական կենսական պրոցեսի, այսինքն՝ կյանքի արտադրության նյութական պրոցեսի կառուցվածքը իր միստիկական մշուշային քողը դեն կնետի միայն այն ժամանակ, երբ նա մարդկանց ազատ միության արդյունք կդառնա և նրանց գիտակցական պլանաչափ վերահսկողության տակ կդրվի» (Կապիտալ, հ. I, էջ 88)։



Տնտեսական կյանքի զարգացման օրենքները սոցիալ-տնտեսական տարբեր ֆորմացիաներում չեն կարող միատեսակ լինել, դրանցից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատուկ օրենքները։ Դա մարքս-լենինյան քաղաքատնտեսության ելակետային դրույթներից մեկն է։ «Մարքսը,— նշել է Վ. Ի. Լենինը,— ժխտում է հենց այն գաղափարը, թե տնտեսական կյանքի օրենքները միատեսակ են թե՛ անցյալի և թե ներկայի համար։ Ընդհակառակն, յուրաքանչյուր պատմական ժամանակաշրջան իր սեփական օրենքներն ունի» (ԵԼԺ, հ. 1, էջ 196)։

Սոցիալիստական տնտեսավարման հարուստ փորձը հաստատում է այն իրողությունը, որ արտադրության գիտական կառավարումն անհնարին կլինի առանց սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողության մեխանիզմի իմացության ու խելացի օգտագործման։ «Այդ օրենքների օբյեկտիվ բնույթը,— ասում է Յու. Վ. Անդրոպովը,— պահանջում է ձերբազատվել էկոնոմիկան նրա էության խորթ մեթոդներով կառավարելու ամեն տեսակ փորձերից» (Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր, էջ 12)։

Արժեքավոր և ուսանելի են Մարքսի ասույթները ժամանակի խնայողության, ազատ ժամանակի և հասարակական աշխատանքի արտադրողականության հարցերի վերաբերյալ։ «Ժամանակի խնայողությունը, ինչպես որ ըստ արտադրության տարբեր ճյուղերի աշխատաժամանակի պլանաչափ բաշխումը, մնում է առաջին տնտեսական օրենքը կոլեկտիվ արտադրության հիման վրա» (Архив К. Маркса и Ф. Энгельса. т. 4 стр. 119)։

Ըստ Մարքսի, ինչպես ամեն մի անհատի, այնպես էլ ողջ հասարակության համակողմանի զարգացումը պայմանավորված է ժամանակի խնայողությամբ։ Բանվորական ժամանակի խնայողության մեջ արտացոլվում է սոցիալիստական արտադրության արդյունավետությունը։ Դրանից հետևում է, որ սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացման համար պետք է խնայողաբար ու ռացիոնալ օգտագործել նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսները։

Մարքսը նկատել է, որ սոցիալիստական հասարակարգում աշխատաժամանակը կկատարի երկակի դեր։ Այն, մի կողմից, պատշաճ հարաբերակցություն կհաստատի աշխատանքային տարբեր ֆունկցիաների և տարբեր պահանջմունքների միջև, իսկ մյուս կողմից՝ կծառայի իբրև մի չափ՝ որոշելու արտադրողների անհատական մասնակցությունը հանրային աշխատանքին, հետևաբար և՝ նրանց բաժինը ամբողջ արդյունքի անհատական սպառման մեջ։ Այստեղից հետևում է, որ սոցիալիզմի ժամանակ հասարակական և անհատական սպառման ծավալը պլանավորելիս պետք է ելնել ինչպես առկա արտադրաուժերի զարգացման ձեռք բերված մակարդակից, այնպես էլ այն պահանջմունքներից, որոնք բխում են արտադրության ընդլայնման և մարդկանց համակողմանի զարգացման շահերից։

Մարքսը մեծապես կարևորում էր սոցիալիզմի պայմաններում նաև ազատ ժամանակի հարցը, որն անմիջականորեն առնչվում է անհատի համակողմանի զարգացման և նրա ստեղծագործական ունակությունների դրսևորման հետ։ Աշխատաժամանակը մշտապես կլինի հասարակության հարստության հիմքը, իսկ մարդու տնօրինած ազատ ժամանակը հենց ինքը հարստություն է։ Ցույց տալով կապիտալիզմի նկատմամբ սոցիալիստական հասարակարգի արմատական տարբերությունը, Մարքսը շեշտում էր, որ կապիտալիզմի ժամանակ շահագործող դասակարգերի ազատ ժամանակը գոյանում է աշխատավորների ամբողջ կյանքն աշխատաժամանակ դարձնելու միջոցով, իսկ սոցիալիզմի օրոք ազատ ժամանակը մարդկանց հանգստի և համակողմանի զարգացման կարևոր պայմանն է։

Շատ արժեքավոր է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին Մարքսի հետևյալ ասույթը. «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հենց այն է, որ կենդանի աշխատանքի բաժինը նվազում է, իսկ անցյալ աշխատանքինն՝ աճում, բայց աճում է մի այնպիսի հա-

րաբերությամբ, որ ապրանքի մեջ պարունակվող աշխատանքի ամբողջ գումարը նվազում է...» (Կապիտալ, հ. III, 1-ին մաս, 3-րդ գիրք, «Պետհրատ», 1947 թ., էջ 244)։

Արդի պայմաններում, երբ մեր երկրի տնտեսական աճի ծանրության կենտրոնը փոխադրվում է առավելապես ինտենսիվ զարգացման ուղու վրա, առանձնապես կարևորվում է հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ մարքսյան գաղափարների իրագործումը։ «Հասարակական տեսակետից,— գրել է Մարքսը,— աշխատանքի արտադրողականությունն աճում է նաև նրա տնտեսման միջոցով։ Վերջինը պարունակում է ոչ միայն արտադրամիջոցների տնտեսումը, այլև ամեն մի անօգտակար աշխատանքի վերացումը» (Կապիտալ, հ. I, էջ 552—553)։ Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար էական նշանակություն ունի արտադրանքի միավորի արտադրության պրոցեսում ոչ միայն կենդանի աշխատանքի, այլև նյութական միջոցների ռացիոնալ օգտագործումը։

Հասարակական աշխատանքի արտադրողականության աճի մասին մարքս-լենինյան ուսմունքից հետևում է, որ այդ աճը պետք է տեսնել ոչ միայն արտադրվող արտադրանքի քանակի ավելացման, այլև նրա որակի բարձրացման մեջ։ Այստեղ պետք է արտահայտվեն ոչ միայն արտադրանքի միավորի արտադրության համար կենդանի և անցյալ աշխատանքի ծախսումների ռացիոնալ օգտագործումն ու խնայողությունը, այլև արտադրանքի որակի բարձրացումը։ Դա բխում է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի այն պահանջից, որ մարդու նկատմամբ հոգատարությունը պետք է արտահայտվի նաև նրանում, թե հասարակությունը ինչ որակի արտադրանք է առաջարկում նրա անձնական պահանջմունքների բավարարման համար։ Իսկ այդ ենթադրում է, որ սոցիալիստական տնտեսավարման սիստեմում պետք է համակողմանիորեն քննարկեն ապրանքի արժեքի հարցը, որում արտացոլվում է դրա օգտակարության աստիճանը։ Մարքսի տնտեսագիտական ուսմունքում կարևորվում է անհրաժեշտ և հավելյալ արդյունքի հարցը, որը տեսական ու գործնական սկզբունքային նշանակություն ունի սոցիալիզմի քաղաքատնտեսության տնտեսական կատեգորիաների ճիշտ իմաստավորման համար։

Անհրաժեշտ և հավելյալ արդյունքի մարքսյան ուսմունքից հետևում է, որ կապիտալիզմի ժամանակ անհրաժեշտ արդյունքը հանդես է գալիս աշխատուժ ապրանքի արժեքի, իսկ հավելյալ արդյունքը՝ հավելյալ արժեքի ձևով։ Սոցիալիզմի ժամանակ անհրաժեշտ արդյունքը կենսամիջոցների հիմնական մասի այն ամբողջությունն է, որը կոչված է ապահովելու աշխատուժի վերարտադրությունը և նրա համակողմանի զարգացումը, իսկ հավելյալ արդյունքը ծառայում է հանրային արտադրության աճի, ընդլայնման ու կատարելագործման նպատակին։ Այսպիսով, սոցիալիզմի օրոք ինչպես անհրաժեշտ, այնպես էլ հավելյալ արդյունքը պատկանում է աշխատավորներին և օգտագործվում է նրանց շահերի համար միայն։

Ընդլայնված վերարտադրության մարքսյան սխեմաները և դրանց օգտագործումը սոցիալիստական էկոնոմիկայում ստեղծագործաբար զարգացրեց և մի նոր աստիճանի բարձրացրեց Վ. Ի. Լենինը։ Այդ սխեմաները հնարավորություն են ընձեռում սոցիալիստական ընդլայնված վերարտադրության երկու ստորաբաժանումների զարգացման տեմպերի միջև սահմանելու օպտիմալ հարաբերակցություններ։ Դա անհրաժեշտ է հատկապես արդի պայմաններում, երբ էկոնոմիկան փոխադրվում է ինտենսիվ զարգացման ուղի։

Սովետական տնտեսագետներն իրավամբ պաշտպանում ու խորացնում են անձնական սպառման առարկաների արտադրության նկատմամբ արտադրամիջոցների արտադրության առավել աճի և առաջատար դերի մասին մարքս-լենինյան տեսությունը։ Սակայն ինչպես տեսության մեջ, այնպես էլ պրակտիկայում դրա կիրառումը չանցավ առանց դոգմատիկ ու միակողմանի մոտեցումների քննադատության։ Անցյալում տարածված էր այն սխալ տեսակետը, որ կոմունիստական հասարակական ֆորմացիայի զարգացման բոլոր փուլերում սպառման առարկաների արտադրության նկատմամբ պետք է տեղի ունենա արտադրամիջոցների արտադրության առաջանցիկ աճ։ Նման մոտեցումը



տնտեսական շինարարության բնագավառում շատ հաճախ հասցնում էր նոր ձեռնարկությունների շինարարության, արտադրական կարողությունների յուրացման չափից ավելի ձգձգման, նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների փոշիացման, մետաղի, էներգիայի ու վառելիքի ծախսումների շռայլման և դրա հետ կապված էկոնոմիկայի հայթայթող ճյուղերի էքստենսիվ ընդլայնման։ Դրա հետ մեկտեղ, թերագնահատվում էր անձնական սպառման առարկաների արտադրության զարգացումը, որը հակասում էր ընդլայնված վերարտադրության մարքս-լենինյան ուսմունքին։ Չպետք է մոռանալ, որ արտադրամիջոցների արտադրության առաջանցիկ աճը չի կարող իրագործվել առանց սպառման առարկաների արտադրության համապատասխան զարգացման։ Բայց որոշ տնտեսագետներ պնդում էին, որ պետք է անձեռնմխելի թողնել սոցիալիստական ընդլայնված վերարտադրության այն համամասնությունները, որոնք բնորոշ էին երկրի ինդուստրացման ժամանակաշրջանին։ Դա սխալ մոտեցում էր, քանի որ ընդլայնված վերարտադրության ընդհանուր օրինաչափությունները չեն կարող միատեսակ դրսևորվել երկրի տնտեսական զարգացման տարբեր փուլերում։

Կային նաև այնպիսի կարծիքներ, որ պետք է հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների աճի տեմպերը չփոփոխել։ Նման կարծիքները խորապես սխալ էին։ Վ Ի. Լենինը, հենվելով ընդլայնված վերարտադրության երկու ստորաբաժանումների մարքսյան սխեմաների վրա և հարստացնելով դրանց բովանդակությունը, ցույց տվեց, որ սոցիալիզմի ժամանակ տեղի կունենա արտադրամիջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրության աճի տեմպերի մերձեցում, որը հնարավորություն կընձեռի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի մեջ զգալիորեն ավելացնելու աշխատավորների անձնական սպառման բաժինը։ Իհարկե, այդ չի նշանակում, որ պետք է թերագնահատել սպառման առարկաների արտադրության նկատմամբ արտադրամիջոցների արտադրության առավել աճի ու զարգացման ընդլայնված վերարտադրության Մարքսի հայտնագործած տնտեսական օրենքի պահանջը։

Այդ օրենքի գործողության մեխանիզմի ճիշտ օգտագործման միջոցով միայն կարելի է ապահովել արտադրաուժերի զարգացումն ու կատարելագործումը։ Սակայն սխալ կլինի կարծել, թե սոցիալիստական արտադրությունը կարող է զարգանալ արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքի գործողության հիման վրա միայն։ Հասարակական և անձնական պահանջմունքների բավարարման համար պետք է ունենալ ոչ միայն արտադրամիջոցների, այլև ժողովրդական սպառման առարկաների արտադրության զարգացած ճյուղեր։ Այդ դեպքում միայն սոցիալիստական արտադրության անմիջական նպատակը՝ մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը, կիրականացվի բարձր մակարդակով։ Ելնելով բնակչության բարեկեցության հետագա բարձրացման շահերից, պլանավորված է ընթացիկ հնգամյակում «Բ» խմբի ճյուղերի առավել արագ աճ, անձնական սպառման ապրանքների թողարկման ավելացում։

Սոցիալիստական տնտեսավարման արվեստը ոչ թե նրանում է, որ ժողովրդական տնտեսության մի ճյուղը զարգանա մյուսի հաշվին, այլ այն բանում, որ բոլոր ճյուղերը զարգանան արագ տեմպերով և անհրաժեշտ մասշտաբներով։ Դա վերաբերում է ինչպես արտադրամիջոցներ, այնպես էլ անձնական սպառման առարկաներ արտադրող ճյուղերին։

Մարքսի տնտեսագիտական ուսմունքում որոշակի տեղ ունի բաշխման հարաբերությունների հարցը։ Հայտնի է, որ մինչև մարքսիզմի երևան գալը բաշխման հարաբերությունների ճիշտ իմաստը մնում էր չպարզաբանված։ Ինչպես Մարքսի ժամանակ, այնպես էլ այժմ, բուրժուական քաղաքատնտեսության ներկայացուցիչները փորձել ու փորձում են բոլոր հնարքներով ցույց տալ, որ բաշխման հարաբերությունները կտրված ու անկախ են հասարակության տնտեսական կյանքի զարգացման հիմքից և արտադրության տիրապետող ձևից։ Նյութական ու հոգևոր բարիքների բաշխման հարաբերությունները կտրելով արտադրության իշխող եղանակի բնույթից, բուրժուական գաղափարախոսները ճգնում են ցույց տալ, որ, իբր, բաշխման հարաբերություններն

ունեն սեփականատիրական հարաբերություններից և արտադրության տնտեսական պայմաններից անկախ իրենց օրենքները։ Նման հարցադրումը հիմնովին սխալ է։ Բաշխման հարաբերությունները, որոնք անմիջականորեն շոշափում են մարդկանց, նրանց տարբեր սոցիալական խմբերի ու դասակարգերի շահերը, որոշվում են ամեն մի հասարակարգի սոցիալ-տնտեսական բնույթով, ամենից առաջ՝ արտադրամիջոցների սեփականության ձևով։

Մարքսն առաջինը գիտականորեն հիմնավորեց, որ նյութական ու հոգևոր բարիքների բաշխման հարաբերություններն ունեն ոչ թե հավերժական բնույթ, այլ դրանք ածանցվում են սեփականատիրական հարաբերություններից, և արտադրության եղանակի փոփոխման հետ մեկտեղ փոփոխվում են բաշխման բնույթն ու էությունը։

Նկատի ունենալով կոմունիստական ֆորմացիայում բաշխման հարաբերությունների առանձնահատկությունը, Մարքսը գրել է. «Ազատ մարդկանց միության աշխատանքի ամբողջ արդյունքը հասարակական արդյունք է։ Այդ արդյունքի մի մասը դարձյալ իբրև արտադրամիջոց է ծառայում։ Այդ մասը մնում է հասարակական մաս։ Բայց մյուս մասը միության անդամներն սպառում են որպես կենսամիջոց։ Ուստի, այդ մասը պետք է բաշխվի նրանց միջև։ Այդ բաշխման եղանակը փոփոխվելու է բուն իսկ հասարակական-արտադրական օրգանիզմի բնույթի և արտադրողների պատմական զարգացման աստիճանի համեմատ» (Կապիտալ, հ. I, էջ 87)։

Բաշխման հարաբերությունների իմաստի ճիշտ ըմբռնման համար կարևոր նշանակություն ունի Մարքսի Գոթայի ծրագրի քննադատություն աշխատությունը, ուր գիտականորեն հիմնավորված են սոցիալիզմի պայմաններում հասարակական ամբողջական արդյունքի բաշխման սկզբունքները։

Այստեղ ցույց է տրված, որ սոցիալիզմի ժամանակ հասարակական ամբողջական արդյունքի հանրայնացումը և դրա յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի վերացումը բնավ չի նշանակում, թե ամբողջ արդյունքը պետք է հատկացվի հասարակության անդամների անձնական սպառմանը միայն։ Դրա մի մասը, նշել է Մարքսը, պետք է օգտագործվի հանրային արտադրության ընդլայնման և հասարակական այլ կարիքների, իսկ մյուս մասն՝ անձնական պահանջմունքների բավարարման համար։ Սակայն գլխավորն այն է, որ միավորված արտադրողների աշխատանքով ստեղծված արդյունքից կատարվող հանումները չեն հակադրվում նրանց շահերին, քանի որ այն, ինչ հանվում է յուրաքանչյուր աշխատողից, ուղղակի կամ անուղղակի վերադառնում է նրան, որպես հասարակության անդամի։ Մարքսը վճռականորեն մերժում էր իր ուսմունքի ոգուն միանգամայն խորթ, մանրբուրժուական այն սխալ հայացքը, որ սոցիալիզմը պետք է լինի նյութական ու հոգևոր բարիքների բաշխման ու սպառման բնագավառում համընդհանուր հավասարության հասարակարգ։

Սոցիալիզմը չի կարող միանգամից ստեղծել լիակատար սոցիալական հավասարություն։ Դրա համար անհրաժեշտ են ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ պայմաններ։ Այդ պայմանները կստեղծվեն կոմունիստական հասարակական ֆորմացիայի բարձրագույն փուլում, երբ հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը յուրաքանչյուրի համար կդառնա առաջին կենսական պահանջմունք, գիտակցված անհրաժեշտություն։ Քանի դեռ այդ պայմանները չեն ստեղծվել, պետք է հասարակության ու պետության կողմից կիրառել խստագույն վերահսկողություն յուրաքանչյուրի աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ։ Հետևաբար, սխալ կլինի, ինչպես ասում է Յու. Վ. Անդրոպովը, առանց ճիշտ հաշվի առնելու յուրաքանչյուրի ավանդը նյութական ու հոգևոր բարիքների ստեղծման գործում, առաջ վազել և կամային ճանապարհով մտցնել բաշխման կոմունիստական ձևեր։

Մարքսի տնտեսագիտական ուսմունքում ձևակերպված են սոցիալիզմի քաղաքատնտեսության կարևորագույն դրույթներն ու սկզբունքները, որոնք հնարավորություն են ընձեռում ճիշտ իմաստավորելու սովետական հասարակության կյանքում տեղի ունեցող երևույթների էությունը և նրա զարգացման հեռանկարը։



# ԱՌԱՋԱԴԵՄ ԳՐՈՂ-ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԸ

ԱԶԳԱՅԻՆ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ գաղափարներով հարուստ ավանդույթներ են պարունակում XX դարասկզբի արևմտահայ գրականությունն ու հրապարակախոսությունը, որոնք ներծծված են ժողովրդական իմաստասիրությամբ ու մարդասիրական արժույթներով։ Այդ ժառանգությունն ըստ արժանվույն գնահատվեց միայն սոցիալիստական հասարակարգի պայմաններում, երբ վերածնված հայ ժողովուրդը հնարավորություն ունեցավ վերաստեղծելու ո՛չ միայն իր տնտեսական, այլև հոգևոր ու մշակութային կյանքը։ Խնդիր դրվեց ի մի բերել ողջ ազգային հոգևոր հարստությունը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կենսունակ լինելու համար պետք է հենվել ժողովրդի կողմից անցյալում ստեղծված ողջ հոգևոր հարստության վրա, որ «միայն մարդկային ամբողջ զարգացմամբ ստեղծված կուլտուրան ճշգրիտ գիտենալով, միայն նրա վերամշակմամբ կարելի է կառուցել պրոլետարական կուլտուրա, առանց այդպիսի ըմբռնման մենք այդ խնդիրը լուծել չենք կարող» (**ԵԼԺ**, հ. 41, էջ 362)։

Հիրավի, դժվար է պատկերացնել հայ գրականության պատմությունն իր ամբողջության մեջ, առանց ճիշտ գնահատելու արևմտահայ և սփյուռքահայ մտավորական սերունդների ստեղծագործական վաստակը։ Կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության կիրառած քաղաքականության շնորհիվ, 30-ական թվականներից սկսած, Սովետական Հայաստանի և միութենական հրատարակչությունները պարբերաբար լույս են ընծայում արևմտահայ և սփյուռքահայ առաջադեմ գրողների, հրապարակախոսների, հասարակական գործիչների երկերը, նրանց մասին հրատարակվում են աշխատություններ, մենագրություններ։ Բացի այդ, մայր հայրենիքի նյութական ու բարոյական օժանդակությամբ արտասահմանում նույնպես լույս են տեսնում այդ հատվածի պատմական, գրական ու մշակութային լավագույն գործերը։ Այս ամենի շնորհիվ սփյուռքահայ պատմությունն ու գրականությունն արժանացել են միութենական ու միջազգային ճանաչման։

Այսուամենայնիվ, արևմտահայ ու սփյուռքահայ գրական-հրապարակախոսական դասական շատ նմուշներ տակավին լրիվ չեն ուսումնասիրված և սպասում են պատշաճ գնահատության։ Դրանցից է Սուրեն Պարթևյանի գրական ու հրապարակախոսական ժառանգությունը։

Սուրեն Պարթևյանը (1876—1921) պատկանում է դարասկզբի արևմտահայ գրողների և հրապարակախոսների այն սերնդին, որը տեսավ և ապրեց սուլթանհամիդյան ռեժիմի սարսափը, արևմտահայության ցեղասպանությունը։ Նա ականատես եղավ հայրենիքից հայության զանգվածային տեղահանության ու կոտորածին։ Այս ամենը խոր կնիք թողեց Պարթևյանի ստեղծագործության վրա։ Հանդես գալով իբրև գրական-հասարակական գործիչ՝ նա իր նովելներում, վեպում, դրամաներում, ակնարկներում և հրապարակախոսական հոդվածներում մերկացրել ու դատապարտել է գենոցիդի քաղաքականությունը։ Պարթևյանը, Աբովյանի, Նալբանդյանի, Թումանյանի նման, հայ ժողովրդի ազատագրության հեռանկարը կապել է միայն Ռուսաստանի հետ՝ մերժելով «բարեգութ Եվրոպայի» հետ կապված ազատագրության բոլոր հույսերը, մերկացնելով և խարազանելով իմպերիալիզմն ու զավթողական պատերազմները։ Նա եռանդուն մասնակցել է հասարակական կյանքին, եղել է հնչակյան, ապա վերակազմյալ-հնչակյան և ռամկավար կուսակցության ակտիվ հրապարակախոսներից մեկը, 1909-ին՝ Կիլիկիայի աղետի օրերին, որպես ազգային երեսփոխան, հսկայական աշխատանք է ծավալել Ադանայում՝ անապաստան մնացած հայերին նյութական ու բարոյական աջակցություն ցույց տալու գործում։

Պարթևյանը հայ գրականությունը հարստացրել է նոր թեմաներով, լուսավոր կռահումներ է կատարել՝ հայ ժողովրդի ճակատագրի և նրա ապագայի վերաբերյալ, որոնք այժմեական նշանակություն ունեն։ Ինչ թեմա էլ արծարծել է Պարթևյանը, բոլոր գործերում գերիշխող մոտիվը պայքարն է հանուն ազգային ազատագրության և ինքնորոշման։

Պետք է նկատել, որ XX դարի սկզբին հանդես եկած արևմտահայ գրական սերունդը, գտնվելով քաղաքական աննախադեպ փոթորիկների մեջ, կրելով ազգային հալածանքների սարսափը, ողջ ուշադրությունը կենտրոնացրել էր հայրենիքի ազատագրության և ժողովրդի գոյատևման խնդիրների վրա: Նրանք, սակավ բացառությամբ, գրեթե չեն արծարծել ժողովրդի նյութական կեղեքման, սոցիալական ներքին հակասությունների հարցեր, որոնցով այդ շրջանում հարուստ է գրականությունն ընդհանրապես: Եվ դա հասկանալի է: «Քանի դեռ կենսունակ ժողովուրդը օտարերկրյա զավթիչների կողմից կաշկանդված է,— գրում է Ֆ. Էնգելսը,— նա ըստ անհրաժեշտության իր բոլոր ուժերը, իր բոլոր ձգտումները, իր ամբողջ եռանդը ուղղում է արտաքին թշնամու դեմ, և քանի դեռ նրա ներքին կյանքը, այսպիսով, մնում է ջլատված, նա ի վիճակի չի պայքարել սոցիալական ազատագրման համար» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Վ. Ի. Լենին, **Գիտական կոմունիզմի մասին**, «Հայաստան» հրատ., 1955, էջ 354): Այս հայեցակետից նայելով խնդրին՝ դժվար չէ համոզվել, որ Ս. Պարթևյանի ամբողջական գործն այժմեական հնչեղություն ունի, քանի որ նրա արտահայտած մի շարք գաղափարներ ճնշվող ու հալածվող ժողովուրդների այսօրվա ազգային-ազատագրական պայքարի մտայնությունների համարժեքը կարող են հանդիսանալ:

Ս. Պարթևյանին հայտնի էին պատմության դասերը, հայ և հալածական մյուս ժողովուրդների դժոխային ճակատագրի բազում էջերը: 1895—1896-ին համիդականների սարքած արյան հեղեղներից մազապուրծ շատ մտավորականների հետ Պարթևյանը ևս բռնեց տարագրության ճանապարհը՝ «քաղաքակիրթ Եվրոպայի» օգնության աղոտ հույսերով: Սակայն, ի տարբերություն իր սերնդի մյուս մտավորականների, Պարթևյանը հայրենիքից բաժանվելու առաջին իսկ օրը, շոգենավում ականատես լինելով հուսադրած եվրոպացու՝ անգլիացի նավապետի տմարդի արարքին և մարդկային թշվառության հանդեպ նրա բիրտ անտարբերությանը, կռահեց ճշմարտությունը. «Ատիկա կյանքիս մեծ գիշերը եղավ... Ո՞ր կերթայի կոր,— դառնացած գրում է տարագիրը,— «Եվրոպա՞», «ազատ երկի՞ր», «քաղաքակիրթ ժողովուրդներու» մեջ... Խե՛ղճ, միամի՛տ տղա»: (Ս. Պարթևյան, **Քայքայում** (նովելների գիրք), Իզմիր, 1910, էջ 8): Պարթևյանի աշխարհայացքի համար սկզբունքային արժեք ունեցող այս հայտնագործումը համամարդկային է, որը հեռու է երազող անհատի ռոմանտիկական պատկերացումներից:

Պարթևյանը տեսավ խոր անդունդ փայփայած իդեալների և իրականության միջև: Իսկ երբ Լոնդոնի մայթերի վրա, Փարիզի բուլվարներում, Ամերիկայի «հյուրընկալ» երկնքի տակ նա ականատես եղավ **ապրելու իրավունքը** աղերսող գաղթականների նվաստացմանն ու հոգեկան քայքայման փաստերին, զգաց բուրժուական աշխարհի հերմետիկական լռության արհավիրքը, տեսավ «քաղաքակրթության պետերի պիղատոսյան հայացքի» կեղծիքը: Ազգային ինքնապաշտպանության ու գոյատևման այրող խնդիրները հայրենասեր տրիբունին համակեցին մի նոր գաղափարաբանությամբ, այն է՝ «կովին քարոզ»-ը, որի ջահակիր դերը պատիվ բերեց նրան:

Հայտնի է, որ արևմտահայ գրողները և երիտասարդ մտավորական նոր սերունդը, ընկնած 1896-ից, դեգերելով աշխարհի տարբեր երկրներում, առաջին պահ ընկել էին իրարամերժ մտայնությունների և անկումային գաղափարների հորձանուտը: Պետք էր մեկը, որ այդ մղձավանջից սթափման ու պայքարի կոչ աներ: Հենց Սուրեն Պարթևյանն էլ դարձավ առաջին շեփորահարը, որը, խզելով շուրջ երեք տարվա անորոշ լռությունը, իր հիմնադրած «Վաղվան ձայնը» թերթի (Մանչեստր, 1898) առաջին համարում ազդարարեց. «Հուզումի շրջան մըն էր, որ անցանք, ալ ատենն է, որ մտածելու վարժվինք... Մեր թերթը պայքարի թերթ մըն է»: **Մենք** վերնագրով առաջնորդողի այս կոչը լայն արձագանք գտավ մամուլում և գրական-հրապարակախոսական շրջաններում: Այն փաստորեն գրական մանիֆեստի արժեք ունեցավ:

Ազգային ազատագրության գաղափարներով տոգորված Պարթևյանի հրապարակախոսության մյուս էջերը՝ «Խարազան» ինքնատիպ երգիծաթերթը, **Կիլիկյան արհավիրքը** ակնարկների գիրքը, **Արարա** գրքույկը, **Հայ երիտասարդությանը**, **Հայ գրականությունը**, **Մեր գրական գնահատումները**, **Վաղվան գործը** և բազմաթիվ այլ հրապարակախոսական հոդվածներ ցույց են տալիս, որ անձնվեր գործչին սրտի ցավ ու զայրույթ են պատճառում բուրժուական շրջաններում իշխող այն հերյուրանքները, թե իբր հայ ժողովրդի դառնալի ճակատագիրն ազգային խենթության հետևանք է: Այդ հերյուրանքների հերքման առումով Պարթևյանի ծառայությունն ավելի ակնհայտ կդառնա, եթե անդրադառնանք պատմական երևույթների ճշմարիտ գնահատումների փաստերին, որոնք կան աշխարհի նշանավոր շատ դեմոկրատների՝ Վ. Բրյուսովի, Հանրի Բարբյուսի, Ռոմեն Ռոլանի, Մաքսիմ Գորկու, Անատոլ Ֆրանսի, Ֆրիտյոֆ Նանսենի և այլոց՝ «հայկական հարցին» վերաբերող աշխատություններում: Նրանք իրենց բողոքն ու զայրույթն են հայտնել թուրքական բարբարոսության և դրա եվրոպական հովանավորների դեմ, խղճի մտոք, ճիշտ ու օբյեկտիվ գնահատել հայ ժողովրդի կրած ծանր ողբերգությունը:

Պատմագիտությանը հայտնի է, որ Արևմըտյան Հայաստանում ազգային-ազատագրական պայքարը, չունենալով համազգային, կազմակերպված բնույթ, զուրկ լինելով ղեկավար ուղղություն տվող ուժից, մի կողմից բախվում էր անհավասար գոտեմարտին, մյուս կողմից՝ օտար միջամտության խաբուսիկ պատրանքների խորտակմանը, ազգերի միջև հրահրվող թշնամանքին: Ինչպես նկատել է Պարթևյանը, այս անգամ նույնպես «քաղաքակրթության հզորները»՝ եվրոպական տերությունները «կոնակ դարձուցին հայ տառապանքին»:

Պաշտպանելով և զարգացնելով այն ճըշմարտությունը, թե հայ ժողովրդի կրած ողբերգությունը Եվրոպայի և Արևմուտքի բուրժուական երկրների արյունոտ գործն է, Պարթևյանն իր գրչով ծառս է լինում առաջին հերթին իմպերիալիզմի դեմ: «Եվրոպական դիվանագիտութենեն խաբար լքված, մատնված և անկե ալ հույսը կտրած հայությունն այս անգամ, իր անհուն կսկիծին մեջ չունեցավ նույնիսկ մխիթարանքը Եվրոպայի կարծիքին և մամուլին կարեկից համակրությունը ու իրեն պատահած աղետի դժբախտության ճիշտ ու հուզված հասկացողությունը վայելելու: Եվրոպան անտարբեր ու ծանրացած ականջով մը լսեց հայկական կոտորածներու այս նոր գույժը...» (Ս. Պարթևյան, **Կիլիկյան արհավիրքը**, Կ. Պոլիս, 1909, էջ 7): Պարթևյանը ցավով նկատում է նաև, որ հայ ժողովրդի ծանր կացությանը գեհենական հարված է հասցնում եվրոպական բուրժուական մամուլը: «Լա Ռուվեի»-ի, «Ֆիգարո»-ի, «Ժուռնալ»-ի էջերում տեղ գտած սուտ ու սխալ փաստերն ակնարկելով և դրանք մերկացնելով՝ Պարթևյանը բացահայտում է բուրժուական թերթերի կեղծիքն այն մասին, թե իբր հայերը Թուրքիայում ապստամբություններ են կազմակերպել: Փաստորեն կոտորվող ժողովուրդը զրպարտվում էր՝ առասպելական վարկածներով: Դատապարտելով Եվրոպան ու նրա «պոռնկացած դիվանագիտությունը»՝ Պարթևյանը գրում է. «Եվ այս վիթխարի սուտերը կը գլորվին օտար մամուլին մեջ՝ պարզապես հանրային կարծիքը հայերուն դեմ նախապաշարելու համար» (նույն տեղը, էջ 209): Որքա՜ն տիպական և արդիական է հնչում Պարթևյանի այս մղումը, երբ այսօր աչքներիս առջև, շուրջ 70 տարի անց, պատմության կեղծարարները փորձում են նույն կերպ ծուել «հանրային կարծիքը»: Դրա ամենաթարմ օրինակներից մեկը 1978-ին Անկարայում հրատարակված Սալահի Ռ. Սոնիելի **Հայերի տեղափոխությունը** խորագրով գիրքն է, որը, ի դեպ, լույս է տեսել երեք լեզուներով՝ թուրքերեն, անգլերեն և ֆրանսերեն:

Ինչևէ, մերկացնելով աշխարհի հզորների կեղծիքն ու երկերեսանիությունը՝ Պարթևյանն ազգային գոյատևման միակ հույսը կապում է Ռուսաստանի հետ: «Ռուսաստանը,— գրում է նա,— Արևելքի ժողովուրդներու հզոր պաշտպանն է անշուշտ» (Ս. Պարթևյան, **Արարա**, Կահիրե, 1914, էջ 9): Այդ դիրքորոշումն ընկըրկվել է Պարթևյանի հասարակական ու գրական կյանք մտնելու առաջին իսկ շրջանից և շարունակվել մինչև նրա կյանքի վերջը:

Բազմաթիվ այլ առիթներով, երբ գրողն առնչվել է հայրենակիցների հուսալքման փաստերին կամ գրական ու մտավորական շրջաններում նկատվող անկումային տրամադրություններին, դրսևորել է իր զարմանալի կանխատեսումները և հուսադրիչ խոսք ասել, որոնք անմիջապես կապված են ռուսական իրականության և ռուսական առաջադեմ մտքի հետ: Այդ առումով ուշագրավ է հրապարակախոսի **Վաղվան գործը** հոդվածը, գրված Մեծ եղեռնից անմիջապես հետո՝ 1916-ին: Ժողովրդի հուսալքումը փարատելու և գրական ու հրապարակախոսական ուժերին հավատով ու ապագայի լույսով տոգորելու մի փայլուն էջ է սա Պարթևյանի ստեղծագործության մեջ, գրողի հեռատեսության ամենավառ վկայությունը: Հետաքրքրականն այն է, որ իր ժողովրդի վերածննդի ապագայով մտահոգ գրողը, պատմականության խորունկ ըմբռնումով, ազդարարում է լուսավոր ճըշմարտությունը. «Թրքահայությունը, գեթ իր մեծության սահմաններուն մեջ, արդեն իսկ կորսնցուցած իր երեկվա զատորոշ իմաստը, **երկարաձգումը դարձած է ռուսահայության: Վաղը հայկական երկու զանգվածնե՛րը պիտի համախառնվին ու հոգեխառնվին, և ազգային վարչության կենտրոնը, աներկբայորեն, Կովկասին պիտի վիճակվի պարունակել»** (ընդգծումը մերն է— Ա. Գ., Ս. Պարթևյան, **Անապատին հուշարձանը**, Կահիրե, 1916, Ա հատոր, տետր 2):

Հայ ժողովրդի փրկությունը ռուսական իրականության հետ կապելու հույսերն են արտացոլված նաև Պարթևյանի գեղարվեստական մի քանի գործերում: Բնորոշ են **Պատնեշին վրա** նովելը, **Ձայնը հնչեց** վեպը, **Անմահ բոցը** դրաման և այլն:

Պարթևյանը հումանիստ գրող է: Նրա ստեղծագործություններում ազգայինն անքա-

ժան է համամարդկայինից: Եվ, պատահական չէ, որ գրողի ժամանակակիցները բարձր են գնահատել Պարթևյանի տաղանդն ու գրական դավանանքը, նրա բացառիկորեն ինքնատիպ ոճը:

Պարթևյանի հումանիզմի գաղափարական հարստությունը զգալի չափով պայմանավորված է ռուս և համաշխարհային առաջադեմ գրականության հարուստ փորձի յուրացմամբ, նշանավոր գրողների բարերար ազդեցությամբ: Խոսելով ռուս գրականության մեծերի՝ Դոստոևսկու, Տոլստոյի, Գորկու մասին, նա հատկապես շեշտում է նրանց հումանիզմը և հայրենասիրությունը: Իսկ շատ հաճախ որպես Ռուսաստանի հոմանիշ գործածում է «Տոլստոյի հայրենիք» արտահայտությունը: Պատահական չէ, որ արտասահմանյան հայ մամուլում Պարթևյանը հատուկ հոդվածներով ընթերցողներին է ներկայացրել Լ. Տոլստոյի և Մ. Գորկու գաղափարական-գեղարվեստական արժանիքները: Հետաքրքրական է նրա՝ Լ. Տոլստոյի մահվան առթիվ գրած հոդվածը 1910-ին, որ հրապարակվել է իր իսկ խմբագրած «Դաշինք» օրաթերթում (Իզմիր, № 388)․ Անմահ գրողին նա այստեղ բնութագրում է որպես **ռուս մեծ ազգի մեծագույն զավակ, համայն մարդկության մեծագույն դեմքերից մեկը, բովանդակ մուժիկ զանգվածների հավիտենական մարգարե:**

Որպես արվեստագետ, Պարթևյանն օժտված է անուրանալի տաղանդով: Գրողի գրական ճաշակի ընկալման, նրա դավանանքի բացահայտման բանալի կարող է հանդիսանալ հետաքրքրական այս միտքը. «Գրականություն ըսված բանը սոսկ արձակ կամ ոտանավոր բանաստեղծություններու, արշալույսի կամ վերջալույսի նկարագրություն կամ գրախոսական, քննադատական, իմաստասիրական տեսություններու մեջ չի կայանար, և **քաղաքական խնդիրներն ալ գրականության տարրը կը կազմեն,** պայմանով, որ գրականորեն ծեծվին, այսինքն՝ ակադեմիական և գրական բարձրություններէ նկատի առնվելով» («Հուսանք», Կահիրե, 1912, № 9): Պարթևյանի գրական-հրապարակախոսության մեծագույն արժույթներից մեկը հենց քաղաքական թեմատիկան է: Նրա կերտած կերպարները վրեժով տոգորված, չարիքի դեմ սուր պայքարող հերոսներ են, «սուրբ կռվին» համար ոտքի ելած կամավորներ, որոնք իրենց մեջ ժողովրդի տարերային ուժն են ամբարում: **Զավակը** նովելի գաղափարական բովանդակությունը գյուղում խմորվող հեղափոխական իրադրությունն է: Երիտասարդ վարժապետի գործունեության մի միջադեպի միջոցով գրողն արծարծում է ժողովրդին հուզող հրատապ խնդիրը՝ ազատագրական կռվի հարցը: Թեև քահանայի մատնությամբ թուրքերը վարժապետին ձերբակալում են, բայց նա հավատը չի կորցնում: Ուշագրավ է, որ հեղափոխական գործիչը վերջին պահին իր սիրելի աշակերտին՝ ըմբոստ հայուհու որդուն՝ Վարդանին է կտակում ժողովրդի մեջ ընդվզում ու կռվի ոգի բորբոքելու պատգամը:

**Զինակիրները** գործի հերոսը մի ծերունի է, որը երիտասարդներին օրինակ տալով՝ զենք է տեղափոխում լեռները, կամավորներին: Տելի Պապան քաջ գիտակցում է, որ կռիվն անողոք է, դաժան, ամեն ժամ մահվան վըտանգ կա: Այդ նույն ոգին ներարկում է իր երիտասարդ ընկերներին, որոնք ազատագրական պայքարում սոսկ փառավոր հերոսացման երազ են փայփայում:

Կրոնական հավատալիքներից, սնոտի ըսպասավորների՝ հնազանդության քարոզներից հրաժարվելու գեղարվեստական ընդհանրացումն է կատարված նաև **Փրկարար սուտը** նովելում: Այստեղ հավատացյալ գզիր Օհանը՝ քահանայի՝ «հնազանդվիլ ու համակերպվիլ» խորհրդի ճիշտ հակառակ՝ կռվելու պատգամն է տալիս թուրքերի հարձակման վտանգի մեջ գտնվող գյուղացիներին և փրկում գյուղը ավերածությունից ու թալանից: Այս գործերում, ինչպես նաև **Փրկության բանակը, Տերը, Տերպապան, Գաղթականը** նովելներում և **Անմահ բոցը** դրամայում Պարթևյանի աշխարհայացքը մոտենում է աթեիզմին: Ապրելով XIX դարի վերջերին և XX դարի սկզբներին՝ առաջադեմ իր աշխարհայացքով նա կարողացել է զգալ ժողովրդական հեղաբեկումները, տեսել ու ապրել է ո՛չ միայն հայ, այլև մյուս ժողովուրդների մտքի ու սրտի փոփոխությունները և իր հոգուց իսպառ ջնջել սնոտի ապավինելու գաղափարը:

Հայրենիքի ու մայր ժողովրդի ազատագրության հոգսերով մտահոգված գրողը խոր կըսկիծ ու զայրույթ է ապրել նաև այն գորշ երևույթի հանդեպ, որ արտասահմանում գործող զանազան կուսակցություններ, առաջին հերթին, դաշնակցությունը, մամուլը ողողել էին սուտ ու սխալ մեկնաբանություններով, ազգային վերաշինության անպտուղ վեճերով, միտինգներում ու ժողովներում հանդես էին գալիս դատարկ ու փքուն ճառերով: Չունենալով որոշակի ծրագիր և տեսական որևէ գաղափարախոսություն, կուսակցական առանձին գործիչներ հույսեր էին կապում տեռորի, անհատական վրեժխնդրության հետ, գործնականում միայն վնասելով ազգային ազատագրության գաղափարների տարածմանը: Ինչպես հայտնի է, այդպիսի անհեռատես գործելակերպի հետևանքով շատ ու շատ առաջադեմ մտավորականներ զոհ գնացին դաշնակցականների այդօրինակ վարքագծին:



Պարթևյանն իր գործունեության սկզբից իսկ պայքարել է անսկզբունքայնության դեմ: Բնորոշ է, որ դեռևս 1898-ին, «Վաղվան ձայն»-ում նա հանդես է եկել մի սարկաստիկ հոդվածով՝ **Փրկիչները,** ուր անողոք մերկացրել է դաշնակցականների ստահոդ հայրենասիրությունը, նրանց ազգային սահմանափակությունը, ձաղկել ու դատապարտել է տեռորի քաղաքականությունը: Այդ թեման գեղարվեստական արտացոլում է գտել արվեստագետի մի քանի նովելներում: **Ազատության գողգոթան, Տեռորը, Բարի լո՛ւր մը Վահրամին** գործերում գրողը խոսում է հասարակական անպտուղ վեճերի, երկպառակությունների, տեռորի, հեղափոխական առանձին գործիչների սխալ հայացքների, պայքարի կոնկրետ ձևերից նրանց խույս տալու մասին: Այդ գործերում հիմնական գաղափարը համերաշխության կոչն է: **Տեռորը** նովելում, օրինակ, գործողությունները տեղի են ունենում մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ կուսակցությունների ներսում կիզակետին էին հասել երկպառակությունները: Հեղափոխական գործչի բնորոշ հատկանիշներն են արտացոլված **Բարի լո՛ւր մը Վահրամին** հրապարակախոսական երկում: Վահրամը հեղափոխական գործունեության համար միշտ հետապնդվել է իշխանությունների կողմից, բանտ նետվել, բայց չի ընկճվել: Սակայն երբ կուսակցական երկպառակությունների լուրը հասել է բանտում գտնվող Վահրամին, չկարողանալով տանել իր հնչակյան կուսակցության մեջ տեղի ունեցող խժդժությունները, նա հյուծախտ է ընկել: Չհատնելու, ապրելու համար բարի լուր է հարկավոր նրան, իր գաղափարակիցների միաբանության լուրը. «Ա՛հ, ձեր լանջքերը թող իրարու փարին,— գրում է Պարթևյանը,— եղբայրության աղաղակ մը, հեղափոխության վիրապատ թևերուն տակ խելահեղ գիրկընդխառնումի մը արձագանքը հե՛գ, հասնող Վահրամին համար, որպեսզի չի դադրի ան հուսալե, հավտալե, ապրելե...

Բարի լո՛ւր մը Վահրամին...»:

Բանաստեղծական չափի մեջ դրված այս տողերը համախմբվածության կոչ են. ազնիվ ու վեհ է նպատակը:

Սակայն ճշմարտությունը պահանջում է ասել, որ XX դարի սկզբների գրողների զգալի մասի աշխարհայացքում նկատելի է մի սահմանափակություն, որ առանձնապես որոշակի է ազգային-ազատագրական պայքարի գաղափարներն արծարծող ստեղծագործողների հետ: Հույսները կտրելով արտաքին միջամտությունից ու օգնությունից, ինքնապաշտպանության քարոզը դրոշ դարձրած՝ կամավորական շարժման էին ապավինում նրանք և կուսակցական համերաշխությունը դիտում որպես ազատագրական կռիվ բորբոքելու հիմնական միջոց: Եվ կարծում էին, թե այդ կերպ անպայման հաղթանակ ձեռք կբերվի: Բայց այդ կուսակցությունները և նրանց պարագլուխները չկարողացան տեսնել կազմակերպված, որոշակի ծրագրով ղեկավարող կուսակցության դերի անհրաժեշտությունը: Այդ կուսակցությունները գիտեին պատմությունը, բայց չկարողացան ըմբռնել պատմականության էությունը տվյալ փուլում, չկարողացան դասեր քաղել պատմությունից: Այս թերություններից զերծ չէր նաև հնչակյան կուսակցությունը, որի անդամն էր Ս. Պարթևյանը: Հարկ է նկատել, սակայն, որ Պարթևյանը դեռևս 900-ական թվականներից ամբողջապես ապավինում էր ռուսական օգնությանը:

**Քայքայում** ժողովածուում ամփոփված նովելներում մերժելով լալկան երգը, Պարթևյանը գրել է. «Ա՛հ, երգե՛րը, աղվոր, անգույն երգե՛րը, անոնց չէ, որ կը պարտինք քիչ մը մեր բոլոր տաժանքները, ինչպես մեր լավագույն ուրախությունները, անոնցմով չէ՞ որ ըսկըսավ, ու կը վերջանա, քիչ մը ամեն բան, ու մեր հայրենասիրությունը, մանավանդ, երգերո՛վ միայն ծնած, երգերո՛վ ապրած, երգերո՛վ արյունոտած մեր հայրենասիրությունը» (**Թրենի մեջ**): Գրողի միտումն այն է, թե հայրենասիրությունը երգերի ու ողբի մեջ չէ, և ոչ էլ սպանվածի համար աղիողորմ լացը կարող է վերապրելու հույս լինել: Հարցադրման պատասխանն ավելի որոշակի է արտահայտված 1909 թ. գրած **Անդարմանելին** ակնարկում, որտեղ կարդում ենք. «Դիակները կը թաղվին, վերքերը կգոցվին, արցունքները կը ցամքին, արյունները կը սըրբվին, ավերները կը վերականգնին, աղետքը կը դարմանվի, բա՛յց, բա՛յց... մեր հոգիներուն մեջ կոտրած, խորտակված բան մը կա, հավատքի ավեր մը, հուսահատության ցավ մը, որ կմնա անդարմանելին» (Ս. Պարթևյան, **Կիլիկյան արհավիրքը,** Կ. Պոլիս, 1909 թ., էջ 200): Իրոք, հաստատում է Պարթևյանը. «Հայության կողոպուտը Տաճկաստանով չի վերջացավ»: **Փրկության բանակը** նովելի հերոս Գարեգինն զգացել է, որ «բանակը» անդամագրվածների մեջ առաջին հերթին մեռնում է ամեն մի սուրբ զգացում, որովհետև նրանց վարժեցրել են անընդհատ պատմելու իրենց ցավերից՝ այն դարձնելով ծիծաղելի ու զավեշտական, «տոլլարներու երկրի» խոստումներով խաբելով նրանց: Այս նովելում Ս. Պարթևյանը բացահայտում և մերկացնում է գաղթականների հոգեբանու-

թյան մի բնորոշ գիծ: Դա ամերիկաբաղձության մոլուցքն է, որով ախտավորված էին գաղթականներից շատերը: Եվ ո՛չ միայն նրանք:

«Ամերիկա՜... Ամերիկա՜... Գավառացի հայ գաղթականին համար տարօրինակ դյութություն մը, կարծես նախախնամական նշանակություն մը ունի այդ անունը»,— նկատում է Գարեգինը: Նրանցից մեկը հիսունն անց խարբերդցի մի ծերունի է: Ոսկու պաշտամունքն ունի նա և միշտ մտովի քեմերի ծանրությունն է շոշափում: Հերոսը **Փրկության բանակի** մեջ ամեն տեսակ ստորացումներ է կրում՝ «միայն թե նամփու ծախքը տան»: Սակայն հուսախաբությունը չի ուշանում: Մի օր էլ նրան ու իր մյուս ընկերներին, որոնք սպասում էին «տոլլարներու երկրի» ավետյալ ճանապարհին, ուղեկցում են լոնդոնցի մի կալվածատիրոջ ագարակը... փորհացի աշխատելու: Հօդս են ցնդում խոստումները: Ծերունու հոգու խորտակումը զգալով՝ Գարեգինն ասում է. «Այդ մարդը մենե էն դըժբախտն էր այդ պահուն»:

Հույների անհետ չքացման ու պատրանքների խորտակման պատմություն անելով՝ Ս. Պարթևյանը ինչպես այս, այնպես էլ **Գթության գոհերը**, **Քրիմսի իրիկուն մը** և այլ գործերում, հոգեբանական վերլուծության ու կերպարների տիպականացման միջոցով, հասնում է գեղարվեստական խոր ու լայն ընդհանրացման: Նրբանկատ արվեստագետի շոշափած ամերիկաբաղձության խնդիրն այժմեական հնչեղություն ունի և այսօր էլ մնում է որպես մերժելի երևույթներից մեկը՝ շարունակելով զբաղեցնել հասարակական ու գրական միտքը:

Սովետական Միությունը, լենինյան ազգային հետևողական քաղաքականությամբ, մարդասիրության և ինտերնացիոնալիզմի սկզբունքներից ելնելով, իր դռները լայնորեն բացեց աշխարհով մեկ սփռված հայության առաջ. թուրքական բարբարոսական քաղաքականության հետևանքով հայերի զգալի մասը դարձավ սփյուռքահայեր, կորցրին իրենց հայրենիքը և դեգերում են օտար ափերում կամ տարրալուծվում այս կամ այն ժողովրդի մեջ: Նրանցից հարյուր հազարավորները, սովետական կառավարության ընձեռած հնարավորության շնորհիվ, ներգաղթեցին հայրենիք և ապրում ու բարգավաճում են հարազատ տանիքի տակ:

Պարթևյանը բազմախորհուրդ գրող է: Չնայած նրա գեղարվեստական մտասևեռումը ազգային գոյատևման խնդիրն է, այնուամենայնիվ, նրա ստեղծագործական լաբորատորիան հարուստ է ժողովրդի սոցիալական կյանքի պատկերներով: **Քայքայում** և **Հայուհին** գրքերի նովելներից մի քանիսում գրողը հոգեբանորեն վերլուծում է սոցիալական հակասությունները: Այդ տեսակետից ուշագրավ է **Կարմիր Ծուշանը** նովելը, որտեղ կերպարի զարգացման պատմությունը հյուսվում է ոչ թե հերոսուհու ներքին լարվածության, նրա հոգու «ռեզերվի» հաշվին, ինչպես դա նկատելի է քաղաքական թեմայով գործերում, այլ կերպարը բացահայտվում է արտաքին հանգամանքների տիպականացման միջոցով:

Հերոսի շուրջը ծավալվող գործողությունների միջավայրի խորհմացությունը հնարավոր է դարձրել մանրամասների շեշտմամբ տիպականացնել կերպարի զարգացումը:

Հինգ տարեկանից որբացած Ծուշանին որդեգրել են Բերայի մեծահարուստ Սիրաքյան ամուսինները, որոնք, ժառանգ չունենալով, փոքրիկ Ծուշանին շրջապատում են առանձին հոգածությամբ, ուսման տալիս: Անկարիք կյանքի, միջավայրի կիրթ ու վայելուչ պայմաններում Ծուշանի հոգուց ջնջվում է որբության զգացումը: Փարթամ ու ճոխ կյանքը բնությունից գեղեցկությամբ օժտված օրիորդին դարձնում են իսկական պարմանուհի: Ընտանեկան ու հասարակական հավաքույթներում Ծուշանը միշտ բարձր դասի հասարակության ուշադրության կենտրոնում է: Նրա շուրջն են պտտվում «դարպասող ու բծնի՝ բերացի բոլոր շիք երիտասարդները»: Նրանցից ամեն մեկը ջանում է արժանանալ չքնաղ ու հարուստ օրիորդի բարևին, ժպտալ նրան: Սակայն Մարտիրոս էֆենդի Սիրաքյանը, «առևտրական ձախորդ ձեռնարկություններու» հետևանքով գրեթե ունեզրկվում, սնանկանում է: Այն պահին, երբ «քայլ մը միայն կը մնար վճռելու համար կյանքի տևական փարում մը», աղջկա ճակատագրի որբության «ախտին» ավելանում է նաև «դրամի փայլի» կորուստը: «Օրիորդ Ծուշան Սիրաքյան բանտարկյալն էր հիմա քաղքենի, այլասերած ընկերության»,— նկատում է հեղինակը:

Կենցաղային ու առօրեական թվացող փաստի միջոցով գրողը կարողանում է հասարակական խոր բովանդակություն արտահայտել ու գտնել մարդկային ողբերգության չարիքի արմատը՝ սոցիալական անհավասարությունը: Այն միջավայրում, ուր ապրում է Ծուշանը, մարդկային արժանիքները չափվում են ծագումով, դրամի փայլով: Սեփականատիրական աշխարհում երիտասարդներն ընդօրինակում են կյանքում բարեշնորհ երևալու իրենց ծնողների երկերեսանիությունն ու նրանց վարքագծի մյուս հատկանիշները:

— Կարելի՞ էր միթե կնության առնել այդ աղջիկը, որ որբ մըն էր ծագումով,— այսպես են նրանք արդարացնում աղջկանից երես թեքելու իրենց տմարդի վերաբերմունքը՝ թաքցնելով դրամի տենչը, որ այնքան հրապուրիչ «կը ցուցցներ Ծուշանը»:

Բնորոշ է ու տիպական, որ Ծուշանի ձեռքը խնդրող երիտասարդներին նրանց ծնողները ճանապարհի կեսից ետ են պահում՝ կրկին նույն երեսպաշտությամբ.

— Կը վայլե՞, ճանըմ, ո՛րբ էր նե... Հա՞յրը, մա՞յրը ո՛վ էին արդյոք,— ասում է նրանցից մեկը:

Քաղքենի հասարակության աչքում սա միակ փաստարկն է, որով բուրժուական հոգեբանությունը կարողանում է առանց «մեղադրանքների» իրեն հեռու պահել «ստոր» ու «նվաստացուցիչ» հանգամանքներից: Մինչդեռ հայտնի բան է, որ նրանց հոգում բույն դրած ախտը մերկ շահն է, դրամի մոլուցքը: Այսպիսով, Ծուշանը ապրում է «հոգիի արհամարհոտ կղզիացում մը»:

Գրողը սյուժեի մի հանգույցում պարզում է նաև իրականի ու իդեալի խորհուրդը: «Քաղքենի ոսկեզօծ պերճանքին մեջ» խորթացած անդամի «պայծառ հոգին համրորեն» հոշոտող հասարակությանը հակադրված է հեղինակի իդեալը: Մեղկ ու քաղքենի բարոյականության կողքին, Ս. Պարթևյանն առաջադրում է «կարելին»: Նա ցանկանում է, որ Ծուշանը գնար ժողովրդի, աշխատավոր մասի գիրկը. «Անոնց մոտ դու որբուհին պիտի չըլլայիր... Անոնք կորսնցուցած իրենց զավկներուն տեղ պիտի առնեին, պիտի սիրեին քեզի... **Գյուղին կյանքի մոխիրներու մեջեն հարություն պիտի առներ հետզհետե**» (ընդգծումը մերն է— Ա. Գ.): Ազնիվ, անշահախնդիր ու «ցորենի նվիրական դաշտերուն մեջ բեղմնավորվող» կյանքի գովերգումը պատրանք կամ ցնորք չէ, այլ հեղինակի բուռն համակրանքը աշխատավորական խավերի, խոր լավատեսությունը նրանց ձեռքերով վերաշինվող կյանքի հանդեպ: Խորապես վշտացած լինելով իր հերոսուհու ճակատագրով, Ս. Պարթևյանը որոնում, ասես, պեղում է կեցության արմատները և վերապրելու հույսը կապում է գյուղական արգավանդ կյանքի հետ:

Էգոիզմի, նյութապաշտության, թուլամորթության ու շահամոլության տիպական կերպար են կերտված նաև **Հացին ումը**, **Թիփըրըրերի**, **Մղձավանջը**, **Զավակը** և այլ նովելներում:

Պարթևյանը մեծ գրող է, նշանավոր հրապարակախոս: Նրա գրական ժառանգությունն աչքի է ընկնում թեմաների հրատապությամբ, խոր հումանիզմով, հստակ կառուցվածքով, քնարական հագեցվածությամբ, հրապարակախոսական արվեստի հնչեղությամբ, փիլիսոփայական խորհրդածություններով: Նա իր գրական-հրապարակախոսական երկերով, հասարակական գործունեությամբ ներկա ու գալիք սերունդներին խորհելու, հուզվելու շատ պահեր կարող է պարգևել: Առավել ևս այժմ, երբ պարզորոշ խնդիր է դրված ըստ ամենայնի զարգացնել հայրենիք-սփյուռք մշակութային կապերը: Ս. Պարթևյանը, որպես լուսավոր կռահումների մի ողջամիտ դեմք, իր արժանի տեղն է գրավում հայ գրականության պատմության մեջ:

**Ա. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ**

## Գրախոսություն և քննադատություն

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ «ՍՈՎԵՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՄԱՍԻՆ

ՀՐԱՊԱՐԱԿԻ ՎՐԱ Է Հրանտ Թամրազյանի **Սովետահայ գրականության պատմությունը**:

Թամրազյանը հեղինակ է տասնյակ մենագրությունների, ուսումնասիրությունների, հոդվածների, գրախոսությունների: Իր պրոբլեմատիկ աշխատություններով, խորազնին վերլուծությամբ, համարձակ, բանիմաց ելույթներով նա շարունակ շիկացրել է գրական մթնոլորտը, խոր ազդեցություն թողել սովետահայ գրականության զարգացման պրոցեսի վրա:

Աշխատության առաջին մասը կրում է **Սովետահայ գրականության ակունքները** խորագիրը իր ենթաբաժիններով՝ **Դարասկզբի գրական հոսանքները** (ներածության փոխարեն), **Սոցիալիստական գրականության գոյավորումը** (1900—1920), **Հայ դեմոկրատական գրականությունը և հեղափոխությունը**՝ շուրջ 156 էջ:

Գրականության պատմաբանը ներկայացնում է քննադատական ռեալիզմի նվաճումները ռուսական առաջին հեղափոխության նախօրեին, հեղափոխության ընթացքում, ռեակցիայի, համաշխարհային պատերազմի տարիներին, ապա սոցիալիստական հեղափոխության մատույցներում, ներկայացնում է հայ պրոլետարական գրականության գոյավորումը՝ որպես գրական նոր ուղղություն, սոցիալիստական ռեալիզմի **կազմավորումը**՝ որպես ստեղծագործական նոր մեթոդ, սովետահայ գրականության **սկզբնավորումը**՝ պատմական նույն շրջափուլերում:

Խոսելով գրական անկումային հոսանքների՝ հեթանոսական շարժման, լիբերալ, ազգային պահպանողականների-լեռականության, ֆուտուրիզմի, ռեակցիոն այլազան հոսանքների՝ մոդեռնիզմի, նատուրալիզմի մասին, Թամրազյանը բացահայտում է դրանց դեմ մարքսիստ գրականագետների, դասական գրողների մղած սկզբունքային, եռանդուն պայքարը:

Հակառակ լեռականության, թե իբր մեր դասականների՝ Շիրվանզադեի, Մուրացանի, Նար-Դոսի, Թումանյանի, Իսահակյանի երկերում ծաղկում է «արվեստ արվեստի համար» սկզբունքը, հակառակ Վրթ. Փափազյանի **«սպեկտրային»** տեսության, ըստ որի հեղափոխությունն իր դինամիկայով գրականությունը մղում է անկումից անկում, գրողին զրկում ինքնատիպությունից, գրականությունը՝ բազմազանությունից, իբր հեղափոխությունն իր արագության մեջ **ի մի է ձուլում** ամեն գունագեղություն, ինչպես Ֆրանկլինի պտուտակում սպեկտրի բոլոր գույները վերածվում են սպիտակի, հակառակ վուլգար սոցիոլոգիզմի՝ Հար. Սուրխաթյանի, թե իբր հայ գրականությունը զարգացել է բուրժուական գաղափարախոսության դրոշի տակ... դադարել է որպես արվեստ գոյություն ունենալուց, իբր գոյություն է ունեցել միմիայն **նացիոնալիստական** մոտիվների ականջ խլացնող թմբկահարություն, Թամրազյանը խոր համոզվածությամբ ցույց է տալիս, թե ինչպես պատմական մեծ իրադարձությունների հորձանուտում մեր դասականները՝ Շիրվանզադեն, Իսահակյանը, Տերյանը, Սիամանթոն, Վարուժանը, Արփիարյանը, Դեմիրճյանը, Զորյանը, Չարենցը, հեղափոխության ազդեցության ներքո, կերտել են ռեալիզմի մնայուն արժեքներ, թե ինչպես Հակոբյանը, Կուրղինյանը ստեղծել են հայ պրոլետարական գրականություն, թե ինչպես կազմավորվել է սոցիալիստական ռեալիզմը՝ որպես ստեղծագործական նոր մեթոդ, **սկզբնավորվել** է հայ սովետական գրականությունը:

Բացահայտ է, ուրեմն, հեղափոխության շրջափուլերում գրականությունն ապրում է ոչ թե անկում, այլ ծաղկում— ոճերի ինչպիսի՜ բազմազանություն, գույների ինչպիսի՜ հարստություն, ռեալիստական արվեստի ինչպիսի՜ զարգացում: Եվ այդ ամենը Թամրազյանը, իրավամբ, համարում է հայ սովետական գրականության **ակունք**:

Այդ է պատմական իրողությունը, պատմական ճշմարտությունը:

Այդպիսի եզրահանգումը մենք համարում ենք Թամրազյան-տեսաբանի աշխատության **Սովետահայ գրականության ակունքներ** բաժնի մեծագույն արժանիքը:

**Ակունքներ** բաժնում, սակայն, ունենք **կառուցվածքային** մի նկատառում, որի մասին արժե խոսել փոքր քիչ հանգամանորեն:

Ե՞րբ է **սկզբնավորվել** հայ սովետական գրականությունը. հոկտեմբերի՞ց, 1917—1920 թթ., թե՞ նոյեմբերից, երբ Հայաստանում հաստատվել են սովետական կարգեր:

Հայ սովետական գրականությունը, մեր խորին համոզմամբ, սկզբնավորվել է հոկտեմբերից, երբ փոքրաթիվ ժողովուրդների, նաև հայ ժողովրդի համար արդեն առկա էին ազգային-սոցիալիստական վերածնության ռեալ հիմքերը: Հոկտեմբերը «կարմիր խազ քաշեց» հնի և նորի միջև,— գրում էր Չարենցը: Ասելով «անցյալ», մենք այսօր պատկերացնում ենք այն ամենը, ինչ որ գտնվում է 1917-ի հոկտեմբերից այն կողմը»:

Սովետական գրականության ծնունդն էին նշանավորում ո՛չ միայն Մ. Գորկին, Վլ. Մայակովսկին, Դ. Բեդնին, Վ. Բրյուսովը, Ալ. Բլոկը (Ռուսաստան), Պ. Տիչինան, Վլ. Սոսյուրան (Ուկրաինա), Յա. Կուպալան, Յա. Կոլասը (Բելոռուսիա), ուր արդեն սովետական կարգեր էին հաստատվել, այլև Տիցիան Տաբիձեն, Հ. Հակոբյանը, Տերյանը, Չարենցը՝ Ռուսաստանի ծայրամասերում, ուր դեռևս իշխում էին կապիտալիստական հարաբերությունները:

Հոկտեմբերի մատույցներում՝ 1917—1920 թթ., ուրեմն, համաշխարհային հեղափոխության ներգործությամբ, տեղի էր ունենում պատմական նշանակալից մի պրոցես և— **սովետահայ գրականության սկզբնավորման** պրոցեսը: Հակոբյանական «զուռ» պրոլետարական «սազը» վերաճեց չարենցյան **սովետական** պոեզիայի հզոր սիմֆոնիայի՝ ներառելով ու մարմնավորելով ազգային գրականության հազարամյակների կենսական ավանդները:

Չարենցի **Ռադիոպոեմների, Տաղարան** շարքի հետ ներդաշնակորեն, անկրկնելի ուրույնությամբ ու հմայքով հնչում էին նաև Թումանյանի փիլիսոփայական քառյակները, լեգենդները, Իսահակյանի **Սասմա Մհեր** վիպերգը, Տերյանի, Հակոբյանի հոկտեմբերյան ցնծագին երգերը: Նկատելի է, մի կողմից, խոր ակնածանք հայ դասական քնարերգության՝ Նարեկացու, Քուչակի, Սայաթ-Նովայի հանդեպ, մյուս կողմից՝ սոցիալիստական հեղափոխության հզոր շնչի տակ, նույն ավանդներով բեղմնավորված սովետահայ գրականության արարումը: Եվ անտրոհելիորեն միաձուլվում էին արվեստի «հին» ու նոր արտահայտչաձևերը, օրգանապես ներթափանցում դասական ռեալիզմի վսեմ հումանիզմն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը:

Հայ գրականությունը Հոկտեմբերի մատույցներում ապրում էր **թռիչքային** զարգացում, սոցիալիստական իդեալը դրսևորվում էր ո՛չ միայն իբրև գաղափարախոսություն, այլև **իրականություն.** Սովետական Ռուսաստանն ընկալվում էր որպես հարազատ հայրենիք, հոկտեմբերյան նվաճումները՝ սեփական: Որբային, մենակության ծանր զգացումները փոխարինվում էին ցնծագին զգացումների, հզոր ու հաղթական կոչերի. «**մեր դրոշի դեմ**՝ կխորտակվե՜ն. մենք մութ աշխարհում ջա՛հ ենք... թող գա՜ն, թող գա՜ն, թող գա՜ն..»— վսեմորեն հնչում էր Տերյան-արվեստագետի մարտակոչը՝ ընդդեմ ինտերվենտների, մեր հին ու նոր թշնամիների:

Հոկտեմբերյան հեղափոխությունը հայ գրողներին դուրս քաշեց «նահրյան անձուկ բանտից» (Տերյան), մղեց դեպի ստեղծագործական լուսաշող հորիզոններ:

Չարենցն արտահայտեց հեղափոխության համաժողովրդական ուժը՝ «դասակարգերի ամենասուր պայքարից խթանված տասնյակ միլիոնների գիտակցությունը, կամքը, ավյունը, ֆանտազիան» (Լենին):

**Մենք ենք, որ նո՛ր ենք, հազա՛ր ենք ու բյուր,—**

հնչում էր բանաստեղծի հաղթական ձայնը:

Հաղթահարվում էր հայ պրոլետարական գրականության միակողմանիությունը, տեղայնությունը, կոսմոպոլիտիզմը: Մեր արվեստագետները ազգային կյանքի, ծվատված հայ ժողովրդի փրկությունը հայցող նկրտումներով էին դիմավորում հեղափոխությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմը: Հայ պրոլետգրողները, մարքսիստ քննադատները, դասականների մեծագույն ու լավագույն մասը, գրական հոկտեմբերյան սերունդն ընտրում էին կեցության **սոցիալիստական** ուղին, մարտնչում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար, Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար:

«Հոկտեմբերյան հողմերի» ներքո փոխվում էին նաև Չարենցի պատկերավորման միջոցները՝ կերպարը, գունային հյուսվածքը, չափատողերը, ռիթմը՝ լցնելով մեծ հեղափոխության կենդանի շնչով: **Կապույտը**՝ որպես «անմխիթար զառանցանքի» խորհրդանիշ, վերա-

* *Հ. Թամրազյան,* Սովետահայ գրականության պատմություն, *Երևանի պետհամալսարանի հրատ., 1980 թ.:*

էլ այն թունդ էր ու ճչացող, այլ բնորոշը հոկտեմբերյան նվաճումների պաշտպանությունն էր, սոցիալիստական կենսաձևի հաստատման պաթոսը, հավերժապես փրկված հայ ժողովրդի ազգային-սոցիալական վերածնության խանդավառ գովքը, ազատագրված մարդու տիրական շունչը, ամենուրեք զգացվող նոր կյանքի կենդանի հևքը. «Նո՜րն է գալիս, նո՜րն է արշավում»— հավաստում էր Ալեքսանդր Մյասնիկյանը:

Այլ էր գրական մթնոլորտը երկրի սոցիալիստական վերակառուցման փուլում՝ 1925—1930-ական թվականներին: Գրական-ստեղծագործական, գեղագիտական-փիլիսոփայական հայացքների բախման շիկացած մթնոլորտում, ամենասուր, ամենաթեժ պայքարում, 20-ական թվականների երկրորդ կեսերին հաղթահարվեցին ժառանգման, գերհեղափոխականության, կեղծ ժողովրդայնության, սխեմատիզմի աղաղակող արատները: Գրականության արտացոլման, ժողովրդայնության, կուսակցականության լենինյան ավանդները ստեղծագործական կյանք մտան: Լիովին լուծվեց **կենդանի մարդու** կերտման պրոբլեմը: Հորդեց դարավոր աղետներից ձերբազերծված մեր ժողովրդի ստեղծագործական հանճարը: Արվեստի աշխարհում տիրաբար իշխեցին չարենցյան պոեզիայի, բակունցյան արձակի, դեմիրճյանական թատերգության կենսունակ ավանդներն ու զարգացման միտումները: Հակոբյանական զուտ պրոլետարական շեփորը վերաճեց չարենցյան-բակունցյան-թումանյանական ազգային արվեստի հըզոր սիմֆոնիայի: Կերտվեցին **Էպիկական լուսաբացը, Մթնաձորը,** ստեղծվեցին գեղարվեստական տասնյակ լուսավոր էջեր:

Գրականության պատմության մեջ մտավ՝ **Ես մարդ եմ, պոետ ու քաղաքացի,**— Չարենցի թևավոր խոսքը՝ որպես հիմն մարդու, հայրենիքի, խաղաղության, որպես սոցիալիստական արվեստի, կոմունիստական հումանիզմի բարոյափիլիսոփայական իդեալի հաստատման կոչ, որպես սոցիալիստական հումանիզմի զարգացման ելակետ ու անկասելի ընթացք՝ սահմանելով ռեալիստական արվեստի նոր ու բարձր չափանիշներ:

Խստագույնս քննադատելով ֆուտուրիստական իր մոլորությունները, ամբողջությամբ բացասելով մերկ իդեոլոգիայի դրոշի ներքո սընվող սոցիոլոգիզմը, սխեմատիզմը, մերժելով ազգային ամեն սահմանափակություն ու քարացածություն՝ Չարենցն իր հայացքն ուղղեց դեպի գյոթեական, պուշկինյան, թումանյանական արվեստի բարձունքները: «...Պուշկին ստեղծագործողի ու մտածողի ժառանգությունը քննադատորեն յուրացնելով միայն,— ասում էր Չարենցը,— մեր պոեզիան կարող է դուրս գալ ստեղծագործական ֆորմալիստական կարգի որոնումների փակուղուց և թևակոխել իսկական խորհրդային գրականության, **սոցիալիստական ռեալիզմի** գրականության լայն ճանապարհը»: «Առանց Պուշկինի այդ հարցը չի կարելի լուծել... նրա մեջ տեսնելով ոչ միայն բանաստեղծական վարպետություն, այլև պոեզիայի ստեղծագործական մեթոդիկայի օրինակ» (**ԵԺ**, հ. 6, էջ 367):

Չարենցի համար **մարդն** է դառնում իրերի ու երևույթների իմացության ու գնահատման չափանիշ: Փշրելով արվեստի պրոկրուստյան կապանքները՝ Չարենցը ներթափանցում էր հասարակական հոգեբանության և ժողովրդի գեղարվեստական մտածողության, գիտակցության ու ենթագիտակցության խորքերը, օբյեկտի ու սուբյեկտի ոլորտը, արտացոլելով կյանքը իր ողջ խորությամբ ու հարստությամբ, դիալեկտիկական բարդ անցումների մեջ, կյանքին տալով իր հոգու հրայրքը, լույսն ու ջերմությունը, դառնալով տիրակալ արվեստի աշխարհում, վեր բարձրանալով առօրյա հարաբերություններից, հայացքը ուղղած դեպի ապագան, ապագան տեսնելով լուսավոր հեռապատկերներում, գալիք սերունդների աչքերով, հայացքը ուղղած դեպի կոմունիստական գալիք հասարակություն՝ տոգորված կոմունիստական հումանիզմի իդեալով, ժողովրդական ստեղծագործության ջինջ ակունքներով՝ գողթան երգերից Սայաթ-Նովա, Սայաթ-Նովայից Թումանյան, ինչպես ինքն էր ասում՝ «դեպի արև, դեպի կյանք, դեպ դաշնություն ու ձև»:

Այդ ամենի մասին է պատմում Թամրազյանը իր աշխատության **Սովետահայ գրականության ձևավորումը, Սոցիալիստական ռեալիզմի ծաղկումը** բաժիններում, ստեղծելով և՛ իմաստալից, և՛ սրտառուչ տասնյակ էջեր՝ գրական պրոցեսների, գրական վարպետների մասին, սոցիալիստական ռեալիզմի զարգացման ու ձևավորման, սոցիալիստական ռեալիզմ գիտական տերմինի հայտնագործման շուրջ ծավալված շիկացած պայքարի մասին:

Սովետահայ գրականության պատմությունը ներկայացվում է և՛ տեսական-ընդհանրացնող ծավալուն հատվածներով, ասենք՝ **Պայքար գրականության մայրուղու համար, Սոցիալիստական ռեալիզմի զարգացման ուղին,** և՛ մեծ ու փոքր դրվագներով: Աշխատության նման կառուցումը թելադրված է գրականության զարգացման բնույթով, մի կողմից անհրաժեշտ է ներկայացնել հասարակական-քաղաքական կյանքը, գեղագիտական-փիլիսոփայական մտքի զարգացման, ձևավորման բարդ պրոցեսները, մյուս կողմից՝ գրող-արվեստա-



գետի կենդանի մասնակցությունն այդ պրոցեսներին:

Դրանք կապված են օրգանապես:

Գրականագետ-պատմաբանի խնդիրն է, ուրեմն, հասարակական զարգացման մեջ որոշել ստեղծագործող անհատի տեղն ու դերը, նրա ներդրումը սովետահայ գրականության կամ սոցիալիստական ռեալիզմի հաստատման մարզում:

Այստեղից էլ նյութի տեղաբաշխման «անհավասարությունը»: Եթե, ասենք, բանաստեղծ Վաղարշակ Նորենցը գրականության պատմության մեջ գրավում է երեք էջ, Չարենցը՝ 130, բովանդակելով մինչ 20-ական, ապա 20—30-ական թվականների կյանքն ու ստեղծագործությունը, ավելին՝ Չարենցը ներկայացվում է նաև տասնյակ էջերով, տեսական-ընդհանրացնող բաժիններում:

Եվ դա բնական է: Գրականության պատմությունը, ի վերջո, ստեղծվում է գրող-արվեստագետի անհատականության վրա խարսխված, նա է գրականության պատմության շարժիչ ուժը, նա է գրական օրինաչափությունների կրողն ու սահմանողը, հասարակական զարգացման գեղարվեստական տարեգրության արարիչը: Այստեղ էլ այն առանձնակի վերաբերմունքը, որ Թամրազյանը մշակել է գրական մեծերի՝ Չարենցի, Բակունցի, Դեմիրճյանի հանդեպ, այն լուրջ ու ծանրակշիռ խոսքը,որ ասում է նա գրական վարպետների ստեղծագործական մեծ նվաճումների, կերտած մնայուն արժեքների մասին, որպես սովետական-սոցիալիստական մեծագույն հասումներ, որպես կյանքի գեղարվեստական պերճախոս արտացոլումներ: Գիրքը հագեցած է հայրենասիրական ինքնաբուխ, հուզիչ բազում էջերով: Լուսաբանելով **Գիրք ճանապարհին** վերջին մատյանը՝ Թամրազյանը խոր երկյուղածությամբ գլուխ է խոնարհում Չարենց-արվեստագետ հանճարի առաջ. **Գիրք ճանապարհին** «...տառապանքի ու արյան գիրք է... հանճարի զարգացման... տենդային կուտակման, խտացման ու շիկացման մի տիտանական աշխատանք,— գրում է Թամրազյանը,— այդ վերջին մատյանում խտացված էին հանճարի փորձը, խոհերն ու խորհուրդները, մտքի խիզախ զուգորդումները...»:

Աշխատության վերջին մասը բովանդակում է **Մեծ հայրենականի տարիների գրականությունը:**

Այդ բաժնում ևս Թամրազյանը դրսևորել է խոր պատմականություն: Ֆաշիզմի՝ համաշխարհային ռեակցիայի դեմ միավորվում էին աշխարհի առաջավոր ուժերը՝ սովետական բազմազգ ժողովուրդների հետ միասին, դըրսևորելով մարտնչելու, հաղթանակելու վճռական կամք: «Մեծ փորձության պահին,— նըկատում է գրականագետը, հատկանշելով Հայրենական պատերազմի առանձնահատկությունը,— իմաստուն տարեցները ջահելացան և ջահելներն իմաստնացան» (554):

Ջահելացավ նաև իմաստուն տարեց Դերենիկ Դեմիրճյանը՝ պատերազմի ծանր տարիներին երկնելով անմահ գործեր: Աշխատության այս բաժնում զգալի տեղ է հատկացված Դեմիրճյան մեծ քաղաքացի-արվեստագետին: Հեղինակը քայլ առ քայլ հետևում է գրողին, բացահայտում նրա ստեղծագործական սխրանքը, ուրվագծում ջահելացման գեղեցիկ պատկերը:

Դեմիրճյանը հանդես է գալիս և՛ կոչ բանաստեղծությամբ, և՛ հրապարակախոսական կրքոտ տասնյակ հոդվածներով, և՛ հայրենաշունչ մանրապատումներով, նովելներով, ակնարկներով:

«Արվեստագետը,— գրում է Թամրազյանը,— բոլոր ուժերով մասնակցում էր սովետական ժողովրդի հերոսամարտերին, բոլոր հնարավորություններով կռվում»: Դեմիրճյան մեծ հայրենասերին այլևս չեն բավարարում հրապարակախոսական հոդվածները, մանրապատումները. նա դիմում է ստեղծագործական մեծ կտավների, պատերազմի բոցերում իսկ ստեղծելով իր գլուխգործոցը՝ **Վարդանանք** մոնումենտալ վեպը, իմաստուն հայացքը հառած դեպի պատմության խորքերը, հայ ժողովրդի գոյության ակունքները, երբ օտար նվաճողների դեմ մարտնչեց-մարտիրոսացավ հայ ժողովուրդը:

Պատմավեպը, իրավ, ստեղծագործական մի սխրանք է, մեծ փորձի, խտացումների ու շիկացումների ստեղծագործական ժայթքում (սկսում է 1943-ի փետրվարին, ավարտում նույն թվականի ամռանը)՝ հայկական հանճարի, հայ ժողովրդի ոգու **համամարդկային** գեղարվեստական բացահայտում ու մարմնավորում: Դեմիրճյանը կենսական հարյուրավոր թելեր գտավ Հայրենական պատերազմի ու Վարդանանց սխրագործությունների միջև, հայ ժողովուրդը 5-րդ դարում նույնպես կենաց ու մահու պատերազմ էր մղում պարսկական նվաճողների դեմ, փորձարկելով իր ողջ էությունը՝ բարոյական վեհությունն ու ազնվությունը, անձնվիրությունն ու հայրենասիրության ուժը:

**Վարդանանքը** մարդու, հայրենիքի, գոյի, գեղեցկության, ազատության, հերոսացման, ժողովրդի կեցության ու հաղթության հիմն է, ժողովրդի կենսափիլիսոփայության-կենսունակության, վեհ մտորումների ու զգացումների, իսկական հայրենասիրության, հոգու ազնիվ պոռթկումների, տառապած ու ներշնչված ո-

գու բարձրահունչ ռիթմերի հզոր սիմֆոնիա:

«Սոցիալիստական ռեալիզմի հզոր մեթոդը,— խոր իմացությամբ նկատում է Թամրազյանը,— հնարավորություն է տալիս տիրապետել ամեն տեսակ թեմատիկայի՝ թե՛ «հին» և թե՛ «նոր» և բոլոր դեպքերում էլ կարելի է պատկերել մեր քաղաքական արդիականությունը» (434):

Սովետահայ գրականության պատմության ստեղծումը՝ ողջ հարստությամբ ու բազմակողմանիությամբ, պատմական օրինաչափ զարգացման բարդ ընթացքով, Չարենցը, Բակունցը, Դեմիրճյանը՝ իբրև ուղենիշ գրողներ պոեզիայում, արձակում, դրամատուրգիայում, Թամրազյանի ուսումնասիրությամբ ընտացել են գիտական համակողմանի լուսաբանում. ըստ էության բացահայտվել են ազգային սոցիալիստական արվեստի մնայուն արժույթները՝ բազմադարյան հայ գրականության մեջ սահմանելով ռեալիզմի նոր չափանիշներ, նոր բարձունքներ գրավելով գրականության մեջ:

Կարո՞ղ ենք, ուրեմն, պարզորոշ ասել, թե ո՞րն է մեր դարաշրջանի, սոցիալիստական հասարակության բովանդակությունը և ո՞րն է նրա ստեղծագործական մեթոդի՝ սոցիալիստական ռեալիզմի խնդիրը:

«Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը,— գրել է Վ. Ի. Լենինը 1920 թվականի նոյեմբերին,— կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը» (ԵԼԺ, հ. 41, էջ 510—511):

Լենինի այդ հիմնարար դրույթն էլ՝ կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակության հիմքերի հաստատումը դարձել են մեր մեծ դարաշրջանի մեծ խորհուրդը, սովետական գրականության, սոցիալիստական արվեստի ոգին, դարձել սովետական յուրաքանչյուր ստեղծագործողի լուսավոր ուղեցույց աստղը, նրա բարոյագեղագիտական հավատամքը:

**ՀՈՎՀ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ**

---



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 15.07.83 թ.: Ստորագրված է տպագրության 12.08.83 թ.: ՎՖ 06931: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15632: Պատվեր՝ 1957:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.